ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԽԵ.

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ
# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

ՀԱՏՈՐ Դ.

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1938

# UNTERSUCHUNGEN ZUR GESCHICHTE DER ARMENISCHEN LITERATUR

ANHANG: ZUSAMMENFASSUNG IN DEUTSCHER SPRACHE

BAND IV

VON

**P. NERSES AKINIAN**

MITGLIED DER MECHITHARISTEN-KONGREGATION



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1938

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

ՀԱՏՈՐ Դ.

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1938

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հատորս կը ծրարէ իր ծոցը բազմազան հետազօտութիւններ, զորոնք կարող ենք այսպէս դասաւորել.

Ա. Պատմական-մատենագրական. 1. Թոռնիկեանք. 2. Բիւրասպի Աժդահակ:

Բ. Թարգմանական-մատենագրական. 1. Թէոնեայ Յաղագս ճարտասանական կրթութեանց. 2. Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Եսայեայ. 3. Խրատք Անուշըրուան թագաւորի:

Գ. Տաղասացներ. 1. Յակոբ Նետարբեցի. 2. Կարապետ Բաղիշեցի. 3. Յակոբ Թոխաթեցի. 4. Ազարիա Սասնեցի. 5. Խաչատուր Խասպէկ. 6. Սիմէոն Խըրմպէի որդի. 7. Դաւիթ Սալաձորեցի:

Նիւթերու այս դասաւորութիւնը կարելի չեղաւ պահպանել հատորիս մէջ, ուր կու տանք լոկ արտատպութիւն մը «Հանդէս Ամսօրեայ»ի 1932—1937 տարիներու մէջ լոյս տեսած մասին հետազօտութիւններու, եւ պարտաւոր էինք ժամանակագրական կարգին հաւատարիմ մնալ:

«Հանդէս Ամսօրեայ»ի մէջ լոյս տեսան անոնք հետեւեալ տարիներու մէջ.

ԺԱ. Յակոբ Թոխաթեցւոյ Ողբ ի վերայ երկրին Օլախաց, 1932, էջ 337—348:

ԺԲ. Յովհաննու Ոսկերերանի Եսայեայ Մեկնութիւնը հայ մատենագրութեան մէջ, 1934, էջ 43—55:

ԺԳ. Թոռնիկեանց ծիւղագրութիւը, 1934, էջ 97—114: Թոռնիկեանք ի Սասուն, անդ, 228—235:

ԺԴ. Թէոնեայ Յաղագս ճարտասանական կրթութեանց, 1934, էջ 197—212:

ԺԵ. Յակոբ Ներսարեց, 1934, էջ 427—439:

ԺԶ. Խրատք Անուշըրուան Թագաւորի, 1935, էջ 97—113:

ԺԷ. Խաչատուր Խասպէկ, 1935, էջ 336—344. 1936, էջ 205—206:

ԺԸ. Սիմէոն Խըրմպէյի որդի, 1936, էջ 200—203:

ԺԹ. Բիւրասպի Աժդահակ, 1936, էջ 1—21: Դարձեալ Մազդակ եւ Մ. Խորենացի, 1936, էջ 349—351:

Ի. Ազարիա Սասնեցի, 1936, էջ 297—337:

ԻԱ. Դաւիթ Սալաձորեցի, 1936, էջ 495—501:

ԻԲ. Կարապետ վ. Բաղիշեցի, 1937, էջ 320—343:

Կը յուսամ, թէ հետազօտութիւններս, որոնք «Հանդէս Ամսօրեայ»ի միջնորդութեամբ մատչելի դարձան բանասէր ընթերցողներու, այժմ առանձին հատորի մէջ ամփոփուած, պիտի գտնեն ընթերցողներու աւելի լայն շրջանակ:

Վիեննա, 10 Նոյեմբեր 1937:

ՀԵՂԻՆԱԿԸ

---

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԺԱ.

## ՅԱԿՈԲ ԹՈԽԱԹԵՑԻՈՅ

### ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ԵՐԿՐԻՆ ՕԼԱԽԱՅ

Յակոբ երէց Թոխաթեցի ծանօթ է արդէն իր կենսագրութեամբ եւ գրական երկերով[1]: Ապրած է երկարամեայ կեանք մը (1573—1680), մեծաւ մասամբ պանդխտութեան մէջ ի Զամոյցա Լեհաց աշխարհին:

Կը պակսէին մեզի տեղեկութիւններ իր բազմամեայ կեանքին առաջին երեսնամեակի մասին. այս պակասը կը լրացնէ այժմ մասամբ Ողբն ի վերայ Օլախաց երկրին, որ առաջին անգամ հրատարակ եկաւ Հանդէս Ամսօրեայի էջերու մէջ: Կը յայտնուի այժմ թէ Յակոբ Թոխաթեցի 1593ին արդէն ելած էր իր հայրենիքէն եւ կը պանդխտէր Մոլտաւիոյի Եաշ քաղաքը, ուր տեղւոյն եպիսկոպոսը Յովհաննէս Կաֆացի ցոյց տուած է իրեն հայրական գորով եւ շնորհած չորս փոքր աստիճանները, որով եղած է Յակոբ «դպիր»: Հաւանօրէն նոյն

[1] Հմմտ. Հ. Ն. Ակինեան՝ Յակոբ երէց Թոխաթեցի. Հանդէս Ամսօրեայ, 1921, էջ 273—285, 374—385, 472—485 = Հինգ պանդուխտ տաղասացներ. Վիեննա 1921, էջ 141—202:

Յովհաննէս եպիսկոպոսէն ընդունած է Յակոբ նաեւ քահանայական ձեռնադրութիւնը 1595 թուականէն ոչ շատ ուշ:

1601/2ին, երբ Յովհաննէս Զամոսկի, Լեհաց սպարապետն եւ «քանցլէրը» հիմնարկեց իր անուամբ Զամոսցա քաղաքը, նորակառոյց քաղաքին պարիսպները ընդունեցան իրենց ներսը նաեւ մեծաթիւ Հայեր, որոնք ունեցան իրենց սեպհական եկեղեցին ալ: Կ'երեւայ թէ այս առթիւ հրաւիրուեցաւ նորընծայ քահանայն Յակոբ Թոխաթեցի ըլլալու Զամոսցայի հայ գաղթականութեան հովիւ:

Վերոյիշեալ աշխատութեանս մէջ ամփոփած էի այն ամէն յիշատակարանները, որոնք կը խօսէին Յակոբ Թոխաթեցւոյ մասին: Թոյլ կու տամ ինձ կցել անոնց նաեւ հետեւեալները, որոնք վերջերս մատչելի եղան ինձ եւ կը նպաստեն լուսաւորելու Յակոբի կենսագրութիւնը.

1. Փառք ... Արդ գրեցաւ քրիստոսահիմն եւ առաքելազարդ հոգխաբուխ տառս կանոնական ի մայրաքաղաքն Իլով ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին ձեռամբ Զախնօ ս(արկաւա)գին ի թուականիս հայկազանունի ՌԾԱ. ամի ... (ի) դատաւորութեանն Պարոն Էսան պէյին սորին իսկ սացողի. որ մեծաւ ջանիւ ... նախանձայոյզ եղեալ հայրենի յիշատակացն եգիտ զգաղափար սորա առ քահանայ մի Խաչատուր կո-

չեցելոյ եւ ծանեաւ որ իւրոց նախնեացն էր եւ կամեցաւ առնուլ ի ձեռանէ նորա եւ տալ յիշատակ ի նորաշէն քաղաքն Զամօսցա ի յեկեղեցին սուրբ Աստուածածնին: Բայց տէր Խաչատուրն յոյժ գրասէր էր եւ առաւել եւս հին օրինակաց. վասն այն շատ աղաչեցեալ զպարոն Խան պէյ զատաւորն եւ ետ գրել զսա փոխան նորա եւ ետ պարոն Խան պէյին. վասն զի օրինակն նորա յոյժ ընտիր էր եւ անսղալ. զի էր երկաթագիր եւ Խլկցի գրեալ: Եւ առեալ ընկալաւ զսա պարոն Խան պէյն ի ձեռանէ տէր Խաչատուրին. եւ եդ յիշատակ անջինջ... ի նորաշէն քաղաքն Զամօսցա ի յեկեղեցին Փոխման սուրբ Աստուածածնին... Արդ... յիշեցէք... զգծող սորին զԶախնօ զպիրն եւ զիս զանպիտան Յակոբ էրէցս որ զյիշատակարանս գրեցի: ...

Կից կայ երկար ոտանաւոր մը, Յակոբ Թոխաթեցւոյ գրչէն Կանոնագրքի կարեւորութեան վրայ:

Ձեռագիր Լեմբերգի Համալսարանի Թ. 66: Հմմտ. REA, VII, էջ 120—121:

2. Ես Յակոբ էրէցս Զամօսցային ստացա զսա ի թվին ՌԾԲ:

Թուղթք ԺԴ. Պաւղոսի (յամէ 1563). Ձեռագիր Լեմբերգի Համալսարանին, Թ. 55: Հմմտ. REA, VII, էջ 129:

3. Փառք... Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուին ՌԾԲ (1603)... (ձեռամբ Ղազար եպիսկոպոսի Թոխաթեցւոյ): Եւ ի ժա-

*մանակիս յայսմիկ որ էր հայրապետն եւ առաջնորդն տէր Մելքիսէթ կաթողիկոսն. եւ ի թագաւորութեան քրիստոն(է)ից Զիկմունդին եւ գանձլերին իւրոյ Յովհաննէս իշխանին, ի քաղաքիս յայս Գանձլէրին որ ի Զամօսքի. ընդ հովանեաւ տիրամայր ամէնօրհնեալ սրբոյհոյ Աստուածածնին... եւ սրբասէր քահանային սոցա որոյ է սպասաւոր սուրբ ուխտիցս տէր Յակոբ սրբասէր քահանային եւ իւր կենակցին Եաղութքային որ աշխատեցան ընդ անարժանութիւնս իմ, եթէ կերակրով եւ եթէ ըմպելեօք: Աստուած փոխարէն յիւր արքայութիւնն տա՛ ամէն...:*

*Աւետարան. Ձեռագիր Լեմբերգի Համալսարանին, Թ.* 48: *Հմմտ.* REA, VII, *էջ* 150—151:

*Կը յայտնուի այժմ նաեւ թէ Յակոբ* 1635*ին ուխտագնացութեամբ այցելած է Երուսաղէմ, անշուշտ ճանապարհին հանդիպելով նաեւ Եւդոկիա, իր ծննդավայրը, իբր* 40 *տարի յետոյ:*

*Յակոբ Թոխաթեցւոյ տաղաչափական գրուածներու շարքին պէտք է յիշել նաեւ.*

1. Նորին Յակոբայ ասացեալ խրատ վասն անձին իւրոյ:

*Յակոբ Թոխաթցի մեղօք զառածեալ,*
*Ծերացեալ՝ ւ ի դուռն մահու հասեալ...*

*Ձեռ. Էջմիածնի Պետ. Ձեռագրատան, Թ.* 1636, *Թղ.* 133 *բ (ԺԸ. դար): Տուները կը կապեն՝ «ՅԱԿՈԲԻ»:*

2. Նորին Յակոբի ասացեալ վասն սիրոյն Աստուծոյ եւ սրբոցն նորա:

*Անեղանելին Աստուած, անսկիզբն եւ անճառական,*

*Անքնին վերին զօրացն եւ մտաց մեր անհասական.*

*Ձեռ. էջմ.*, *Թ.* 1636, *Թղ.* 134 *ա*—137 *բ*:

3. Նորին Յակոբի ասացեալ ի վերայ Երուսաղէմի, յորժամ էր ինքն յԵրուսաղէմ ի թվին Հայոց ՌՁԴ (1635) ամին:

*ՅԱստուծոյ շինեալ քաղաք պատուական...*

*Ձեռ. էջմ.* 1636, *Թղ.* 137 *բ*—139 *բ*. *Թ.* 2394, *Թղ.* 172 *բ*. *եւ այլուր յաճախ*[2]:

4. Ողբ ի վերայ Երկրին Օլախաց:

*Լալով ասեմ ողբերգական...*

*Ողբս պահուած է Լեմբերգի Համալսարանի Թ.* 63 *հայերէն ձեռագրին մէջ, որ հաւաքածոյ մըն է զանազան մանր գրուածներու, այլ եւ այլ գրիչներէ:* F. Macler, *որ ցուցակագրած է ձեռագիրս*[3], *նկատած չէ Ողբս, ըլլալով անխորագիր: Բայց այս հատուածս միակ ուշագրաւ մասը կը կազմէ այն ձեռագրին: Գրչութիւնը ենթադրել կու տայ թէ հատուածս սկզբնագիրն ըլլայ:*

*Ողբիս նիւթն է Մոլտաւիայի* 1593—1595

---

[2] *Հմմտ. Հանդ. Ամս.* 1909, *էջ* 371—374, *ուր հրատարակած եմ յանուն Յակոբ Կեսարացւոյ: Հմմտ. նաեւ Հանդ. Ամս.* 1930, *էջ* 368—369:

[3] F. Macler, Rapport sur une mission scientifique en Galicie et en Bukovine. Revue des Études arméniennes, VII (1927), p. 154—155.

տարիներու քաղաքական իրադարձութիւնները: Որովհետեւ այս բազմավրդով ժամանակին նաեւ Հայ գաղթականութիւնը տեսած է վիշտ, յատկապէս Եաշ շահաստանին մէջ, ուր կը գտնուէր Յակոբ Թոխաթեցի, աւելի իր ազգին ցաւերը պատմել քան ժամանակակից քաղաքական կեանքին պատկերը նկարագրել նպատակ ունի բանաստեղծը:

Ինչպէս ինձ կը թուի, Ողբս Յակոբ Թոխաթեցւոյ գրական անդրանիկ աշխատութիւնն է, գրի առնուած իբր 17ամեայ պատանեակի մը գրչով, Կաֆացի Յովհաննէս եպիսկոպոսի մասնաւոր հրամանով: Այս պատճառաւ ալ պէտք է անտեսել ինչ ինչ պակասութիւններ, յատկապէս տաղաչափութեան անկանոնութիւնները: Արուեստէն աւելի պատմական բովանդակութիւնն է հոս հետաքրքրականը, որ պարզութեամբ ներկայացուած է: Բովանդակութեան համառօտ վերլուծութիւնն է.

Մոլտաւիայի, այն է Օլախաց երկրին ժամանակակից Վոյվոտն է Ահարոն: Սա կը բանակցի Ղազախներու հեթմանի՝ Լոպոտայի հետ՝ միացեալ ուժով յարձակում մը գործել Թուրքերու վրայ, որոնց հարկատու էր Մոլտաւիա: Ղազախները կը համաձայնին եւ առաջնորդութեամբ իրենց գլխաւորին կ՚երեւան ի Ցոցորա՝ Բրութ գետին եզերքը, Մոլտաւիայի սահմանին վրայ: Բայց այժմ Ահարոն հրաժարած իր նախկին ծրագրէն հե-

ծելաղօրքով Ղազախներու դէմ կ'ելլէ խափանելու անոնց անցքը: Երկակողմանի բանակցութիւնները կը յանգին թշնամութեան: Ղազախները կը յարձակին վոյվոտի վրայ, որուն բանակը անկարող դիմադրելու յարձակման կը դիմէ փախուստի: Ղազախները անարգել կը յառաջանան Եաշ: Շահաստանի բնակչութիւնը գիտակից վերահաս վտանգին՝ փութացած էր ամբարել իր կահն ու կարասին Հայոց եկեղեցին, որուն հովուապետն էր Յովհաննէս Կաֆացի, եւ տեղի տալ թշնամւոյն առջեւ: 1593 Հոկտեմբեր 26ին, ուրբաթ օր, կը մտնեն Ղազախները Եաշ: Կը խորտակեն եկեղեցւոյն երկաթեայ դռները եւ կ'աւարեն հոն ամբարուած մթերքը: Անոնց հեռանալէն ետքը կը հասնի Ղազախ նոր ընչաքաղց զօրախումբ մը, որ տեսնելով քաղաքը արդէն կողոպտուած եւ եկեղեցին կապտուած առէ եւ աւարէ, իր վրէժը կը լուծէ եպիսկոպոսէն, եկեղեցականութենէն եւ ժողովուրդէն: Ս. Միւռոնը, եկեղեցական գրքերը, որոնք անտես եղած էին առաջին խմբին, կ'իյնան երկրորդին ձեռքը: Եպիսկոպոսը, եկեղեցականութիւնը եւ ժողովուրդը կը մերկացուին իրենց զգեստներէն. եւ կ'ենթարկուին սպառնալիքի միահաղոյն խողխողուելու: Բայց ապա միայն հրկիզելով քաղաքը կը հեռանայ թշնամին:

Հակառակ այս ամօթալից պարտութեան

կը ստիպուի Ահարոն դիմել միւսանգամ Ղազախներու օգնութեան:

Բարձրագոյն Դուռը նշանակած էր Մոլտաւիայի իշխան երիտասարդ մը՝ Բոգդան անուն, որ Թրքական հարեմին մէջ ընդունած էր կրթութիւնը: Այս լուրին վրայ կը պարզէ Ահարոն ապստամբութեան դրօշը: Կը յաջողի խորտակել Մուստաֆա փաշայի բանակը, որ կու գար անցուցեալ Դանուբի վրայէն հաստատելու նորընտիր Բոգդանը իր իշխանութեան մէջ [4]: Յակոբ Թոխաթեցի չ՚ընէր այս մասին որ և է ակնարկութիւն, ինչպէս նաև չունի յիշատակութիւն Ճուրճովայի և Բուկարեստի անցքերու և առհասարակ ի Վալախիա Միքայէլ վոյվոտի Թուրքերու դէմ տարած յաղթութիւններու մասին:

Պանտարի առջև 2 ամիս զուր տեղ կը նստին մոլտաւական և Ղազախ միացեալ ուժերը և առանց կարևոր գործ տեսնելու կը վերադառնան ետ:

Այժմ Ըրդվան սպարապետը կը խորհի յինքն վարել իշխանութիւնը: Կը կալանաւորէ զԱհարոն և շղթայակապ կ՚ուղարկէ Մաճարիստան և կը հռչակէ ինք զինքը վոյվոտ (24 Ապրիլ 1595): Մինչև Օգոստոս 15

---

[4] Hammer, Պատմ. Օսմանեան Պետութեան, Հատոր Բ., էջ 603—605:

կը վարէ իշխանութիւնը, սաստիկ հարստահարելով ժողովուրդը։ Տառապող ժողովըրդեան աղաղակները կը հասնին Լեհաց Թագաւորին Սիկիզմունդ Գ.ին, որ կ'ուղարկէ իր «Քանցելարն» (Յովհաննէս Զամոյքի) Մոլտաւիա, խաղաղելու երկրին վիճակը։ Ըրզըվան կը դիմէ փախուստի դէպի Մաճարիստան։ Երկրին իշխանութիւնը կը յանձնուի Երեմիայի։ Լեհական բանակի ներկայութիւնը Մոլտաւիայի սահմաններու վրայ մտահոգութիւն կը պատճառէ Թաթարխանին՝ Ղազիգիրային. որ 1595 Հոկտ. 27ին առաջարկած էր Բարձրագոյն Դրան կալանաւորել եւ յանձնել Վալախիայի Միքայել եւ Մոլտաւիայի Ըրզըվան վոյվոտները՝ եթէ յանձն առնէ Սուլտանը այս երկիրներու իշխանութիւնը շնորհել Թաթար բէգերուն։ Բայց այս առաջարկութիւնը մնացած էր առանց պատասխանի[5]։ Այժմ վերահաստատ ըլլալով թէ Լեհաց Թագաւորը չունի նուաճողական ձըգտում, կը համաձայնի եղած կարգադրութեան նկատմամբ Երեմիայի[6]։ Սեչով (Սուչաւա) էր

---

[5] Hammer, անդ, էջ 605։

[6] Այս անցքերու մասին համառօտիւ կը տեղեկագրէ նաեւ Կամենիցի ժամանակագիրը. հմմտ. Հ. Ղ. Ալիշան՝ Կամենից, էջ 60—61։ Թաթարխանի միջամտութեան մասին կ'ըսուի. «Եւ յետ սակաւ աւուրց եկն Թաթրի Խանն բազում զօրօք, զոր ոմանք ասէին եթէ 80.000, հրամանաւ (Խոնդ) քարին. եւ կամէր պատերազմել ընդ նոսա։ Իսկ սոքա, այսինքն է Քանցլէր եւ ամենայն զօրքն իւր զինեցան եւ քաջացան,

նոր իշխանութեան նիւթը: Հազիւ անցած էր երկու ամիս, եւ ահա Ըրզըվան կ'երեւայ Սեչովի դաշտերուն վրայ՝ պահանջելու Երեմիայէն իշխանութիւնը յետս: Կամենիցի պարոնին օգնութեամբ կը վանէ Երեմիա յարձակող թշնամին, կը խորտակէ եւ կը կալանաւորէ բռնաւորը, որ ապա ցից կը հանուի (1595, Դեկտ. 2, Գչ.):

Լեհաց, Թաթարաց եւ Տաճկաց քաղաքական պետերու համաձայնութեամբ Երեմիա կ'անուանուի վոյվոտ եւ իր զգօն վարչութեամբ կը խաղաղէ Մոլտաւիան:

Դէպքերը համաձայն են արտաքին աղբիւրներու: Մեզի համար կարեւոր նորութիւն է, որ 1593—1595 տարիներուն ունէինք Եաշ–պազարի մէջ թիւ մը հայ գաղթականութեան, առանձին եպիսկոպոսով, որ յանուանէ ալ կը յիշատակուի:

Լսենք այժմ բանաստեղծին ողբերգական տողերը:

---

պատերազմեցան առատամծային օգնականութեամբ. ժարտեան ընդ նոսա եւ կոտորեցին զնոսա ոչ բազում ինչ, այլ իբրեւ չորս հազար: Իբրեւ ետես... Թաթրի խանն, որ յաղթեցաւ, յետս չոգաւ. եւ սկսաւ հրեշտակութիւն առաքել զի հաշտեսցի ընդ նմա. զոր եւ քանցլէրն հաւանեալ... ուխտ եւ դաշինք եդին ընդ միմեանս, զի մի՛ այս Իլախի երկիր սուր չքաշէ եւ ոչ աւիրէ, որպէս յառաջագոյն հնազանդ եկեալ առար անտէրն եւ գերի վարէին, հրձիգ առնէին: Յետ այսորիկ դարձաւ եւ գնաց. եւ քանցլէր եկն յաշխարհն իւր»:

## ՅԱԿՈԲԱՅ ԹՈԽԱԹԵՑԻՈՅ ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ՕԼԱԽԱՅ ԵՐԿՐԻՆ

*Լալով ասեմ ողբերգական*
*արտասուելով հառաչական*
*այս անողորմ բանքս որ եղան*
*ի մեր մեղացըն գործեցան:*
*Ի թվին Հայոց հազար ամին,*
*քառսուն 'ւ երեք աւելորդին.*
*չար վայվոտայ մի յայտնեցաւ,*
*այս Ուլախաց փոքրիկ երկրին:*
*Խորհուրդ արաւ ի իւր մտին*
*ասաց ջարդեմ զազգըն տաճկին.*
*հրեշտակ առաքեաց Լոպոտին*
*Ղազախներուն գլխաւորին:*
*Ասաց եկէք ի յիմ երկրին,*
*հետ ձեզ երթամք վերայ Թուրքին.*
*որ պաշարեմք ըզքաղաքնին,*
*եւ տէր լինինք նոցա երկրին:*
*Ղազախներուն շուն պարոնին*
*որ Լոպոտայ անուանէին.*
*հաճոյ թուեցաւ յաչըս նորին,*
*շատ հեծելով եկան եկին:*
*Երբ յերկիրն Ուլախին մըտին,*
*ի Յոգոսան եկան հասին.*
*Բանակեցան ամենեւին,*
*ի Յոգոսայ ջըրեզերին:*

ԽՈՐԱԳԻՐԸ կը պակսի Ձեռագրին մէջ:

6. *Ձեռ.* «*ԽԳ.*», *իմա՛ ճշդագոյնս՝ ԽԲ*: — 10. Ձ. *Ջարթեմ*: — 13. Ձ. չունի *ի*:

Քաղաք մի կայր որ խիստ շէն էր,
անուն նորա Եաչ պազար էր.
պերճ վայվոտան հօն բընակէր.
Ցոցուային նա ի մօտ էր:
Զար վայվոտան օլախ ազգին,
ասայց Զեմ կռուիր ես հետ Թուրքին.
Ես կու կըռուիմ հետ Ղազախնին,
եւ կոտորեմ զամենեսին:
Զքաղքին հեծելն ժողովեցին.
Ղազախներուն դէմ գընացին.
դէմ յանդիման բանակեցին,
վէճն եւ ըղկուին բորբոքեցին:
Զայն անօրէն չուն Ղազախնին
ի պատերազմըն չարժեցին.
դէմ յանդիման մարտնչէին
չորեք չարթի մինչ կէս օրին:
Թօփ ու գթիֆանկն երբ քարշեցին,
փախուստ տուաւ ազգն Աւլախին.
ոմանք փախան մորին մտին,
եւ այլք գնացին ի բարձր լերին:
Երբ Եաչ պազարըն լըցեցին,
գձիանն ի կառըս լըծեցին,
ամենեքեան փախան գնացին
ի յերեսաց չար Ղազախին:
Պազըրկաններ այլ շատ կային,
որ փախչելու ճար չունէին.

30. Զ. չունի հետ: — 35. Զ. ի դէմ: — 36. Զ. դկուրըն: — 50. Զ. փախչու:

ըստացրուած շատ ունէին,
տարան յեկեղեցին դըրին:
Եկեղեցուն ամուր դուռին,
ներսի գիհաց ամրացուցին.
դուրսեւէ մեծ կրպղաք դըրին
թէ բանալու ճար չի լինին:
Եպիսկոպոս Հայոց ազգին
Տէր Յովաննէս անուն բարին,
նա էր յերկրէն ի Կաֆային,
եկեալ քաղաք Եաշ պազարին:
Աղէկ գրեանք կայր ի հետին,
Եւ սուրբ մեռոնն էջմիածնին.
յեկեղեցուն մէջըն դըրին,
աստիճանին տակն էր տեղին:
Չար Ղազախներն երբ որ եկին,
մտին քաղաք Եաշ պազարին.
հոկտեմբերի քսանեւվեցին,
ի յուրբաթու մէջաւրէին:
Յեկեղեցինըն դիմեցին,
զերկաթէ դուռն կոտրեցին
բիւրք ի բիւրոց ի ներս մտին.
քան զչար գազան անապատին:
Ըստացուած խիստ շատ էին.
մինչ յառաստաղն հասեալ էին.
զամենայն ինչ առին գնացին
ոչինչ մընաց յեկեղեցին:
Բայց մեռոնըն էջմիածնին,

51. Զ. ստացուած: — 59. Զ. նայ: — 74. Զ. յառաստաղին:

անարժան ձեռք հասեալ չէին․
եպիսկոպոսն առեալ ձեռին,
եդիր վերայ աստիճանին․
Ընկերք նոցա յետոյ եկին
նման թիւնալից չար աւձին․
յեկեղեցին ոչինչ գըտին․
ըզսուրբ մեռոնն եւ զգրեանքն առին:
Զեպիսկոպոսն կանգնած տեսին
խոնարհամիտ մաքուր հոգին,
երկու չար մարդ ըմբռնեցին
մերկիկ առին, չուլ հագուցին:
Սա միայն սուրբ էր ի յերկրին,
որպէս զՅովբն այն առաջին․
սա փորձեցաւ չար իշխանին
կայր մէջ գայլոց նըման գառին:
Զժողովուրդն եւ զերիցնին
նման սըմին մերկացուցին․
յետոյ այլ չար խորհուրդ արին,
պիտի սըրով կոտորէին:
Խընամքն հասաւ Աստուածածնին
որ բարեխօս է միածնին․
եւ խափանեց զխորհուրդ նոցին,
որ ոչ եղաք սըրոյ բաժնին:
Անթիւ բազում չար գործեցին․
որ բերանով ասել չլինին․
յետոյ զքաղաքըն այրեցին,
այնպէս չարեաւք ելան գընացին:
Շաբաթ մի այլ վերայ անցին

92․ Զ․ ի մէջ:

պարոնն եկաւ Եաշ պազարին·
անուամբն էր ինքն Ահարոնին
գործով նըման սաղայէլին:
Ի միտ էած զրանքն առաջին
Ասաց կռուինք ի հետ Թուրքին·
Դարձեալ եբեր զՂազախնին
գընաց կռուի ի հետ տաճկին:
Ի Պանտարին բերդին վերան
երկու ամիս ճակատեցան·
ամենեւին ոչինչ կալան
ապա դարձեալ ի Եաշն եկան:
Վազիր մ՚ունէր չար վայվոտան
անուն նորա էր Ըրըգվան,
սիրելի էր քան զամենայն,
գլուխ էր հեծելին վերան:
Խըրատ ետուր նա հեծելին,
որ ըզպարոնըն ըռնեցին·
ըզձեռն եւ զոտն երկաթեցին,
այնպէս Մաճառք ուղարկեցին:
Պեղծ Ըրըգվանն խմոր չարին,
նստաւ ի յաթոռ պարոնին·
թագաւորեաց ի վերայ երկրին
ապրիլ ամսոյ քսան եւ չորսին:
Զատկէն մինչ ի յԱստուածածին,
իշխան եղեալ աւլախ ազգին·
շատ աւերում արար երկրին,
որ ոչ է լեալ եւ ոչ լինին:
Երկիրն ամէնըն սարսէին

113. Չ. բերին:

Ի յահէ անհաւատ Թաթրին․
որպէս գնաւ ի մէջ ծովին
որ ի յալեացըն տատանին։
Այսքան բաներս ամենեւին
լըսեց դուռըն Լեհաց երկրին․
հըրաման ետ քանցելարին
Թէ գրնա տես որպէս լինին։
Քանցելարըն քաջ եւ արին
մըտօք ճարտար գիտող բանին․
բիւր հեծելաւ ելան եկին
Աւլախ երկրին ի մօտ հասին։
Պեղծ Ըրըզվան իշխան չարին
Թուղթ ուղարկեց Քանցէլարին․
ասաց․ Ծառայ եմ դոռելին,
եւս առաւել քոյոյ անձին։
Այս քանցէլար իշխան բարին,
պատասխանի ոչ ետ նըմին․
Լըռելեան կայր յեզըր երկրին,
չյայտնէր գխորհուրդն ազգ մարդկային։
Ըրըզվանին եկան ասին․
Քանցէլարն է չարկամ քոյին,
պատասխանի ոչ ետ Թղթին,
դու ճար արա վասն քո անձին։
Այս Ըրըզվան չար կենդանին
գկինն ուղարկեց յերկիր Մաճուին․
եւ յետ նորա փախաւ ինքնին,
ի յերեսաց Քանցէլարին։

146. Զ. Թուղտ։ — 151. Զ. յերկրին։ — 154. Զ. Թէ (քանցէլարն)։ — 155. Զ. Թղտին։ — 156. Զ. արայ։ — 158. Զ. երկիր։

Քանցէլարն եւ հեծել նորին,
մտին յերկիրն ի Աւլախին.
Ի Յոգոսայ գնացեալ հասին
Բանակեցան ի Ջրեզերին:
Քանցէլարըն բարէնչան.
որ հալածեաց զչարն Ըրըզվան,
պարոն եղիր զՃըրեմիան,
որ է արժան պարոնութեան:
Ամիս մըն ալ վերայ անցին,
անթիւ հազար Թաթար եկին.
ի Աւլախաց յերկիր մըտին.
դէմ յանդիման Քանցէլարին:
Քանցէլարն էր բարի իշխան.
թուղթ ուղարկեց ի Թաթրին խան
Զենք, ասաց, մեք ձեզ հետ չարկամ,
վաղուց հետէ եմք բարեկամ:
Թաթարն ասաց Քանցէլարին,
թէ Լինիցի հրաման քոյին,
զինչ բան որ քեզ հաճոյասցին
ամենեւին կատարեցին:
ԶՃըրեմիան հաստատեցին
իշխան եղեալ վերայ երկրին.
նստեալ քաղաքն ի Սէչովին.
Աթոռ է հին ժամանակին:
Այն չատ հեծեալն Թաթար խանին
ամէն դարձան իւրեանց երկրին.
ապա եւ Քանցէլարն ինքնին,
իւր հեծելաւն ելան գնացին:

174. Զ. թուղտ: — 175. Զ. չունի հետ:

Երկու ամիս վերայ անցին
չար Ըրըղվանն ելաւ կրկին.
Թուղթ ուղարկեց Երեմիին,
ասաց՝ կու գամ ի վրայ քոյին:
Մեծ վոյվոտան օլախ ազգին,
Եբեր զպարոն կոմէնիցին
հեծեալ բազում ժողովեցին,
ի պատերազմ պատրաստեցին:
Պեղծն Ըրըղվան եւ զօրք նորին
եկեալ ի դաշտ Սէչով քաղքին,
Սոքա ելեալ ի դէմ գնացին,
ի պատերազմըն դիմեցին:
Դեկտեմբեր ամսոյ երկրորդին
Երեքշաբթի վաղվենէքին,
մինչ երեք ժամ կոխւ արին,
չորրորդ ժամուն կոտորեցին:
Զօրք եւ հեծեալ Ըրըղվանին
փախուստ առին ամենեւին.
սոքա զհետ հալածէին,
որ եւ հասեալ սպանանէին:
Եւ զԸրըղվանըն բռնեցին,
Բերին առջեւ Երեմիին,
հրաման տուեալ ցիցըն զարկին,
գնաց ի փառս սատանային:
Հրամանաւըն դուելին
Միջնորդութեամբ Թաթար խանին
Ըստամբաւլէն սանչախ բերին
Երեմիա վոյվոտ արին:

191. Զ. Թուղտ: — 202. Զ. ի փառ:

Խաղաղութիւն եղեւ երկրին,
բարեխօսութեամբ սուրբ կուսին.
անխռով կենայ ամենեւին
մինչեւ կրկին գալ միածնին:
Այս ամենայն բանքս որ եղան,
ի մեր մեղացըն գործեցան.
աղօթեցէք դուք անխափան,
որ ամէն չար բարի դառնան:
Տէր Յովաննէսըն Կաֆացի,
եպիսկոպոս սուրբ եւ արհի,
անփորձ կենայ ինքն յաշխարհի,
հրաման ետ որ գրանքս ասի:
Եպիսկոպոսըն սուրբ հոգի,
ես անարժան հող եւ փոշի,
գիս ձեռնադրեաց ի յայսմ երկրի,
չորս աստիճան կարգ դըպիրի:
Ես անպիտան մեղօք լի,
որ եմ դարիպ ի յայսմ երկրի,
Յակոբ անուն պարսաւելի,
ի քաղաքէն եմ Թոխաթի:

219. Զ. կենա՛: — 227. Զ. աշխարհի: — 233. Զ. լլի:

ԺԲ.

## ՅՈՎՀ. ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

## ԵՍԱՅԵԱՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆԸ

## ԺԲ.

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ԵՍԱՅԵԱՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆԸ

### ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

1. *Յովհաննէս Ոսկեբերանի «Նշանաւորագոյն» գրուածքներէն մէկն է Եսայեայ մեկնութիւնը, կը գրէ* Montfaucon, *թէ՛ ոճի գեղեցկութեան, թէ՛ խօսքին հանճարի բարձրութեան եւ թէ բարոյալից վարդապետութեան տեսակէտով: Իսկ* Tillemont *կը տեսնէ հոն արտակարգ պերճաբանութեան մը յայտարար գծերը:*

*Այս կարեւոր գրուածքը յունարէն սկըզբնագրի մէջ թերակատար է. հասած է Եսայեայ Ա.—Է. գլուխներու եւ Ը. գլխոյն առաջին* 10 *համարներու Մեկնութիւնը միայն. հրատարակուած* Montfauconէ *Ոսկեբերանի Համօրէն Գործոց Զ. հատորին մէջ, Պարիս* 1724, *էջ* 1—93. *ասկէ արտատպուած՝* Migne, Patrologia graeca, *հատոր* 56, *էջ* 11—94:

*Որովհետեւ յոյն մատենագրութեան մէջ կը պակսի որ եւ է հետք, որ ցոյց տայ թէ գոյութիւն ունեցած է Ը.* 10 *համարէն շարունակութիւնը, կ՚իշխէ հայրապետներու մէջ այն համոզումը, թէ Ոսկեբերան Ա.—Ը.* 10 *գլուխները միայն մեկնած է: Արդեամբք*

ալ, երբ երեւան եկաւ Մեկնութեանս հայերէն թարգմանութիւնը, ճիշտ Ը. 10ին վերջը, ուր կ՚ընդհատէր յունարէնը, տեսնուեցաւ ուշադրաւ դիտողութիւնս թէ «Մինչեւ ցայս վայր գտա(ք) իւրով ձեռովք գրեալ երանելոյն Յովհաննու յունարէն» (էջ 102):

Tillemont յայտնած էր կարծիքը, թէ Ոսկեբերան սարկաւագութեան օրերուն սկսած ըլլայ գրել Մեկնութիւնս. եւ յետոյ ուրիշ զբաղումներու պատճառաւ արգելուած:

Կարծիքս իրաւամբ անտեղի կը գտնէ Baur[1], վասն զի ծանօթ են մեզի գրուածքներ, նոյնպէս մեկնողական, զորոնք Ոսկեբերան իւր քահանայութեան եւ հայրապետութեան օրերուն գրած է: Աւելի հաւանական է կարծել, թէ Ոսկեբերան հիւանդութեան մը պատճառաւ ընդհատած ըլլայ քարոզներու այս շարքը: «Ըստ տիրող կարծեաց, կը գրէ Bardenhewer[2], այս մեկնութիւնը խմբագրչի մը գործն է, որ Ոսկեբերանի ճառերը իրենց ճարտասանական նկարագրէն մերկացնելով վերածած է կանոնաւոր Մեկնութեան մը»: Իսկ Ը. 10ի յաջորդող մասերու համար, որոնք կը գտնուին հայերէն թարգմանութեան մէջ, կը գրէ թէ «կը կարօտին դեռ քննութեան եւ հաւաստիացման»[3]:

---

[1] P. Ch. Baur, Johannes Chrysostomus und seine Zeit. Bd. I. München 1923, էջ 237:

[2] Geschichte der altkirchlichen Literatur. Bd. II. Freiburg 1922, էջ 336:

[3] Անդ, էջ 337:

Բայց կրնանք վստահաբար ըսել թէ Ա.—Ը. 10 գլուխներու Մեկնութիւնը արդէն Ե. դարու առաջին կէսին ծանօթ էր հրապարակին իբրեւ ինքնագրութիւն Ոսկեբերանի, «իւրով ձեռօք գրեալ... յունարէն»: Իսկ Ը. 11—ԾԳ. գլուխներու Մեկնութիւնը յօրինած է հաւանօրէն Ոսկեբերանի աշակերտներէն մին, ոչ դոյզն հմտութեամբ, թերեւս «ի բանից» Ոսկեբերանին, բայց ոչ անոր «ձեռօք» գրուած:

2. Հայերէն թարգմանութեան մասին արդէն 1862ին կը յայտարարէին Վենետիկի Մխիթարեանք Պաւղոսի թղթոց մեկնութեան Ա. հատորի Յառաջաբանին մէջ (էջ Է), թէ «գիտասցէ հայրենասէրն, զի ի թերակատար մատենից նորին սրբոյ վարդապետին՝ կան եւ մեկնութիւնքն Եսայեայ եւ Եզեկիէլի թերի յոյժ եւ երկոքեանն, զորս անթերի օրինակաց ակնկալեալ՝ թողումք առ ժամս»:

Այս պակասաւոր օրինակն էր Վենետիկի Մխիթարեանց այն ձեռագիրը, որուն համար կ'ըսուի անտիպ ցուցակի մը մէջ, թէ է գրչութեամբ «բոլորգիր, թերի սկիզբն, մէջն եւ կատարածն»: Աւելի մանրամասնօրէն նկարագրած է Հ. Ա. Տիրոյեան. «եղանակ գրութեանն՝ որ է միջին անուանեալ երկաթագիր, եւ արտաքին երեւոյթ մատենին՝ յօրինեալ ի բամբակեայ թղթոյ՝ տան մեզ գուշակել ԺԲ. դարու գաղափարեալ լինելոյ»[4]: Կը պակսին

---

[4] Յառաջաբան Մեկնութեան Եսայեայ, էջ Ձ:

Ա.—Բ. 1, ԻԱ. 2—Լ. 5, ԿԴ. 8—ԿԶ. 24 գլուխներու Մեկնութիւնք, չյիշելով ինչ ինչ տեղիքներու կրած վնասները:

Այս օրինակի վրայէն ծագած է Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 223, գրուած իբր 1840ին Վենետիկի Մխիթարեան Հարց ձեռքով[5]:

Ուրիշ օրինակ մը կը յիշուէր ի Կալկաթա անհատի մը քով. որուն մասին կը հաղորդագրէր Արշալոյս Արարատեան, 1868ին (Թ. 845). «Մեկնութիւն Եսայեայ մարգարէի, բամբակաթուղթ, խոշորագիր, արարեալ յՈսկեբերանէ (փոքր ինչ պակասեալ յԱ. գլխոյ): Օրինակ սորին՝ գրչաւ հանգուցեալ Իսահակայ վարդապետի, երբեմնական ժողովարարին Հնդկաստանի՝ գտանի ի Ս. Աթոռն Երուսաղէմի: Երանի՜ թէ ի լոյս ընծայիւր»: Աս այս կ՚ակնարկէ անշուշտ եւ Հ. Ա. Տիրոյեան երբ կը գրէ իր Յառաջաբանին մէջ. «լուեալ իսկ է մեր եթէ գտանին առ ոմանս յազգայնոց ի պակասեալ կատարակաց օրինակս մերոյ. այլ քանզի ցարդ չեղեն մեզ դէպք ի ձեռս բերելոյ զնոսին, վասն որոյ լաւ վարկանիմք ընծայել (զոր ունիմքն)... հանդերձ թերութեամբք» (էջ Ե):

Այս օրինակն է որ, ինչպէս կը ծանուցանէ Սիոն, 1839ին ձեռք բերած է ի Նոր Ջուղայ Տէր Յովհաննէս Խաչիկեան քահա-

---

[5] Հ. Յ. Տաշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի, էջ 571:

նայ, «Կալկաթայի երբեմնի հանրածանօթ աւագերէցը[6]»: Եւ անկէ օրինակ հանած է Իսահակ Վ. Գաղատացի[7] եւ ուղարկած Երուսաղէմ, ուստի 1847էն յառաջ: Ինչպէս այժմ Սիոնէն կը տեղեկանանք յետ ժամանակաց իսկական ձեռագիրն ալ հասած է Երուսաղէմ, 1880էն, այս ինքն Վենետիկի հրատարակութենէն ետքը, վասն զի նոյն Խաչիկեան քահանայ կրցած է ձեռագրին մէջ Թղ. 23բ ծանօթագրել թէ «Վենետիկի տպագրութիւնն աստէն սկսանի» (Սիոն, էջ 331):

Երուսաղէմեան հատակտորներուս նկարագրութիւնը այսպէս կու տայ Սիոն. «Գրուած է թանձր բամբակեայ թուղթի վրայ, դէպի բոլորգիր հակող անցման գրով եւ ԺԲ.—ԺԳ. դարու գրչութեան տպաւորութիւն կը թողու»: Հատակտորները կը բովանդակեն Թղ. 1ա—23բ. Եսայեայ Մեկնութեան «Յառաջաբանութիւնն» կէսէն սկսեալ —ինչպէս Արչ. Արար. կ'ըսէր «փոքր ինչ պակասեալ յԱ. գլխոյ» — եւ Ա.—Բ. 1 գլխոց, այս ինքն ամբողջ Ա. գլխոյն եւ Բ. գլխոյն

---

[6] Յովհաննէս քահանայ Խաչիկեան (1829—1897) ապրած է Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի հետ տեւական յարաբերութեան մէջ. նուիրած է նաեւ այլ եւ այլ իրեր, ինչպէս կ'երեւայ անոնց թուին մէջ եղած է նաեւ ձեռագիրս: Հմմտ. իր մասին՝ Մ. եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի: Երուսաղէմ, 1929, էջ 385—386:

[7] Սահակ Վ. Տէր-Գրիգորեան Գաղատացի († 1847) իբրեւ նուիրակ կ'երթայ Հնդկաստան 1842ին եւ կը վերադառնայ 1844ին. հմմտ. Աղաւնունի, անդ, էջ 442—444:

1 համարին մեկնութիւնը։ Թղ. 24էն ցվերջ կը պարունակէ ԻԱ. 2—ԻԶ. 20 գլուխներու մեկնութիւնը, աւարտելով այսպէս. «Եւ արդ քանզի Աստուծոյ բանն ոչ այնպէս ինչ միայն վճարէր որպէս մարդկանն, վասն այնորիկ ասէ։ Քանզի առ Ղազարաւ այսպիսի ինչ գործ գործեցաւ |||»։

Այս ամէնէն կ՚իմացուի թէ հատակոտորներս որոնք ի Նոր Ջուղա ձեռք բերուած են, ժամանակաւ մասն եղած են Վենետիկի ձեռագրին, անոր Վենետիկ հասնելէն յառաջ։ Այսու կը լրանայ Եսայեայ Մեկնութեան միակ ծանօթ ձեռագիրը գէթ մասամբ մը. այժմ ի սպառ կորսուած կը համարուին Ձեռագրին այն մասերը, որոնք կը բովանդակէին Մեկնութեան Յառաջասացութեան Ա. մասը (ուստի սկզբէն ինկած կորսուած է իբր 1 կամ 2 թուղթ) եւ ԻԶ. 21—Լ. 5, ԿԴ. 8—ԿԶ. 24 գլուխներու Մեկնութիւնը։

3. Եսայեայ Մեկնութենէն բազմաթիւ հատակոտորներ պահուած կան ձեռագիր Ճառընտիրներու մէջ։ Այս հատակոտորները չահագործած է Տիրոյեան իւր հրատարակութեան մէջ, գլխաւորաբար օգտուելով Մխիթարեան Մատենադարանի ձեռագիրներէն[8]։ Կ՚ամփոփեմ այստեղ ինձ ծանօթ հատակոտորները։ Դժբախտաբար պիտի չկարենամ յիշատակել Երեւանի եւ Էջմիածնի Ճառընտիրներու բովանդակութիւնը, որովհետեւ

[8] Մեկնութիւն Եսայեայ, էջ 473—487։

չհասան ինձ մինչեւ օրս այն նիւթերը, զորոնք հաւաքած էի յիշեալ մատենադարաններու հաւաքածոյ ձեռագիրներէն, անասելի տքնութեամբք:

Կիրարկուած համառօտութիւններն են՝

P. = Պարիսի Bibliothèque nationale, Fond arménien:

V. = Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի հայերէն ձեռագիրք. հմմտ. Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ հայերէն Ձեռագրաց, Հատոր Բ., Վենետիկ 1920,:

T. = Տիւբինգէնի Համալսարանի հայերէն ձեռագիրք:

Eriv. = Երեւանի Պետ. Մատենադարանի թ. 78 ճառընտիրը, որմէ ծագած է V. 228:

ա. Տեառն Յովհաննու Ոսկեբերանի ի Մեկնութենէ Եսայեայ մարգարէի:

Զի եղիցի յաւուրս յետինս յայտնի լեառն Տեառն: — Տեսանե՞ս զստուգութիւն մարգարէին...:

վ. ինքն է օրէնսդիր:

= P. 110, 515ա—516ա (ԺԲ): V. 202, 461բ—462բ (1637: Ցուցակ, Բ., 102/3): 218, 47ա—48ա (1835: Ցուցակ, Բ., 275—276) [9]: 228, 217ա (1847 = Eriv. 78: Ցուցակ, Բ., 455):

Տպ. էջ 1—6. հմմտ. 473—475:

---

[9] V. 218 ունի «ի մեկնութենէ մարգարէին Միքիայ»:

բ. *Եւ եղեւ յամին յորում մեռաւ Ոզիա արքայ... Եւ զիա՞րդ իցէ զի զայլ ժամանակն...*

*վ. զի սրբեաց եւ ոչ այրեաց զմարգարէն:*

= P. 110, 469ա—472ա (ԺԲ): 117, 18ա—19ա (1307): V. 212, 302ա—305բ (ԺԳ: Ցուց., Բ., 224)[10]. 218, 34ա (1835: Ցուց., 274): 228, 214ա (1847=Eriv. 78: Ցուց., 454):

Տպ. 60—69. Հմմտ. 477—478:

գ. *Երանելոյն Յովհաննու Ոսկեբերանի եպիսկոպոսի Կոստանդինուպօլսի ի Մեկնութենէ Եսայեա մարգարէի, ի բանէն՝ Եւ բղխեսցէ:*

*Ամաչեսցեն հերձուածողքն, որ հրայերէն կամեին տեսանել զՍուրբ Գիրս...*

*վ. քանզի Որդւոյ սէր վայել է եւ ոչ երկիւղ:*

= Կնիք Հաւատոյ, էջ 318—319:

Տպ. 132, 10—133, 13:

դ. *Տէր ողորմեաց մեզ զի ի քեզ յուսացաք: — Տեսանե՞ս զի եւ ողորմականացն ոչ վայրապար պարտ է ողորմել...*

*վ. այլ եւս իմն լքանէաք, զմեծամեծ իմն համարէաք զկարեաց ճգնութիւնս, զոր կատարեսցուք անուամբն Քրիստոսի...*

= P. 120, 58ա—61ա (ԺԴ): V. 206, 100բ—12ա (ԺԳ., Ցուց., 162): 228, 341բ (1847 = Eriv. 78: Ցուց., 468):

Տպ. 200—208. Հմմտ. 476—477:

---

[10] *Խորագիրն՝ ի Սերովբէսն եւ վասն ապաշխարութեան:*

ե. *Զազգ նորա, ասէ, ո՞ պատմեսցէ... Զի՞նչ խօսիդ. չիցեն զմարդոյ ումեքէ բանքդ...:*

*վ. ի հարց եւ ի խնդիր իշխեսցէ արկանել:*

= V. 206, 134բ—136ա (ԺԳ: Ցուց., Բ., 162):

Տպ. 400—401. Հմմտ. 478:

զ. *Զի ասաց տէր այսպէս. Հաշտեալ եմ ընդ քեզ տառապեալդ...:*

= V. 228, 105բ—108բ (1847 = Eriv. 78: Ցուց., 446):

Տպ. 409—413, 372—375, 340—343. Հմմտ. 479:

է. *Գոչեա՛ զօրութեամբ եւ մի խնայեր..: Զի դժուարինք էին զոր ինչ ասելոց էր...:*

*վ. ո՞չ ապաքէն վասն առատութեան եւ մարդասիրութեանն են:*

= P. 120, 49բ—52բ (ԺԴ): V. 214, 28բ—29ա (1821: Ցուց., 245): 222, 83ա—84բ (1335: Ցուց., 329): 228, 337ա (1847 = Eriv. 78: Ցուց., 467):

Տպ. 435—442. Հմմտ. 480—481:

ը. *Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ ես արկանեմ...* (Ես. ԻԸ. 16):

*վ. Եւ զէն յաղթութեան... ի պարծանս յուսոյ յաւուրն մեծի...:*

= V. 228, 218ա—220ա (1847 = Eriv. 78: Ցուց., 455):

Տպ. 481—487:

Ձեռագիրներն կը ներկայացնեն հատուած մըն ալ, որ թէեւ յայտնապէս Ոսկեբերանի անունը կը կրէ եւ նիւթն ալ Եսայեայ Մարգարէութեամբ (ԾԳ. 1) կը զբաղի, բայց չի վերաբերիր Յովհաննու այս Մեկնութեան (հմմտ. տպ. էջ 393 եւ յջ.)։ Այս ճառն է.

Բ. «Յովհաննու Ոսկեբերանի ի Մեկնութենէ Եսայի մարգարէի։

Տէր ո՞ հաւատաց լրոյ մերում... (Ես. ԾԳ. 1)։ — Մի՛, ասէ, հաւատասցեն ի գիրսն զոր ունէին եւ մի ի միտ առցեն...

Վ. Որ յայտնեցաւ լոյս հեթանոսաց եւ փառք ժողովրդեանն Իսրայելի։

= P. 110, 161ա—162ա (ԺԲ)։ V. 202, 137ա—138ա (1637։ Ցուցակ, Բ., 78)։ 212, 166ա—167ա (ԺԳ։ Ցուցակ, Բ., 215)։ 228, 82բ (1847 = Eriv. 78։ Ցուցակ, 445)։

4. Եսայեայ Մեկնութիւնս աչքի առաջ ունեցած են հայ մեկնիչները, անո՛նք մասնաւորապէս, որոնք զբաղած են Եսայեայ մարգարէութեամբ։ Կը յիշեմ.

ա. Դաւիթ Քոբայրեցի, որմէ ունինք. «Մեկնութիւն համառօտ Եսայեայ մարգարէի ի հոգեկիր մեկնողաց բանից Եփրեմի. Կիւրղի եւ Յովհաննու Ոսկեբերանի. կարգեալ եւ յօրինեալ դիւրահաս ընթերցողաց. Դաւիթ քահանայի ի խնդրոյ ուսումնասէր մանկանց եկեղեցւոյ»։

Սկ. «Աներեւոյթ է միշտ սրբոց մարգարէից բանք...»[11]։

---

11 Այս մուտքը յայտնապէս առնուած է Կիւրեղ

Դժբախտաբար Դաւթի Մեկնութեանս Յառաջաբանն միայն պահուած է էջմ. 1449, 86բ—89ա (1656) [12]։

Բ. Գրիգոր Արասու որդւոյ Գիրք պատճառաց. Հոս հաւաքիչը՝ հաւանօրէն Քորայբեցւոյ Համառօտ մեկնութեան հետեւողութեամբ կը ներկայացնէ «Սկիզբն եւ պատճառ Եսայեայ մարգարէին». այսինքն Նախերգանքը ըստ Եփրեմի եւ Ոսկեբերանի, ինչպէս բացայայտ կը տեսնուի էջմիածնի Թ. 1879, Թղ. 106բ—117բ եւ Թ. 1324, Թղ. 121ա—126բ ձեռագիրներու լուսանցքէն, ուր նշանակուած է համառօտութեամբ «ԵՓ. ՅՀ.», կից տալով նաեւ ամփոփում մը Մարգարէութեան, հանդերձ քաղուածներով յՈսկեբերանէ (Վիեննայի Մխիթ. Մատ., Թ. 47, Թղ. 68բ—79ա)։

Մեզի համար հետաքրքրական է, որ Գրիգոր յետ ընդհանուր Նախերգանքի, որ կը սկսի «Ամենայն բանք մարգարէիցն լի են գիտութեամբ եւ իմաստութեամբ», անմիջապէս կը յարէ, առանց խորագրի կամ աղբիւրն ցոյց տալու՝ Ոսկեբերանի Նախերագանքն կամ «Յառաջաբանութիւնն»։ Ինչպէս առ հասարակ իւր յառաջբերութեանց մէջ, նոյնպէս հոս հաւատարիմ չէ Գրիգոր. նա ըստ կամի կը համառօտէ եւ կը խմբագրէ յառաջբերութիւն–

---

Աղեքսանդրացւոյ Եսայեայ Մեկնութենէն. Հմմտ. Վենետիկի Մխիթ. Մատենադարանի Թ. 225, 10ա—13ա եւ Թ. 228, 167բ (Սարգիսեան, Ցուցակ, Բ., 392 եւ 452)։

[12] Հմմտ. իմ Մատենագրական Հետազօտութիւններ, Ա.։ Վիեննա 1922, էջ 50։

ները, ինչպէս յարմար կը տեսնէ։ Սակայն եւ այնպէս որովհետեւ ցայժմ կը պակսի Եսայեայ Մեկնութեան Նախաբանը, Գրիգորի յառաջբերութիւնը հետաքրքրական է իր համառօտ ձեւին մէջ ալ։ Յունարէն սկզբնագրին եւ Հայերէն Թարգմանութեան մնացորդին հետ համեմատութեան դնելով, կը տեսնուի թէ բնագիրը թէպէտ համառօտուած, բայց ընդհանրապէս պահուած է անփոփոխ։

Այստեղ ամբողջութեամբ կը հրատարակեմ այս Նախաբանը․ որուն երկրորդ մասն ունինք Երուսաղէմի հատակոտորներու սկիզբը, հրատարակուած Սիոնի մէջ, էջ 331ա։ Ասով կերպով մը ամբողջացած կ'ըլլայ Մեկնութեան Նախաբանը։

### ՅԱՌԱՋԱՍԱՑՈՒԹԻՒՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԵՍԱՅԵԱՅ ԸՍՏ ՊԱՏՃԱՌԱՑ ԳՐՈՑ [13]

Զառաւելութիւն այսր մարգարէի ի մարգարէութենէ սորա իմասցուք․ եւ զկատարեալ լաւութիւնն ի Պաւղոսէ երանելւոյ ծանիցուք, գաղատախօս բարբառն եւ զանծառայական միտսն, որպէս ասէ․ «Գտայ այնոցիկ որ զիս ոչ խնդրէին․ յայտնի եղէ այնոցիկ, որ զինէն ոչ հարցանէին»։ Այլ եւ վշտակից լինէր ազգին իւրոյ, եւ պատմէր զվիշտս նոցա, որպէս զի առաւել քան զնոսա տառապէր։ Էին եւ ամենայն մարգարէքն հայրենի գթովք առ այնոսիկ, որոց մարգարէանայինն եւ աղի ողբովք

[13] Վերնագիրը մեզմէ է։

*պաղէտս նոցա նուաղէին ։ Ի հասանել նեղութեանն զԱստուած աղաչէին. եւ զանձինս իւրեանց ընդ նոսին ի գերութիւն մատնէին. ջանային ապրեցուցանել զնոսա ի բարկութենէն ։ Եւ չիք ինչ այնմ համեմատ, որ զգութ իշխանացն ի վերայ իշխեցելոցն տեսանիցէ. մինչ զի չարչարակից նոցին լինել ։ Զմեծն Մովսէս սա յաթոռ զօրավարութեան նստոյց մինչեւ զինքն ջնջել խնդրէր ի դպրութենէն յոր գրեցաւ վասն նոցա ։ Իսկ Եսայի ասէր. «Թոյլ տուք ինչ զի լացից ի վերայ բեկման ժողովրդեան իմոյ» ։ Եւ Երեմիաս ողբէր զաւերն Երուսաղէմի. եւ Եզեկիէլ ընդ նոսին ի գերութիւն չոգաւ վասն մխիթարելոյ զվրշտացեալսն, զի զմիտս նոցա առ Աստուած ուղղեսցէ ։ Եւ [Դանիէլ] վասն դարձին զաւուրս քսան ճգնէր ի պահս՝ աղաչելով զԱստուած, զի հանցէ զնոսա ի դժնդակ ծառայութենէն ։ Սոյնպէս եւ Դաւիթ տեսեալ յԱստուծոյ զբարկութիւնն ի վերայ ժողովրդեանն ասէր. «Յիս եւ ի տուն հօր իմոյ» ։ Եւ նահապետն Աբրահամ թէպէտ չէր մօտ ի չարիսն Սոդոմայ, սակայն խնդրէր յԱստուծոյ դարձուցանել զբարկութիւնն՝ արդարոց թիւ գնելով ։*

*Զի՞նչ եւ նոր կտակիս պաշտօնեայքն, որք ի մեծամեծն վայելեցին շնորհսն, որովք եւ առաքինացան. որոց գլխաւորն Պետրոս յորժամ լուաւ ի Տեառնէ թէ «դժուարաւ մտանէ մեծատունն յարքայութիւնն Աստուծոյ», հարցանէր զարհուրեալ. «Իսկ ո՞ կարիցէ ապրել» ։*

Իսկ Պաւղոս յամենայն Թուղթսն իւր այսպիսի ցուցանէր միտս ոչ տեսանել զ(ի)|||[14] նախ քան զփրկութիւն ոմանց, այս է բազմաց զալ յաղատութիւն տեառն մերոյ. ընդ Քրիստոսի լինել լաւ համարէր, այլ կալ մնալ ի մարմնի կարեւոր վասն նոցա: Եւ այսպէս օրինակ ցուցանէ մարգարէն զպատուհասն սպառնացեալ. եւ սաստէ մեղուցելոցն. եւ դարձեալ աղաչէ վասն նոցին: Եւ զայս ի սորին մարգարէութեանս ի բազում տեղիս է տեսանել: Բայց այժմ մեք[15] յսկիզբն բանիս հայեսցուք:

գ. Գէորգ Սկեւռացի († 1301) ի խնդրոյ Հեթում Թագաւորի յօրինած է խմբագիր Մեկնութիւն մ'Եսայեայ, որ խորագիր կը կրէ. «Համառօտ ժողովումն Մեկնութեան սուրբ մարգարէին Եսայեայ ի լուսաւոր մեկնչացն՝ տեառն Եփրեմի խորին ասորւոյ, Յովհաննու Ոսկեբերանի, Կիւրղի Աղեքսանդրացւոյ, հրամանաւ տեառն Հայոց Հեթմոյ. Գէորգայ վարդապետի արարեալ: — «Ծածուկ են միշտ եւ անյայտ բանք օրինացն...

Ձեռ. էջմ. Թ. 1205 (ԺԴ) եւն:

Յիշատակարանին մէջ խօսելով իւր աղբիւրներուն վրայ, կը գրէ Ոսկեբերանի մասին. «Իսկ աստուածաշնորհն Յոհան՝ Ոսկեբերան

---

[14] Ձեռագիրը հոս խանգարուած կամ թերի է: Ընդարձակն է. «Իսկ Պաւղոս ամենեւին յամենայն ի Թուղթսն այսպիսի միտս ցուցանէ. զի եւ զՔրիստոս բազմաց փրկութիւն տեսանիցէ. «Ելանել, ասէ, ի մարմնոյս եւ ընդ Քրիստոսի լինել լաւ համարիմ, բայց կալ մնալ ի մարմնի ն'ւս կարեւոր վասն ձեր». Միոն, 331 ա:

[15] Ձեռ. Մեւ.:

յորջորջեալ վասն հոգեշահ վարդապետութեան եւ առատահոս իմաստիցն՝ որ ի բերանոյ նորա բղխեալ արբուցանէր զականջս եկեղեցւոյ. եւ սա ձոխաբար խօսեցեալ» զԵսայեայ Մարգարէութենէն։

Դ. Կ՚ըսուի թէ Եսայեայ Մեկնութիւն մը գրած է նաեւ Սարգիս Վ. Կունդ ի Խորանաշատ, աշակերտն Յովհ. Սարկաւագ Վարդապետի, որմէ յառաջբերութիւններ ունի Գէորգ Սկեւռացի։ Թերեւս այս Մեկնութիւնն ըլլայ Էջմ. 1132, թղ. 1ա—173ա (ԺԶ. դարէ), որ անխորագիր է եւ կը սկսի. «Հռչակաւոր մարգարէն Եսայի աստուածաբան էր ի մէջ ամենայն մարգարէիցն, վասն որոյ գերազանցեալ եւ առաւել էր քան զամենայն մարգարէսն։ Եւ զառաւելութիւն եւ զպայծառութիւն մարգարէութեան սորա ի մէջ մարգարէիցն՝ ի Պաւղոսէ ուսանիմք...»։ Վերջին տողերս ցոյց կու տան, թէ Ոսկեբերանի Յառաջասացութիւնն անմիջնորդաբար կամ միջնորդաբար մատչելի եղած է հեղինակին։

Կը թողում յիշել յետնագոյնները։

Ե. Եսայեայ Մեկնութեան հրատարակութիւնը յետաձգուած էր, ինչպէս տեսանք վերը, այն պատճառաւ միայն, որ թերի էր միակ ձեռագիր օրինակը։ Բայց որովհետեւ ունէր թարգմանութիւնը պերճ հայերէն մը դասական նկարագրով, անկէ բազմաթիւ հատուածներ ներս առած էր Հ. Թ. Թոռնեան իւր Հատընտիր ընթերցուածք ի մատենագրու-

թեանց նախնեաց *գործին մէջ. Վիեննա* 1866, *էջ* 247—331. *Բ. տպ.* 1891, *էջ* 187—248:

*Ամբողջական հրատարակութիւնը հոգաց Հ. Ա. Տիրոյեան՝* Երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Եսայեայ մարգարէին. *Վենետիկ* 1880, 8°, *էջք ԺԶ* + 527: *էջ* 1—472 *բնագիր. էջ* 473—487 *«Այլ եւ այլ ընթերցուածք հատուածոց Մեկնութեանն Եսայեայ, գտելոց ի ձառընտիրս վանացս, բաղդատեալ ընդ օրինակի տպագրին մերոյ»:*

*Եօթը տարի ետքը լոյս տեսաւ Մեկնութեանս լատիներէն թարգմանութիւնը.* In Isaiam prophetam interpretatio Sancti Joannis Chrysostomi. Nunc primum ex armeno in latinum sermonem a Patribus Mechitaristis translata. Venetiis 1887, 8°, pp. XX + 468.

*Երուսաղէմեան հատակտորներուն ուշադիր եղած էր † Եղիշէ արքեպ. Դուրեան պատրիարք, որ կը խորհէր հրատարակել զանոնք ամբողջութեամբ:* *Այժմ* Անտիպ մասեր Ոսկեբերանի Եսայեայ ոսկեդարեան թարգմանութենէն *խորագրոյ տակ լոյս տեսաւ Սիոն ամսագրի մէջ,* 1933, *էջ* 330—337, *Մեկնութեան Յառաջաբանութեան մնացորդն եւ Ա.* 1—13 *համարներու մեկնութիւնը: Անշուշտ գովելի պիտի ըլլար եթէ Մեկնութեան մնացեալ անտիպ մասերն ալ օր յառաջ մատչելի դառնային հայրագէտներուն եւ հայերէնագէտներուն:*

6. *Մեկնութեանս թարգմանութիւնը կատարուած է Ե. դարու առաջին կէսին, ինչպէս*

կ՚երեւայ այն գրչէն, որ հայացուցած է Մատթէի Մեկնութիւնը[16]: Թոռնեան կը միտի մինչեւ անգամ կարծել թէ Եղնիկ ինքնին եղած ըլլայ թարգմանիչը,

Ճարտար թարգմանիչը, որ հմուտ է թարգմանութեան նիւթին, տիրացած է յունարէն լեզուին, գերազանցօրէն վարժ է թարգմանութեան արուեստին մէջ: Ծծած մայրենի լեզուին ոյժը, կրթուած եւ թեքուած գրագիտութեան մէջ, գիտէ իբրեւ հեղինակ արտայայտել մտքերը դասական պերճութեամբ եւ վայելչութեամբ: Հարուստ է իր բառապաշարը. առատ է տալու չարադասութեան ճկուն դարձուածքներ, հռետորական շեշտ եւ անբռնազբօսիկ, ազատ եւ մեղմական հոսանք: Պերճաբան մատենագիրը ունեցած է պերճախօս թարգմանիչ: Եթէ չգիտնայինք թէ թարգմանութիւն մ՚ունինք մեր առջեւ, դիւրին պիտի չըլլար գրութեան ոճէն հանիլ այս գիտութեան[17]: Թարգմանիչը ամէն ջանք տարած

---

[16] Հ. Թ. Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք, Բ. տպ., Յառաջաբան, էջ 19: Նորայր Ն. Բիւզանդացի, Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, Տփղիս 1900, էջ 26: «Մի եւ նոյն թարգմանչի գործ թուի Ոսկեբերանի Մեկնութիւնն Եսայեայ, Մեկնութիւնն Մատթէի, Սեբերիանոսի ճառք»:

[17] Նկարագրական է այս տեսակէտով Ոսկեբերանի Բ. Թեսաղոնիկեցւոց թղթի մեկնութեան հետեւեալ տեղիքը (գլ. Գ.). «Բայց աղէ ասա. որո՞վ պաճուճանաւք բանիւք խաւսեցաւ Պաւղոս. այլ զամենայն տիեզերս դարձոյց... Այլ չգիտեմ, ասէ, զի՞նչ ի գիրսն կայցէ: Ընդէ՞ր. միթէ եբրայեցերէ՞ն, միթէ հոռոմարէ՞ն, միթէ յաւտար ազգի ինչ լեզուս ասացի. ո՞չ ապաքէն հ ա յ ե ր է ն ասացի» (Ձեռ. էջմ. 1321, թղ. 163 ա). յոյնն ունի հոս «μὴ γὰρ ἐβραιστί, μὴ γὲ ῥωμαιστί,

է պահպանելու իր անկախութիւնը մտածելու եւ մատենագրելու: Բնագրին մութ նախադասութիւնները լուսաւորած է. յունարէնի յատուկ գիտական ասութիւններուն փոխարէն կարգած է համապատասխան հայերէնները, ընտիր եւ ճաշակաւոր ձեւով: Կը յիշեմ «այլասացիկ յորջորջումն, բարբառ», փոխարէն յոյնին μεταφορά, ἀλληγορία բառերուն:

Տեղւոյս չէ միջամուխ ըլլալ Մեկնութեանս լեզուական առանձնայատկութեանց մէջ, կամ քննութեան առնել թարգմանութեան արուեստն ու կամ թէ ի՞նչ չափով համապատասխան կամ ոչ համապատասխան է թարգմանութիւնը բաղդատութեամբ սկզբնագրին: Թէպէտ շատ շահեկան աշխատանք պիտի ըլլար, մանաւանդ վերջին կէտին ուսումնասիրութիւնը, վասն զի հայերէն թարգմանութիւնը ինչպէս ինքը կարօտ է լուսաւորութեան բաղդատմամբ յոյնին հետ, նոյնպէս յոյն սկզբնագիրը պիտի գտնէ ուղղութեան կէտեր, գտնելով հայոյն քով հնագոյն յոյն բնագիր մը, որ ժամանակով այնպէս մերձաւոր է հեղինակին ե՛ւ անձին ե՛ւ միջավայրին: Այս կարեւոր աշխատանքները թողլով ուրիշներուն, հոս նկատի կ'առնեմ քանի

μὴ γέ ἑτερογλώσσως εἴρηται, οὐχὶ ἑ λ λ η ν ι σ τ ί λέγεται» (Montfaucon, IX, 528). Թարգմանիչը առանց զգացնելու իր ունկնդիրներուն կամ ընթերցողներուն, թէ յունարէն բնագրի մը թարգմանութիւնը կը մատուցանէ, կը շեշտէ առանց թէ ինքը հայերէն կը մտածէ կամ կը ճառէ եւ կը պահանջէ որ հասկցուի:

մը տեղիք միայն, եւ այն նորագիւտ հատակոտորներէն, որոնք հրատարակուեցան Սիոնի մէջ։

Իբրեւ ընդհանուր դիտողութիւն պիտի ըսեմ որ Ձեռագիրն իր մէջ ունի որոշ թերութիւններ, որոնք պէտք է վերագրուին անճիշդ օրինակողին։ Բայց նաեւ հրատարակիչը անվարժ եղած է կարդալու եւ լուծելու Ձեռագրին անորոշութիւնները։ Բաղձալի էր մնալով հանդերձ հաւատարիմ Ձեռագրին ընթերցուածներուն՝ կարկառուն ընծայել բնագիրը արտաքուստ արտաքս, զգալի, տեսանելի եւ շօշափելի ընելով հատուածներու բաժանումները (համարները), Ս. Գրոց կոչումները, ճշդելով կէտադրութիւնը եւն. նաեւ լեզուական անկանոնութիւններու վրայ առանձին ուշադրութիւն հրաւիրելով։

Ես պիտի ծանրանամ հոս քանի մը բառերու եւ մութ նախադասութիւններու վրայ։

Աստուածագէտ կրօնք (*Սիոն* 332*բ*)· *հմմտ. եւ տպ.* 82 «*բարձրագոյն* աստուածագէտ կրօնից *գիտութիւն*»· *երկու դէպքին ալ յոյնն ունի* δόγμα, *որ այլուր պարզապէս* «*կրօնք*» *կը թարգմանուի*։ *Թերեւս այս բառին թարգմանութիւնն ըլլայ նաեւ* «*զկրօնս աստուածածանոյց*», 287։

Կպրշական· «*ի — Հրէից*» 332*ա*· *հմմտ*· *նաեւ տպ*· 6· «*— Հրէից ազգի որդիքն*»։ *Միայն Եսայեայ Մեկնութեան մէջ գործածուած*։

Անտաղտուկ· «*զ — օրէնսդրութիւնն յայտ*

տանէ», 334ա. յոյնն է ἀνεπαχθής տանց տխրմունքի, խնայող, ակնածալից. միայն Մատթէի Մեկնութեան թարգմանչին սիրելի. հմմտ. էջ 209, 212, 371, 724 եւն:

Արուգ. «— Միան այնուհետեւ չինուածք քաղաքին. 335բ (յոյնն περιττός, աւելորդ, անպէտ, անչուք). հմմտ. նաեւ տպ. էջ 178. «երթեալ կքրեալ նստիցիս ընդ արուք հովանով»: Ունինք դասականին մէջ երրորդ տեղիք մ'ալ՝ «Նոքա ընդ արուք (կ'ուղղուի՝ արուգ) ծառովն նստէին եւ հեթանոսք ընդ ոստովք ծառոյն կենաց». Գր. Սքանչելագործի խօսք ի Ծնունդն Քրիստոսի, հրտ. Հ. Ա. Վարդանեան, Դասական մանր բնագիրներ, Ա., Վիեննա 1913, էջ 35, ծան. 139:

Յաճախամատոյց. «զոհս եւ զաճախամատոյց պատարագսն» 336ա. յոյնն պարզապէս «զոհս»: Նորագիւտ բառ:

Նախընտիր. «ոչ — (տպ. նախ ընտիր) ինչ կամք էին Աստուծոյ», 336բ. յոյնը՝ προηγούμενον ... θέλημα, կանխող, նախակարապետ, նախասահմանող. Նորագիւտ բառ:

«Յայտ յանդիման, եւ անուն Աստուծոյ յանդիմանութեան նոցա, որ առ Երեմիայն մեղադիր լինի, թէ ի նմանէ մերժեցան եւ ընդ դեւս բեւեռեցան, այլ աւէ». 334բ: Հոս բնագիրը խանգարուած կ'երեւայ տողերու անկմամբ. իմա՛ ըստ յոյնին. Յայտ յանդիման զայս աւէ: Եւ զի բաւական էր անուն Աստուծոյ յանդիմանութեան, վասն որոյ Երեմիա

մեղադիր լինի ասելով, թէ եւ ի նմանէ մերժեցան եւ ընդ դեւս բեւեռեցան: Այլ ասէ. Զաւրբան Իսրայելի...:

Դարման բժշկութիւն 335 ա. իմա «դդարման բժշկութեան», յոյնն մէկ բառով՝ θεραπεία:

«Ամենեւին ասէ չարչարիցի եւ զամենայն տրտմութիւնս ած ի վերայ», 335 ա. կարդա՛ «զամենեսին, ասէ, չարչարեցի եւ զամենայն տրտմութիւնս ածի ի վերայ»:

«Լաւութեանն», 335ա. կարդա՛՝ լաւութիւնն». յոյնն է τὸ ἐξαίρετον, զոր այլուր «առաւելութիւն» կը թարգմանէ (հմմտ. «Զառաւելութիւն այսր մարգարէի» Սկիզբն Նախաբանին):

«Եւ այլքն եւս կարգ ըստ կարգէ նմանակցէ», 336 բ. կարդա ըստ յոյնին. «եւ այլքն եւս կարգ ըստ կարգէ նմանակիցք են» կամ «նման նոցին են»:

«Թէ կարի մեծութեան նորա պաշտաման անարիւն էին այնպիսի պէտք», 337 ա. «անարիւն» կարդա «կարի... անարժան» ἀνάξιος:

Ի վերջոյ կրնամ միայն շնորհակալութիւնս յայտնել Սիոնի խմբագրութեան, որ պատճառեց դասական հայերէնի սիրահար անձանց հաճոյք նոր բնագրի մը հրատարակութեամբ: Միաժամանակ պիտի տամ արտայայտութիւն ընդհանուր փափագի, տեսնել անտիպ մասերու ամբողջական հրատա-

բակութիւնը Սիոնի էջերու մէջ եւ կամ առանձին հատորով։

Այս առթիւ ունիմ ուրախութիւնը աւետելու դասական մատենագրութեան բարեկամներուն, թէ կը պատրաստուի տպագրութեան Յովհաննէս Ոսկեբերանի Թեսաղոնիկեցւոց Ա. եւ Բ. Թղթերու Մեկնութիւնը, որմէ մինչեւ այսօր քանի մը մանր հատուածներ միայն ծանօթ էին տպագրութեամբ։

## ԺԳ.

# ԹՈՌՆԻԿԵԱՆՑ ԺԻՒՂԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Հայոց, Վրաց եւ Յունաց քաղաքական եւ քաղաքակրթական պատմութեան մէջ կարեւոր դեր կատարած են Թոռնիկեանք Ժ.—ԺԳ. դարու մէջ:

Բազմաճիւղ իշխանական տանս ծագումն եւ ճիւղաւորումը երեւան բերելու եւ տանս անդամներու պատմական կեանքը նկարագրելու համար անբաւական են աղբիւրները, որոնք կը հասեն հայկական, վրական եւ բիւզանդական մատենագրութենէ: Իսկ իշխանական տանս այլ եւ այլ ճիւղերու մէջ մի եւ նոյն անուններու յաճախակի կրկնումը կը դժուարցնէ անձանց նոյնացումը եւ դէպքերու ժամանակագրական դասաւորութիւնը:

1. Մթութեան մէջ է Թոռնիկեան տան խանձարուրքը: Թէ այս տունը Մամիկոնեան եղած է, կարելի է ստոյգ համարիլ հիմնուած Գրիգոր Մագիստրոսի վրայ, որ իւր առ Թոռնիկ տէրն Սասնոյ ուղղած չորս թղթերը կը մակագրէ «առ իշխանն Մամիկոնեան»: Սասնոյ Թոռնիկեան ճիւղը առանց տարակուսի ընձիւղած է Տարօնի Թոռնիկեան բունէն:

Այստեղ առաջին անգամ երեւան կու գան Թոռնիկեանք 850ին յանձին անծանօթ իշխանի մը, որ «որդի Թոռնկայ» կը կոչուի։ Թովմայ Արծրունւոյ այն տեղիքը, ուր կը յիշատակուի Թոռնկայ որդին, տողի մը անկում ենթադրել կու տայ, զոր դժուար է այժմ լրացնել· կը գրէ Թովմա, թէ Բագարատ Տարօնի իշխանաց իշխանի ընդդէմ Մուսէի օգնութեան հասան 850ին այլ եւ այլ իշխանական տոհմեր, որոնց թուին մէջ են· «արք ժԶ ի տանէն Արծրունեաց զօրօքն իւրեանց· եւ ի տանէն Բագրատունեաց <|||||||> Թոռնկայ որդի զօրօք իւրովք· ի տոհմէն Ամատունեաց Շապուհ Ը հարազատօք եւ զօրօք իւրեանց, ի տոհմէն Գնունեաց Գրիգոր որդի Հազրի վեց այլ եւս հարազատօք եւ զօրօք իւրեանց» եւն (էջ 109)։ Այս տեղ յայտնապէս դուրս ինկած է Բագրատունեաց տան իշխանին անունը, որ ըլլայ թերեւս Իշխանիկ[1], ուստի եւ առաջին պարբերութիւնը լրացնելու է «ի տանէն Բագրատունեաց <Իշխանիկ որդի ||| զօրօք իւրովք>։ Իսկ երկրորդ պարբերութիւնը՝ <ի տանէն Մամիկոնէից Յով-

[1] Հմմտ. Թ. Արծր. 194· «Եւ էր յայնժամ առեալ ի Յունաց գաղաբար Իշխանիկ (տպ. Գաղաբար իշխանիկ) կոչեցեալ ի տոհմէ Բագրատունի զերդն Արամանեակ կոչեցեալ...» այսպէս իմացիր նաեւ քիչ յետոյ· «եւ Աբեւելեաց զօրավարին եկեալ պատերազմել ընդ Իշխանկան (տպ. իշխանականն) առնուլ զամրոցն... եւ ինքն անցեալ գնայր առ Իշխանիկն (տպ. իշխանիկն) ի յամուրն Աշխարհաբերդն կոչեցեալ»։

նան[2] (կամ Քուրդիկ[3]) > Թոռնկայ որդի»։ Արծրունի պատմիչը հոս նիզակակից իշխանները կը թուէ անուններով եւ հայրանուններով․ ամէն դէպքին Թոռնկայ որդւոյն անունը կը պակսի։

2․ Այս Թոռնիկները իբրեւ Մամիկոնեաններ ունէին անշուշտ արենակցական կապ Բագրեւանդի Մամիկոնեան տան հետ եւ ասոնք ալ Տայոց աշխարհը ապաստան գտած Մամիկոնեանց հետ։

Յայտնի է Ղեւոնդէն, թէ 773ին Արտաւազդ Մամիկոնեան Համայեակի որդին ապստամբելով Արաբացւոց դէմ եւ սպաննելով ի Կումայրի Շիրակայ «զհրամանատար հարկին» եւ «որ ինչ գտանէր ի ձեռին նորա առեալ՝ համբառնայր ամենայն տամբ իւրով, գնայր ի կողմանս Վրաց աշխարհին եւ ընդ նմա ամենայն նախարարք աշխարհիս» (էջ 138)։ Արտաւազդ հանելով Եգերացւոց (Աջարացւոց) աշխարհը «ստանայր անձամբ զիշխանութիւն անձին իւրոյ ի վերայ Եգերացւոց եւ ի վերայ Վէրոյ, որ են Վիրք»։ Կը յաջորդէ 774ի ապստամբութիւնը, դարձեալ Մամիկոնեանց՝ այս անգամ Հրահատայ որդւոյն՝ Մուշեղի գլխաւորութեամբ․ որուն հետեւութեամբ բնա-

---

[2] Մարկուարտ, Südarmenien, 495․ այսպէս կը կարդայ Եաքուբիի աղաւաղուած մէկ ընթերցուածը՝ «Յովհան որդի Թոռնկայ»․ հմմտ․ եւ Բ․ Խալաթեանց, Արաբացի մատենագրեր, 122 եւ Թ․ Արծրունի 188։

[3] Թ․ Արծրունի 191 «Գրիգոր Քուրդկայ որդի Մամիկոնէից տէր»։

ընկճուեցան Մամիկոնեանք արաբական տիրապետութեան տակ գտնուած հողամասերու մէջ։

Արտաւազդ Մամիկոնեանի իշխանութեան տեւողութիւնը յայտնի չէ մեզի։ Աջառայի իշխանութիւնը անշուշտ երկար ժամանակ չմնաց իր եւ յաջորդներուն ձեռքը, երբ մանաւանդ տիրացաւ Արդանուջի Վասակ Բագրատունի 774էն ետքը[4]։ Հաւանական է ենթադրել թէ Մամիկոնեանք ամփոփուեցան Տայոց աշխարհը, ուր ի բնէ ունէին իրենք կալուածքներ։ Այս տեղ երեւան կու գայ Ժ. դարու մէջ Թոռնիկեան մէկ նոր ճիւղը. որուն առաջին ներկայացուցիչն է Պատմութեան մէջ Զորտուանէլ, յիշուած Կոստանդին Ծիրանածնի օրով (913—959)։

Թէ Տայոց աշխարհն եւ թէ Տարօնի այն մասը, որ կը գտնուէր Մամիկոնեաններու իշխանութեան տակ, Թ. դարու վերջերը կա՛մ արդէն Յունական ազդեցութեան տակ էր եւ կա՛մ նոր ենթարկուած անոր։

Տայեցիք Արդանուջի Կիւրապաղատին տակ էին. իսկ Տարօն եւ Սասուն արեւելեան բանակի իշխանութեան ենթարկուած։

Բիւզանդիոնի հետ անմիջական յարաբերութիւնը ձգեց շատ հայեր դէպի կայսերական մայրաքաղաք. անոնց թուին մէջ կային նաեւ Թոռնիկեաններ, թէ Տայքէն եւ թէ Տա–

---

[4] Հմմտ. Յ. Մարկուարտ, Բագրատունեաց ծագումը, Վիեննա 1913, էջ 73յյ.։

րոնէն: Անոնք ձեռք բերին թէ՛ քաղաքին եւ թէ՛ բանակին մէջ բարձր դիրքեր. եւ շատ անգամ բաժին բերին քաղաքական խնդիրներու մէջ: Անդորրութիւնը, որ առաւել չափով կարելի էր գտնել քաղաքին շրջակայքի վանքերու մէջ եւ յԱթոս, հրապուրեց յինքն շատ Թոռնիկեաններ, որոնք նախընտրելով այդ կեանքը՝ լքեցին հայրենիքի մենաստանները եւ պայծառացան հոն:

Այս անձուկ աղերսը, զոր ունեցան Թոռնիկեանք Բիւզանդիոնի հետ, ստիպեց զանոնք լքել նաեւ հայրենի աւանդութիւններն եւ ազգային ծէսը, եւ յարիլ որթոդոքս եկեղեցւոյ՝ ընդունելով յունական ծէսն եւ դաւանութիւնը: Գրիգոր Մագիստրոս իւր առ Թոռնիկ Թոռնիկեան Մամիկոնեան իշխանն Սանոյ գրած թուղթին մէջ յայտնապէս կը գրէ. «Բայց դու, Մամիկոնեան, որ համողեան հաւանեցար Ղեւոնդեան ընդարձակագոյն տոմարի, ո՞ ոք ի քէն կարասցէ կորզել զուգակս» (ձկունս) (Թուղթք, էջ 214), ակնարկելով թէ իբրեւ յունական եկեղեցւոյ հետեւող՝ նաեւ ուրբաթ օրերը ձկնակեր եղած է:

Յ. Ձեռնարկելով այս տեղ կազմել Թոռնիկեանց ճիւղագրութիւնը, մեր նպատակը չէ գրել անոնց գործունէութեան պատմութիւնը: Պիտի յիշենք միայն անհատներու հետ անընդմիջապէս կապուած դէպքերը: Իսկ ճիւղագրութեան պիտի ենթարկենք միայն Տայոց եւ Սանոյ Թոռնիկեան ճիւղերու անդամները. որովհետեւ կը պակսին մեզ ազգակցական տե-

ղեկութիւններ Բիւզանդիոնի մէջ բուն գրած Թոռնիկեանց մասին: Բայց եւ այնպէս զանց պիտի չընենք գոնէ համառօտիւ յիշել պատմութենէ ծանօթ դէմքերը:

4. Երկու վրացերէն յիշատակարաններ:

— Թոռնիկեանց ճիւղագրութեան համար երկու կարեւոր յիշատակարան հասցուցած է մեզի Վրաց գրականութիւնը, գրուած 977ին եւ 981 Յովհաննէս-Թոռնիկ վանականի յանձնարարութեամբ: Այս կրկին յիշատակարանները, զորոնք յառաջ պիտի բերեմ հայերէն թարգմանութեամբ, առիթ տուած են P. Peeters գիտուն Բոլլանդեանին, զբաղելու Թոռնիկեանց ճիւղագրութեամբ[5]: Իր տուած թանկագին լուսաբանութիւնները նկատի պիտի առնուին գրութեանս մէջ:

ա. Աթոսի Իվերոն վանքի վրացերէն ձեռագիրներու Թ. 9 հաւաքածոյն, որ կը պարունակէ Ս. Եփրեմի եւ Յովհ. Ոսկեբերանի ճառերը, գրուած է Օշք վանքը 977ին, Յովհաննէս-Թոռնիկ կրօնաւորի հրամանաւ: Ձեռագրին մանր ցուցակագրութիւնը տուած է R. P. Blake[6], հրատարակելով նաեւ յիշատակարանները վրացերէն բնագրով եւ գաղղիերէն թարգմանութեամբ: Յառաջ կը բերեմ

---

[5] P. Peeters, Un colophon géorgien de Thornik le moine. Analecta Bollandiana, t. 50 (1932), p. 358—371.

[6] Robert P. Blake, Catalogue des Manuscrits géorgiens de la Bibliothèque de la laure d'Iviron au mont Athos. Revue de l'Orient chretien, VIII (1931/2), էջ 337—339:

նոյնը հայերէն հետեւելով Blakeի գաղղ. թարգմանութեան.

«Ես Յովհաննէս, որ յառաջ Թոռնիկն կոչէի, եւ եղբայրն իմ Յովհաննէս Վարազվաչէ, որդիք օրհնելոյն Զորտվանելի[7], ստացաք եւ գրեցաք զմատեանս զայս որ անուանեալ կոչի Բուրաստան ի Սուրբ Հարց. յորում գտանին պէսպէս շնորհք յօգուտ առողջութեան ոգւոց. առ ի յիշատակ[8] եւ ի գովութիւն մանաւանդ հզօր եւ բարեպաշտ կիւրապաղատին Դաւթայ...: Եւ զկնի նոցա առ ի յիշատակ[8] մեր, մանաւանդ ի վեր անդր յիշելոյ Յովհաննու Թոռնկայ, (որ) այժմիկ (շնորհիւ) սուրբ թագաւորացն՝[9] Յովհաննէս սինկեղղոսն (կոչի), որ առ սէր Աստուծոյ եթող զմեծութիւն երկրաւոր եւ եգիտ զերկնաւորն. քանզի իբրեւ գտանէր ի բարձունս պայծառութեան նոցա եւ շնորհաց սուրբ թագաւորացն, փութաց փոփոխել զզգեստ զինուորութեան՝ առ ի զգենուլ զհանդերձ կրօնաւորական եւ ընդ նովաւ մեծապէս եւ ըստ օրինաց եհար ծառայութիւն ծառոյն կենաց եւ սրբոց թագաւորաց: Եւ իբրեւ երեւեցաւ ի վերայ երկրին Հոռոմոց այր ոմն ամբարիշտ եւ անօրէն[10], որ ի վսեր

---

[7] Անուանս Հայերը Զորտվանէլ, Զորտուանէլ, նաեւ Զարտուանիկ կը գրեն. վրական ձեւն է Զորտվանելի:

[8] Peeters եւ Blake կը թարգմանեն «աղօթք». գրինք ըստ իմաստին:

[9] Կ'ակնարկուին Վասիլ Բ. (976—1025) եւ կայսերակիցն Կոստանդին Ը. (976—1028):

[10] Խօսքը Վարդ Սկլերոսի ապստամբութեան մասին է:

եկեալ յանդգնէր ընդդէմ սրբոց Թագաւո-րացն[9], նոյն (Թոռնիկ) գնաց փութանակի առ հզօրն եւ անյաղթն ամենայնիւ առ կիւրապա-ղատն Դաւիթ, եւ հրամանաւ նորա եղծեալ ապականեաց զայս խորհուրդ նորա եւ հաս-տատեաց միւսանգամ զսուրբ Թագաւորս· զո-րոց զհոգի եւ զմարմին պահեսցէ Աստուած:

Ապա (առ ի յիշատակ) Յովհաննու Վա-րագվաչէի, կնոջն նորա եւ որդւոցն՝ Մի-քայէլի եւ Զորտվանէլի զօրավարի եւ չորո-րդի եւ Թոռնկայ· եւ եղբօրորդւոցն իմոց՝ Զորտվանէլի եւ Բագ(ա)րատայ պատրկի· առ ի յիշատակ[8] ոդւոյ Բագ(ա)րատայ մագիս-տրոսի· եւ ծնողացն իմոց Զորտվանէլի եւ Մարեմայ· եւ եղբարցն իմոց Բագարատայ, Արշուշայի եւ Աբուհարբայ· եւ հօրեղբարցն իմոց Աբուհարբայ եւ Արշուշայի եւ ամենայն հանգուցելոցն տանս մերոյ...:

Գրեցաւ սուրբ մատեանս այս ի հռչակաւոր վանս Աչունից[11], ընդ հովանեաւ սուրբ Կա-րապետի, յաբբայութեան Սարգսայ, զոր Քրիս-տոս օրհնեսցէ, ձեռամբ երիցուն Ստեփաննոսի եւ նորին ձեռամբ կազմեցաւ, զոր Աստուած օրհնեսցէ: Եւ էր ամն շրջանին զատկաց ՃՂԷ (977)[12]· գրեցի զմատեանս զայս ես Դաւիթ,

---

[11] Վրացերէն Ուշքի, այն է ըստ Հայոց Աչունք· այժմ Խօշք, Խօշքայ վանք նաեւ պարզապէս Վանք (գիւղ) կոչուած, Թորթումի հովտին մէջ. վանքին կամ եկե-ղեցւոյն նկարագրութիւնն եւ յատակագիծը տես Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս. Վենետիկ 1864, էջ 86—91:

[12] Այս ինքն հիմ առնելով 780 տարին, որ է սկիզբն

որդի քեռ հօրն աստուածակիր Միքայէլի Մոգրիկելի[13]: Եթէ անգիտութեամբ վրիպակք ինչ եղեն ի մատենիս, շնորհեցէք վասն Աստուծոյ ներել թողութեան եւ աղօթս արարէք:

Թղ. 374 բ. Ով սուրբ հարք, որ հանէք զպատճէն գրոյս, յիշեսջիք զՍինկեղղոսն եւ զորդիս նորա. ով սուրբ Յովհ. Ոսկեբերան եւ Ս. Եփրեմ, բարեխօս լերուք վասն Յովհաննու Վարագվաչէի եւ որդւոց նորա առաջի Քրիստոսի»:

բ. Մոսկուայի Սինհոդական Մատենադարանի յունարէն ձեռագրաց Թ. 62 ունի իբրեւ պահպանակ երկիջեան յիշատակարան մը խուցուրի նշանագրով: Նախնաբար եղած է այն վրացերէն ձեռագրի մը մասը, որ գրուած է 991ին: Այս Յիշատակարանը վրական բնագրով եւ լատիներէն թարգմանութեամբ հրատարակեց P. Peeters իր վերոյիշեալ աշխատութեան մէջ[14]: Կու տամ նոյնին հայերէն թարգմանութիւնը՝ յապաւելով անկարեւոր մասերը:

«...Նովին յուսով եւ վասն յաւիտենական կենաց ես Յովհաննէս, որ Թոռնիկն կոչէի, որդի Երանելի տեառն Զորտուանէլի, աշխատ եղէ ի գրել մատենիս, որ կոչի Գանձարան... Արդ աղաչեմ զձեզ զամենեսեան՝

---

Վրաց թուականին. կոչուած մերիններէն նաեւ Հասոմոց թուական (արձ. Անւոյ Կաթողիկէին):

[13] Մոգրիկելի բառ Վրաց:

[14] Analecta Bollandiana, 50, էջ 359—362:

զհաւատացեալսդ Քրիստոսի որդւոյ Տեառն մերոյ, որ զսուրբ մատեանս ընթեռնոյք, յիշեսջիք յաղօթս ձեր զիս, որ չեմ արժանի յիշելոյ ի քրիստոնեայս վասն չար գործոց իմոց...: Նոյնպէս յիշեսջիք եւ զայնոսիկ որ յինէն յիշին. եւ նախ իսկ զուսուցիչն իմ զՅովհաննէս Աբուլհերիթ[15] եւ զեղբայրն իմ զՅովհաննէս Վարազվաչէ եւ զորդին մեր հոգեւոր եւ մարմնաւոր զՄիքայէլ եւ զՋորտուանէլ էխուսովիտի[16] եւ զԲագ(ա)րատ պատրիկ եւ զՋորտուանէլ եւ զփոքրիկն[17] Թ·ոնիկ եւ զհոգիս ծնողաց իմոց եւ զեղբարս եւ զամենայն զիմսն...:

Գրեցաւ սուրբ մատեանս այս յերկրին Կարնոյ յամի լինելութեան աշխարհի **ՑՇ** (991/2)[18] եւ ըստ չրջանի Զատկաց ՄԱ (981),

---

[15] Սա է Ս. Յովհաննէս Հագիորիտ, հայրն Ս. Եւթիմէոսի եւ հիմնադիրն Աթոսի Վրաց վանքին. հմմտ. AB., էջ 364:

[16] Իմա՛ ἐξκουβιτοι = excubitores, այս ինքն հաւանօրէն domesticus excubitorum, պահանորդապետ. հմմտ. AB., էջ 367 եւ E. Stein, Studien zur Geschichte des byzantinischen Reiches. Stuttgart 1919, էջ 135 եւն:

[17] Բնագիրն ունի მცირაჲ, այն է փոքր, կրտսեր:

[18] Արարածոց թուականը 6500 չի համապատասխաներ Զատկական շրջանին՝ 201: Peeters (էջ 363) կը կարծէ թէ վերջնոյն մէջ տասնաւոր մը դուրս ձգուած ըլլայ: Ինձ հաճոյագոյն կը թուի լուծել այս առեղծուածն այսպէս. ձեռագիրը գրուած է Կարին վրական 201 = փրկչական 981/2 տարւոյն. իսկ Արարածոց 6500ին, այն է փրկչական 991/2ին (հիմ առնելով 5308/9) արտագրուած է յԱթոս: Օրինակողը, որ ձեռագրին հետ յիշատակարանն ալ օրինակած է, անփոփոխ պահած է Վրաց թուականը (Զատկական շրջանին 201 տարին), որ անշուշտ անգործածական էր

*ի ձեռն իմ Միքայէլ գրչի. իսկ հաւաքեցաւ ի ձեռն իմ փծուն Ստեփանոսի։ Աղօթս վասն մեր արասջիք, զի եւ Տէր ձեզ ողորմեսցի։*

*Եւ ես Յովհաննէս սինկեղղոս*[19] *եւտու զսուրբ մատեանս զայս, զաւաջնորդն ուղիղ կենաց՝ ի լեառն Աթոս, յորում մարմնաւոր մարդիկ զօրէն անմարմնոցն կեան. զի եւ ես ինքնին գլխովին ի նմա ընկալայ զհանդերձ միանձնաւորական»։*

5. Զորտուանէլ–Թոռնիկեանց ճիւղագրութիւնը *Յովհաննէս Թոռնիկի այս կրկին Յիշատակարաններու համաձայն կարելի է կազմել այսպէս.*

ԹՈՐՆԻԿ Ա.

*Կոստանդին Ծիրանածին* de cerim. I, 96, *էջ* 435, *կը յիշէ այս շրջանէն Τορνίκης Νικόλαος մը, եւ Կեդրենոս* hist. comp. 2, 324, *Νικόλαόν τε καὶ Λέοντα τοὺς Τορνικίους, զորոնք Լեւոն Գրամատիկոս* (*էջ* 329) *պարզապէս οἱ*

*յԱթոս, եւ անոր կից տուած է արտագրութեան տարին Արարածոց* 6500, *որ միակ գործածական թուականն էր Բիւզանդական հողի վրայ։ Թէ Յիշատակարանս օրինակութիւն մըն է, կ'ընդունի նաեւ* Peeters*։ Ուշադրութեան արժանի է որ Յովհ. Սինկեղղոս վախճանած է* 984*ին, ուստի եւ ձեռագրիս օրինակութենէն* 6—7 *տարի յառաջ։ Տօմարագիտական հաշիւներուն անծանօթ գրիչներ նման ժամանակագրական սխալներ կ'ընեն նաեւ հայերէն ձեռագիրներու մէջ, երբ օրինակի համար Արարածոց եւ Հայոց թուականները միաժամանակ գործածուած են. Հայոց թուականը ճշդիւ փոփոխած ժամանակ անփոփոխ կը պահեն Արարածոցը. հմմտ. իմ գրուածքս Քանի՞ տեսած թուական ծանօթ էր Հայոց. Կ. Պոլիս* 1923, *էջ* 3 (*արտատպ. Թէոդիկի Ամենուն տարեցոյցէն*)։

[19] *Նոյն ինքն Յովհ. Թոռնիկն է։*

Τορνίκοι կ'անուանէ։ Ասոնք 945 Յունուար 27ին կ'աքսորուին (Կեդր. 324)։ Ասկէ հնար ըլլայ թերեւս մտածել թէ Ժ. դարուն սկիզբը կար Թոռնիկ մը, որմէ ծաղկած են յիշեալները. նոյնը եղած ըլլայ նաեւ Զորտուանելի հայրը։ Ուշադրութեան արժանի է որ թէ ասոնք եւ թէ Զորտուանէլ կրկին անուններ կը կրեն. մէկը անշուշտ տրուած է իրենց երբ կը գտնուէին յունական ծառայութեան մէջ։

ԶՈՐՏՈՒԱՆԷԼ Ա., ԱՊՈՒՀԱՐՊ Ա., ԱՐՇՈՒՇԱՅ Ա.

Յովհ. Թոռնիկ 977ին կը խնդրէ յիշել իւր ծնողքը՝ Զորտուանէլ եւ Մարիամ։ Թերեւս սա ըլլայ Ζουρβανέλης պրոտոսպաթարը, զոր Վրաց Կիւրապաղատը դեսպան ղրկած է Կոստանդին Ծիրանածին կայսեր (913—959)[20]։

Զորտուանելի եղբայրներէն յանուանէ կը յիշուին (Յիշատ. 1)՝ Ապուհարպ եւ Արշուշայ (Աշուշայ). զորոնք Յովհ. Թոռնիկ իւր հօրեղբայրները կ'անուանէ։ Զորտուանէլ Ա., որուն ամուսինը կը յիշուի Մարիամ, ունեցաւ հինգ որդի, որոնք են Թոռնիկ Բ., Վարազվաչէ Ա., Բագարատ Ա., Արշուշայ Բ. եւ Ապուհարպ Բ.։

ԶՈՐՏՈՒԱՆԷԼ Բ., ԹՈՌՆ ԱՊՈՒՀԱՐՊԱՅ Ա.

Ապուհարպի թոռը կը յիշէ Ասողիկ (277). 1000 թուականին, պատկին կը վախճանի Դա—

[20] Կոստ. Ծիրանածին de administr. imp. 202: διὰ τοῦ Ζουρβανέλη πρωτοσπαθαρίου τοῦ ἀζάτου αὐτοῦ. Marquart, Südarmenien, 528 Սասնոյ տէրը կ'ուզէ ճանչնալ յանձին այս Զորտուանէլի։

ւիթ Կիւրապաղատ եւ երկիրը կտակով կը յանձնէ Վասիլ Բ. կայսեր: Կայսրը կը փութայ զօրքով հանել Տայոց աշխարհը տիրանալու երկրին. այս միջոցին ռուս եւ տայեցի զօրքերու մէջ դոյզն պատճառի մը համար բախում տեղի կ'ունենայ. այս կռուի ժամանակ կը սպանուի նաեւ «Զորտուանէլ Թոռն Ապուհարպայ»: Դժբախտաբար պատմիչը յանուանէ չէ յիշատակած Ապուհարպի որդին (կամ դուստրը), որմէ սերած էր իր Թոռը: Այս Ապուհարպ Ս. Յովհաննէս Ապուլհերիթի աներն էր, այս ինքն Ապուհարպի դուստրը կին առած էր Ապուլհերիթ: Ս. Եւթիմիոսի վարքին մէջ կ'ըսուի. «Բանզի կայսերացն չէր ինչ անծանօթ Ապուհարփը, որ աներն էր հօրն Յովհաննու, նմին իրի ի նորին (Ապուհարպայ) շնորհացն ընկալան զՅովհաննէսդ մեծապատիւ պատուով եւ սիրով ի Կ.Պոլիս»: Ապուլհերիթի որդին եւ Ապուհարպայ Թոռն էր Ս. Եւթիմիոս, որ հօրը հետ իբրեւ պատանդ եկած էր Կ.Պոլիս, Դաւիթ Կիւրապաղատի մահէն ետքը (1000ին)[21]: «Զորտուանէլ Թոռն Ապուհարպայ» կարող է նաեւ Ապուլհերիթի զաւակը նկատուիլ, եթէ ուզենք ընդունիլ թէ Ապուհարպ չունէր արու զաւակ եւ կամ մէկէ աւելի դուստրներ: Peeters (50, 368) կ'ենթադրէ թէ Զորտուանէլս Ապուհարպ Ա.ի դստեր եւ Վարազվաչէ Ա.ի որդին ըլլայ, ուստի Ապուհարպի դուստրը ա-

---

[21] Anal. Boll., 36—37, էջ 18:

մուսնացած ըլլայ Վարագվանքի հետ․ որ անհնարին է մերձամուսնութեան արգելքով։

ՅՈՎՀ․ ԹՈՌՆԻԿ Բ․ ՈՐԴԻ ՋՈՐՏՈՒԱՆԷԼԻ

Թոռնիկ կը գտնուէր զինուորական ծառայութեան մէջ․ 976ին հրաժարելով աշխարհէ առանձնացած է Թորթումի վանքերէն մին, հաւանօրէն Օշքի վանքին մէջ, ուր օրինակել տուած է 977ին Բուրաստան կոչուած հաւաքածոյքը․ իսկ 981ին իր յանձնարարութեամբ գրուած է Կարնոյ երկրին մէջ Գանձարան կոչուած ձեռագիրը։

Կարնոյ մօտ Գարարդէ դէպի Ղուլճի գիւղ տանող ճանապարհի վրայ տեսած է Հ․ Ն․ Սարգիսեան խաչքար մը, որ կը կրէր արձանագրութիւնս[22].

ԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ․ ԵՍ ՅՈՎԱՆԷ ||| ՈՐԴԻ ՋՈՐՏ-ՎԱՆԷԿԻ ԿԱՆԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ ԶԱՅՍ Ի ԺԱՄԱՆԱԿԻՆ ՎԱՍԻԼ[23] ԵԻ ԿՈՍՏԱՆԴԻՆ ||||||

Այս ինքն «Յանուն Աստուծոյ․ ես Յովհաննէ<ս–Թոռնիկ> որդի Զորտվանեկի (Զորտվանելի) կանգնեցի զխաչս զայս ի ժամանակին Վասիլ եւ Կոստանդին <Թագաւորացն>»․ ուստի 976—981 տարիներուն, երբ Յովհ․ Թոռնիկ տակաւին Կարնոյ կողմերը կը գտնուէր, արդէն վանական սքեմի տակ։

977ին, երբ ապստամբեցաւ Վարդ Սկլերոս կայսեր դէմ, Թէոփանոյ թագուհւոյն թա-

---

[22] Տեղագրութիւնք, էջ 79։

[23] Սարգիսեան կարդացած է Վասիլէ Կոստանդին․ ըստ իմաստին այսպէս ուղղելու է։

խանձանքին վրայ կը ստիպուի Յովհաննէս Թոռնիկ թողուլ իր միանձնարանն եւ անցած 10.000 հեծելազորի գլուխը քալել ապստամբին դէմ. կը խորտակէ Վարդի բանակը եւ զանիկա հալածական կը վարէ մինչեւ Նփըրկերտ։ Այս առթիւ կը գրէ Ասողիկ (էջ 192—193). «Վասիլ թագաւորն Յունաց զԹոռնիկ զօրավարն, որ էր յազգէն Վրաց, արեղայ ի Սուրբ Լերինն՝ հանեալ առաքէ առ Կիւրապաղատն Տայոց Դաւիթ...։ Եւ Կիւրապաղատին Դաւթի գումարեալ զզօրսն Վրաց եւ դիշխանաց իշխանն զՋոջիկ տայ զկնի Թոռնկայ՝ պատերազմել ընդ Վարդայ բռնակալին» եւն։ Այս յաղթութեան արձագանգը պահած է Զարզմայի եկեղեցին[24]։ Այս արշաւանքի մասին էին նաեւ 981ի յիշատակարանին խօսքերը։

Յովհ. Թոռնիկ ժամանակ մը Կարնոյ կողմերը մնալէ ետքը անցաւ Աթոս, ուր Յովհ. Հագիորիտ բացած էր Վրաց վանքը։ Թէ ե՞րբ տեղափոխուեցաւ Յովհ. Թոռնիկ Աթոս, դժուար է ըսել ճշդիւ։ Ս. Եւթիմիոսի վար-

[24] Զարզմայի եկեղեցւոյ վրացերէն արձանագրութեան մէջ Իվանէ որդի Սուլայի կը յայտնէ. «Ես շինեցի զեկեղեցիս ի ժամանակին, յորժամ Սկլերոս ապստամբեաց ի Յոյնս. Դաւիթ Կիւրապաղատ — Տէր պահեսցէ զնա — եբեր թիկունս օգնականութեան սուրբ թագաւորացն եւ առաքեաց զմեզ զամենեսեան ի բանակն։ Մեք յաղթեցաք Սկլերոսի։ Եւ ես յերկրին որ անուանեալ կոչի Խարսանան, ի տեղւոջն որում անուն է Սարվեննիս, շինեցի զթախտս...»։ M. Brosset, Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l’Arménie. 2me livraison. St. Pétersbourg 1850, էջ 133—134։ Հմմտ. եւ Anal. Boll. 50, էջ 363—364։

քին մէջ կ՚ըսուի պարզապէս. «ընդ այն ժամանակս — այս ինքն Դաւիթ Կիւրապաղատի մահէն († 1000) յառաջ — մեծն Թոռնիկ եղեւ յիւրում աշխարհին միանձնաւոր»[25]: Հոն կը լսէ թէ Յովհ. Ապուլհերիթ Ողիմպոս կը գըտնուի, կ՚երթայ անոր քով. բայց զանիկա հոն չգտնելով կ՚անցնի Աթոս. ուր կ՚ընդունի անոր ձեռքէն «զհանդերձ վանական»:

Այստեղ տրամադրեց Յովհ. Ապուլհերիթին այն բոլոր ստացուածները, զորոնք Թոռնիկ ստացած էր Թէոփանէ թագուհիէն իբրեւ վարձատրութիւն իր Վարդ Սկլերոսի վրայ տարած յաղթութեան: Այս գումարով կառուցուեցաւ Աթոսի Իվիրոն, այսինքն Վրաց վանքը, որ տեղւոյն վանական հաստատութիւններու մէջ ամէնէն ականաւորն եղաւ: Թէպէտ ինքն էր վանքին հիմնադիրն եւ պայծառացուցիչը, բայց այս պատիւը շնորհեց իր փեսային Յովհ. Ապուլհերիթին:

Յովհաննէս Թոռնիկ այս թուականէն ետքը կարճ ժամանակ մը միայն ապրեցաւ. վախճանեցաւ 984ին: Մեռնելէն յառաջ Իվիրոնի նուիրած էր իր յանձնարարութեամբ գրուած այն կրկին ձեռագիրները, զորոնք յիշեցինք վերը:

Ինչպէս խաչքարի արձանագրութիւնը կը վկայէ, Թոռնիկ հայ էր, գիտէր իր մայրենի լեզուն. բայց ծէսով պատկանելով Վրաց եկեղեցւոյն՝ ընտելացած էր նաեւ վրացերէնի.

---

25 Anal. Boll. 36/37, էջ 18:

այս պարագան ասիթ տուած է Ստ. Ասողկան նկատելու զինքը «յազգէն Վրաց»:

### ԲԱԳԱՐԱՏ Բ. ՈՐԴԻ ԹՈՌՆԿԱՅ Բ.

Թոռնիկեան Բագարատ մագիստրոս, զոր կը յիշէր 977ի յիշատակարանը, ծանօթ է Հայոց պատմութեան. կը պատմէ Ասողիկ (էջ 269), թէ 998ին, տարիէն վերջը, երբ Դաւիթ Կիւրապաղատի զօրքը պաշարած էր Խլաթը, բանակին մէջ յանկարծ խռովութիւն մը ծագեցաւ. Տայեցիք վայրագ փախուստի դիմեցին. «յայնմ փախստի մեռաւ մաժիստրոսն Բագարատ, որդի Թոռնկայ արեգայի»:

### ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԱԶՎԱՉԷ Ա. ՈՐԴԻ ԶՈՐՏՈՒԱՆԷԼԻ

Սա էր Զորտուանելի որդին եւ եղբայրն Յովհաննէս Թոռնիկի: 977ի եւ 981ի յիշատակարաններու մէջ կ'ըսուի թէ ինքն ալ անձնատուր եղած էր վանական կեանքի, անշուշտ յԱթոս. յետոյ երբ բացուեցաւ Աթոսի Վրաց վանքը, ինքն ալ միաբանեցաւ այն վանքին:

Ունինք իրմէ խաչքար մը[26] Անիի Ս. Աստուածածին մատուռի մէջ, որ յետոյ վերա-

---

[26] Նմանահանութիւնը տուած է Ch. Texier, Description de l'Arménie, la Persie et la Mésopotamie, I. Paris 1842, pl. 21. Անկէ արտատպուած է Հ. Ղ. Ալիշան, Շիրակ, էջ 80: Հ. Ղ. Ալիշան մասամբ միայն լուծած է արձանագրութեանս ընթերցուածը. «Յանուն Աստուծոյ. ես Յովանէսս... վանէ որդի Զորտվանիկի կանգնեցի զխաչս զայս» (անդ, 79). իսկ Կ. Բասմաճեան, Les inscriptions arméniennes d'Ani, de Bagnaïr et de Marmachên, Paris 1931, էջ 118, կը կարդայ. «Յանուն Աստուծոյ ես Յովան Կվարլինվանէ որդի Զորտվանիկի կանգնեցի զխաչս զա(յ)ս»:

*նորոգուելով կոչուեցաւ Ս. Գրիգորի եկեղեցի: Խաչքարին արձանագրութիւնն է, առանց թուականի.*

ՅԱՆՈՒՆ Ա̅Յ
ԵՍ ՅՈՎԱՆԷ ՎԱ
ՐԱԶՎԱՉԷ ՈՐԴ
Ի ԶՈՐՏՎԱՆԻ
ԿԻ ԿԱՆԴԵՑԻ
ԶԽԱՉՍ ԶԱՍ

*Կը կարդամ՝* Յանուն Աստուծոյ ես Յովհաննէս Վարազվաչէ որդի Զորտվանիկի կանգնեցի զխաչս զայս: *Զորտվանէլ թէ Կարնոյ եւ թէ այս խաչքարերու վրայ միաձեւ գրուած է Զորտվանիկ (Զորտվանեկ):*

*Վարազվաչէի որդիներէն կը յիշուին՝* Զորտուանէլ Գ., Միքայէլ *եւ* Թոռնիկ Գ.:

ԶՈՐՏՈՒԱՆԷԼ Գ. ՈՐԴԻ ՎԱՐԱԶՎԱՉԷԻ

*Զորտուանէլ Վարազվաչէեան* 977*ի յիշատակարանին մէջ «զօրավար (վր. «զօրավարի») եւ չորոլոգի» կ'անուանուի, իսկ* 981*ի յիշատակարանին մէջ «էխուսովիտի»: Վերջին տիտղոսս* Blake[27] *յունական ἐξκουβίτοι բառին աղաւաղած մէկ ձեւը կ'ենթադրէ, այսինքն մօտաւորապէս* comes *կամ* domesticus excubitorum, *որով կ'իմացուէր պահակներու պահակապետն: Իսկ «չորոլոգի» յորջորջանքը ըլլայ թերեւս «չորրորդապետ» բառին եղծուած մէկ կերպարանքը, որ համազօր ըլլալու է* էխուսովիտի*ի:*

---

[27] Anal. Boll. 50, *էջ* 367:

Սա է հաւանօրէն «Զորտուանէլ մաժիստրոսն, եղբօրորդի Թոռնկայ աբեղայի (ուստի եւ որդի Վարազվաչէի), որ բռնացեալ էր ի կողմանս Դերջանայ եւ Տարօնոյ», այսինքն «դեռ եւս մնացեալ էր յապստամբացն որ ընդ փոկասուն Վարդայ», որոնք 976—978 ապստամբած էին Վարդ Սկլերոսի հետ Վասիլ Բ. կայսեր դէմ: Այժմ կայսրը կ'ուղարկէ Զորտուանէլի դէմ «գժանն պատրիկ, որ եւ Պուտիզ կոչիւր», որ «սպան զնա ի դաշտին Բագառճոյ ի Դերջան գաւառի ի ՆԼԹ (990) թուականին» (Ասողիկ, 251): Peeters (369) կ'առաջարկէ ջնջել «որդի»ն եւ իմանալ Թոռնիկի համանուն եղբայր մը:

Նկատելով թէ Զորտուանէլի իշխանութիւնը կը տարածուէր Տարօնէն մինչեւ Դերջան, հաւանական կը թուի ինձ նոյնացնել զինքը այն Զորտուանէլի հետ, որ 970/2ին նիզակակից եղած է Վասակ պահլաւունւոյ ընդդէմ «Թագաւորին Դելումաց», որ կը քալէր դէպի Նիգ գաւառն Հայոց «մերձ յամուրն Բջնի». «ընդ նմին»՝ Վասակայ էր, կը գրէ Մ. Ուռհայեցի, «եւ Գորգ <որ> եւ Զորտուանէլ»[28]:

Զորտուանէլի այս նիզակակցութիւնը Վասակ պահլաւունւոյ հետ կը թելադրէ խորհիլ, թէ արդեօք այս շրջանէն չէ՞ ընձիւղած Պահլաւունեաց եւ Թոռնիկեանց միջեւ այն

28 Մ. Ուռհ., էջ 12: Խջմ. Տպագիրն ունի «Դորդ եւ Զորտուանէլ». Երուսաղէմի օրինակին մէջ կը պակսի Խը:

խնամական կապը, որուն մասին կ՚ակնարկէ 1072ին Փիլարտոս ուղղելով իր խօսքը Գրիգոր վկայասէր կաթողիկոսին, թէ «քո փեսայ է Թոռնիկն, զնա եւ կոչեա զնա ինձ ի հնազանդութիւն» (Ուռհ·, 207)։ Թէպէտ մէջտեղ 80 տարուան միջոց մը կայ, բայց Սասնոյ Թոռնիկեանց մէջ Զորտուանէլ եւ Թոռնիկ անուանց յաճախակի երեւումը ենթադրել կու տայ թէ կայ Տարօնոյ բնակային՝ Զորտուանէլի եւ Սասնոյ տիրոջ Թոռնիկի մէջ արենակցական կապ մը։ Թոռնիկի հայրն է Մուշեղ, իսկ սա հաւանօրէն Զորտուանէլի որդին էր, որ կ՚երեւայ թէ հօրը սպանութենէն ետքը ի Սասուն ապաստանարան գտաւ եւ տիրացաւ երկրին։ Բայց տե՛ս եւ վարը էջ 81—82։

ՎԱՐԱԶՎԱՉԷ Բ.

Զորտուանէլի որդին ըլլայ թերեւս Վարազվաչէ Եղեսիոյ իշխանը 1038ին, «որ էր ի հօրէ հայ եւ ի մօրէ վրացի», ինչպէս կը գրէ Չամչեան (Բ· 918), յայտնի չէ ի՞նչ աղբիւրէ առած։ Ասոր մասին կը պատմէ Սկիւլիցէս[29], թէ մեղսակից եղած է Կոստանդին Դիողենէսի, Թրակիոյ դուքսին, որ Վասիլ կայսեր դէմ գլուխ բարձրացնել կը խորհէր։ Դաւադրութիւնը կը յայտնուի· մեղսակիցներու հետ կը բռնուի եւ կ՚աքսորուի նաեւ Վարազվաչէ· իր մասին այսպէս կը գրէ պատմագիրը· Γεώργιός τε καὶ Βαρασβατζέ, ὁ ἐν ὄρει τῷ Ἄθῳ τὴν τῶν Ἰβήρων μονὴν συστησάμενος, οἱ τοῦ

[29] Hist. comped. II, 487—488·

*πατρίκου Θεοδάτου ἀνεψιοί*, *այս ինքն «Գէորգ եւ Վարազվաչէ, որ Աթոս լեռան վրայ Վրաց վանքը հիմնարկեց, Թէոդատոս պատրիկի ազգականները»:* Peeters[30] *այս տեղիքը կ'առաջարկէ կարդալ՝* *Γεώργιός τε <ό> καί Βαρασβατζέ*, *ուստի «Գէորգ որ եւ Վարազվաչէ»: Թէպէտ Վարազվաչէ Վրաց վանքին հիմնադիրը չէ, բայց կը պատմուի Ս. Եւթիմիոսի վարքին մէջ, թէ սուրբը վանքին առաջնորդութիւնը յանձնած է իր ազգականներէն մէկուն, որ Գէորգ կը կոչուէր, զոր իր հայրը Ս. Յովհաննէս կանխաւ նշանակած էր իբրեւ ապագայ յաջորդ վանահայրութեան: Այս Գէորգը, որ քաջ վանահայր մըն էր եւ արքունիքի քով ազդեցիկ անձնաւորութիւն մը, ցոյց կու տար իր մէջ մեծ միտութիւն դէպի Յոյները, այս պատճառաւ ալ ծագեցաւ իր եւ վրացի միաբաններու մէջ սաստիկ վէճ: Յետոյ Դիոգենի դաւադրութեան մասնակցած ըլլալուն համար աքսորուեցաւ Մոնոբատներու վանքը: Եթէ նոյն է այս Գէորգը Սկիլիցեսի յիշած Գէորգ-Վարազվաչէի հետ, պէտք է զինքը Վարազվաչէի թոռը նկատել:*

ՄԻՔԱՅԷԼ

Միքայէլ *կրօնաւորած է Աթոսի Վրաց վանքին մէջ. իր ձեռքով գրուած է Թ.* 2 *Յիշատակարանը* 981*ին:*

30 Anal. Boll. 1932, *էջ* 366:

ԹՈՌՆԻԿ Գ.

Թոռնիկ, զոր Թ. 2 Ցիշատակարանը «մծիրայի», այն է փոքրիկ կ'անուանէ, հաւանօրէն պէտք է Լեւոն-Թոռնիկի հետ նոյնացնել: Սա ի Վիրս զօրավար էր. իր բռնակալութեան պատճառաւ ամբաստանուեցաւ կայսեր առաջ, որ զրկեց զինքը իշխանութենէն եւ Ադրիանուպոլիս վանք մը դրաւ, ուր եւ ստացաւ Լեւոն անունը: Զայրացած իրեն դէմ գործուած այս անարդարութեան համար, գրգռեց մերձակայ դուքսերը կայսեր դէմ: Անոնք ապստամբեցան Կոստանդին Թ. Մոնոմախի դէմ (1047). եւ զԼեւոն-Թոռնիկ կայսր հռչակելով քալեցին մայրաքաղաքին վրայ: Երբ անկարելի եղաւ պաշտպանել քաղաքը՝ քաղաքացիները նենգով բացին դռները իր առաջ, խոստանալով թէ Կոստանդնի մահէն ետքը իրեն պիտի յանձնեն թագը: Լեւոն-Թոռնիկ կը կալանաւորուի եւ կը կորսնցնէ կայսեր հրամանաւ երկու աչքերուն լոյսը[31]:

Կեդրենոս անոր «ազգակից» (συγγονοῦς) կ'անուանէ զΒατάτζης (կարդա՞լ Βα<ρασβα>τζης), որ նոյն շրջանին միջամուխ եղած է նոյնպէս քաղաքական անցուդարձերու մէջ:

---

[31] Կեդրեն. Բ. 563յն: Մատթ. Ուռհ. 100—101 կը գրէ ի մէջ այլոց, յամի 1046. «Ցայսմ Թուականութեանս Հայոց պատրիկ ոմն Թոռնիկ ապստամբեաց ի վերայ Մոնոմախին, որ է ի քաղաքէն Անդռնապօլսէ, այր քաջ եւ հզօր եւ պատերազմող»: Հմմտ. Robert Schütte, Der Aufstand des Leon Tornikes im Jahre 1047. Plauen 1896. Հ. Կ. Տէր-Սահակեան, Բազմավէպ, 1908, էջ 390—391:

## ԲԱԳԱՐԱՏ Ա., ԱՇՈՒՇԱՅ Բ., ԱՊՈՒՀԱՐՊ Բ. ՈՐԴԻՔ Ա. ՋՈՐՏՈՒԱՆԷԼԻ

Ասոնց մասին պատմութիւնը յիշատակութիւն չէ պահած ։ Ասոնցմէ մէկուն կամ միւսին որդիներն են յաջորդները ։

## ՋՈՐՏՈՒԱՆԷԼ Դ. ԵՒ ԲԱԳԱՐԱՏ Գ. ԵՂԲՕՐՈՐԴԻՔ ԹՈՌՆԿԱՅ Բ.

Թ. 1 եւ 2 Յիշատակարաններու մէջ բացի Վարազվաչէի որդիներէն կը յիշուին նաեւ «Եղբօրորդիներ» Բագարատ պատրիկ եւ Զորտուանէլ, առանց անոնց հայրանունները յիշատակելու ։ Ասոնք կարող են ըլլալ միայն Բագարատ Ա.ի, Աշուշայ Բ.ի եւ Ապուհարպ Բ.ի որդիները, Ա. Զորտուանէլի թոռները ։

Բագարատ պատրիկի մասին պատմութեան մէջ կը պակսի որ եւ է յիշատակութիւն ։

Զորտուանէլի մասին պէտք է իմանալ Ասողկան հետեւեալ տեղիքը (էջ 265), ուր կը կ'ըսուի թէ Դալասանոս մագիստրոս 988ին Անտիոքի առջեւ Եգիպտացւոց ամիրայի Ազազի որդւոյն դէմ կռուի կ'ելլէ եւ կը մղէ յետս ։ Երբ Յոյները թշնամւոյն թողուցած աւարով կը զբաղէին, թշնամին յանկարծ ետ կը դառնայ եւ կը կոտորէ զանոնք. «զյոլովս ի նոցանէ ձերբակալ արարեալ տանէին, ընդ այլսն եւ զԶորտուանէլ պատրիկն՝ եղբօրորդին Թոռնկայ աբեղայի» ։

Թոռնկայ եւ Վարազվաչէի քեռորդին (°) է Դաւիթ, որ ինք զինքը 917ի յիշատակարա-

## ԹՈՌՆԻԿԵԱՆՑ ՏՈՀՄԱԾԱՌԸ

- Թոռնիկ Ա.
  - Աշուշայ Ա.
  - Ջորտուանէլ Ա. + Մարիամ
    - Յովհ. Վարազվաչէ
      - Միքայէլ
      - Ջորտուանէլ Գ. (†990)
        - Վարազվաչէ Բ. (1038)
      - Թոռնիկ Գ. (†1047)
      - դուստր (°)
        - Դաւիթ դրիչ (977)
    - Բագարատ Ա.
    - Յովհ. Թոռնիկ Ա. (†984)
      - Բագարատ Բ. Մագիստրոս (†977)
    - Ապուհարպ Բ.
    - ○
      - Բագարատ Գ. Պատրիկ
      - Ջորտուանէլ Դ. Պատրիկ (†988)
    - Աշուշայ Բ.
  - Ապուհարպ Ա.
    - ○
      - Ջորտուանէլ Բ. (1000)
    - դուստր + Յովհ. Ապուլհերիթ
      - Ս. Եւթիմիոս

*նին մէջ կ'անուանէ «որդի քեռ հօրն Միքայէլի»: Թերեւս իմացուի նաեւ Միքայէլի քեռորդին, ուստի Վարազվաչէի Թոռնիկը:*

ԶՈՐՏՈՒԱՆԷԼ Ե.

*Մատթ. Ուռհ. յամին* 1049/50 *կը դրէ (էջ* 107). *«Յորժամ հասանէր զօրքն Յունաց ի յարեւելք՝ Կամենն եւ Աւօնն եւ Գրիգոր Վասակայ որդին՝ կոչեցին զհետ իւրեանց զԼիպարիտն զՎրաց իշխանն. եւ հասեալ նոցա ի բերդն որ կոչի Կապուտռու» կ'ամբանան. «յայնժամ եկին զօրքն այլազգեացն ի վերայ Լիպարտին՝ առն քաջին. եւ նորա հանեալ զպահապանս ի գիշերի՝ զքուերորդին իւր զԶորտուանէլն՝ զայրն հզօր եւ պատերազմող»: Օրը չարաթ ըլլալուն Լիպարիտ չ'ուզեր բերդէն դուրս գալ. «յայնժամ Զորտուանէլն որպէս առիւծ ի գիշերին բախէր զճակատ այլազգեացն. եւ մինչդեռ վարէր զնոսա, զիպեալ եղեւ նետ մի ի բերան նորա եւ ընդ ծոծրակն ելանէր եւ այնպէս մեռանէր Զորտուանէլն, այրն քաջ եւ հզօր»:*

*Այս հատուածին մէջ չէ յիշուած Զորտուանելի հայրանունը. որով չենք կրնար Թոռնիկեանց ծառին մէջ իր տեղը գտնել: Բայց հետաքրքրական է, որ անոր մայրը Լիպարիտի քոյրն էր:*

ԹՈՌՆԻԿ Դ.

*Յովհ. Սկիւլիցէս* (Kedrenos 2, 695) *կը յիշէ Թոռնիկ ὁ Κοτέρτζης զօրավար մը, որ*

1071ին կը կռուէր Խլաթի առաջ, յոյն Բանակին մէջ:

Բիւզանդական գրականութեան մէջ կը յիշուին դեռ ուրիշ Թոռնիկներ ալ, որոնք գործած են կ Պոլիս. ԺԲ դարուն. Յիշենք հոս՝

Գէորգ Թոռնիկ, կոչուած μαΐστωρ τῶν ῥητόρων. գրած է Ներբողեան մը Իսահակ Անգեղոս կայսեր վրայ. եւ ուրիշ մըն ալ Գէորգ պատրիարքի (1192—1199) վրայ [32]:

Դեմետրիոս Թոռնիկ եպիսկոպոս Կաստորիայի, որ յայտնի է իւր Լատինացւոց դէմ գրած հակաճառութիւններով [33]:

Եւթիմիոս Թոռնիկ, որ խօսած է դամբանական մը Աթէնքի Նիկողայոս մետրապոլտի († 1175) վրայ [34]:

Անդրոնիկոս Թոռնիկ Կոմնենոս, ԺԳ. դա՞ր, որուն տապանագիրը կը յիշուի [35]:

Դեմետրիոս Թոռնիկ (ὁ Τορνίκης Δημήτριος) Կոմնենոս, որ Յովհ. Դ. Լասկարիսի (1258—1259) օրով պետական վարչութեան մէջ բարձր դիրք մը գրաւած էր: Իր դուստրը կին կ'առնէ Թէոդորոս Պետրալիփոս [36]

Կոստանդին Թոռնիկ, որ 1260ին անուանուեցաւ սեբաստոկրատոր [37]:

---

32 Krumbacher, Geschichte der byzantinischen Literatur, 1897, էջ 472—473:

33 Անդ, էջ 91, 442, 425. Բազմավէպ, 1908, էջ 391–392:

34 Հմմտ. Byz. Zeitschrift 11 (1902), 684:

35 Հմմտ. Byz. Zeitschrift 5 (1896), 552:

36 Georgius Acropolites, 71, 97, 100—101. տպ. Բոննի:

37 Georg. Acrop., 120, 165, 184—185, 188—189.

Թէոդորոս Թոռնիկ «մեծիմաստ ծերունին», որուն համար կ'ըսուի թէ 1261ին, մահուան անկողնոյն մէջ ողբացած է Կ. Պոլսոյ մօտալուտ անկումը[38]:

Միքայէլ Թոռնիկ գունդստաբլ, 1320ին[39]:

Դեմետրիոս Թոռնիկ (Δημήτριος Τορνίκιος ὁ Πιγκέρνης) 1358ին ինքն եւ իր կինը Ἄννα ἡ Τορνικίνα ἡ πιγκέρνισσα իրենց կալուածները Մակեդոնիոյ Զաւանտոխի մերձակայ Վէլիցխթա գիւղին մէջ կը նուիրեն Աթոսի Պանտոկրատոր վանքին: Կը յիշուին իրենց զաւակներէն՝ Յովհ. Կանտակուզենոս, Անդրոնիկոս եւ դուստրք՝ Մարիամ եւ Իրենէ[40]:

6. Ինչպէս ցոյց կու տայ պատմութիւնը, Թոռնիկեանց այս ճիւղը երեւելի հանդիսացաւ աւելի իր ծառայութիւններով բիւզանդական բանակին մէջ: Մինչ աւելի բարձր դիրքի ձգտելով՝ հեռացան բնիկ ժառանգութենէն, գաղթեցին դէպի կայսերանիստ մայրաքաղաք, հոն կամայ ակամայ միջամուխ եղան քաղաքային եւ քաղաքական դաւադրութեանց մէջ, նոյն իսկ ի խնդիր կայսերական թագին, եւ կրեցին մինչ պարտութիւն: Թոռնիկ Բ.

---

Գէորգ Պախիմերոս, 485· Նիկեփոր Գրիգորաս, 72. 79· Նիկիտաս Խոնիադէս, 848:

[38] Lebeau, Histoire du Bas-Empire, t. XXII, p. 174:

[39] Անդ, t. XXIV, p. 124:

[40] Louis Petit, Actes de l'Athos, II, էջ 4—7. Հրատ. իբրեւ յաւելուած Византійскій Временникъ, 10 (1903) թերթին:

«Մեծ», ինչպէս կը կոչէն զինքը ժամանակակիցները, եղաւ միակ պարծանքը տոհմին:

Թերեւս մասամբ մայր երկրի անապահովութեան եւ մասամբ օտարասիրութեան պատճառաւ նաեւ վանական անդորրութեան հետամուտները փնտռեցին հեռուները իրենց ձգնավայր: Ս. Լեռան վրայ բացուած Վրաց վանքը, թէպէտ օժանդակեց վրական գրականութեան պայծառութեան, բայց եղաւ այլտարեր հայրենի մենաստաններուն համար, որոնք եղան մարդաթափուր: Աթոսի մէջ՝ շրջապատուած յոյն մենաստաններէ, ենթարկուեցան վանականք յոյն ազդեցութեան. ուշագրաւ են Վարազվաչէ Բ.ի յունամէտ ձըգտումները: Նոյն հոսանքին կուլ եկան նաեւ այն Թոռնիկեանք, որոնք ուզեցին իբրեւ հռետոր կամ մատենագիր փայլիլ:

Թոռնիկեանք hայ էին ծագումով. բայց դաւանեցան իրենք զիրենք նախ վրացի եւ ապա յոյն. եւ իբրեւ այսպիսի ձուլուեցան յոյն տարրին հետ եւ անհետ եղան պատմութենէ:

---

## ԹՈՌՆԻԿԵԱՆՔ Ի ՍԱՍՈՒՆ

1. Կոստանդին Ծիրանածին կայսր[1] խօսելով Տարօնի վրայ, կը գրէ թէ Գրիգորիկ, Տարօնի տէրը, կ'ենթարկէ ինքզինքը Լեւոն Զ. կայսեր (886—911): Ի սկզբան երկերես դեր կը խաղար. մէկ կողմէն կ'երեւցնէր ինքզինքը

[1] De administr. imp. 43, էջ 182—189:

Յունաց բարեկամ, միւս կողմէն կը գործէր կայսեր հպատակ թեմերու դէմ՝ առաջնորդ ծառայելով ասորական զօրքերուն: Քիչ յառաջ ձերբակալած էր անիկա պատերազմի ժամանակ Արքայիկի որդիները, որոնք Աշոտ պրոտոսպաթարի հօր՝ Գրիգորիկի եղբօրորդիներն էին: Սմբատ, որ նոյն տանն Իշխանաց իշխանն էր, անոնց ազատութեան համար դիմած էր կայսեր, որպէս զի միջնորդէ Գրիգորիկի քով: Կայսրը շատ անգամ հրաւիրած էր զինքը, որ Կ. Պոլիս գայ. ի վերջոյ զիջանելով Կոստանդինի, Լեւոնի որդւոյն խնդրանքին գացած է մայրաքաղաք, ուր կը ստանայ իրեն մագիստրոս տիտղոսն եւ կ՚անուանուի Տարօնի զօրավար (στρατεγός): Ասկէ ետքը երկրորդ անգամ մ՚ալ կ՚այցելէ Գրիգորիկ Կ. Պոլիս:

Գրիգորիկի որդին էր Բագարատ. իսկ Աշոտ անոր խորթ որդին կը նկատուէր: Հօրը մեռնելէն ետքը Բագարատ Կ. Պոլիս կու գայ, եւ կ՚ընդունի պատրիկ եւ զօրավար Տարօնի տիտղոսները. եւ Թէոփիլակտոս մագիստրոսի քրոջ հետ կ՚ամուսնանայ:

Կ. Պոլիս կու գայ նաեւ Աշոտ՝ ընկերակցութեամբ Լեւոնի որդւոյն Կոստանդինի. կայսրը կը պատուէ զինքը Պրոտոսպաթար տիտղոսով եւ կ՚ուղարկէ Տարօն: Աշոտ երկրորդ անգամ կ՚այցելէ Կ. Պոլիս Ռոմանոս կայսեր օրով եւ կը ստանայ պատրկութիւն:

Երբ Ապուղամրի (Ἀπογάνεμ) որդւոյն՝ Թոռնիկի մահէն ետքը կայսրը Կրենիտէսի

ձեռքով յարքունիս կը դրաւէ Ապուղամրի հողերը, համաձայն Թոռնիկի կտակին, Գրիգորիկի որդիք Բագարատ եւ Աշոտ կ՚առաջարկեն Կայսեր՝ Ապուղամրի հողերն իրենց ձգել եւ փոխարէն ստանալ Ողնուտն (Οὔλνουτην)։ Այս առաջարկին կը հաւանի Կայսր եւ կը տիրանայ Ողնուտին։ Այս պարագային ծանօթ է նաեւ Ասողիկ (183)· «Ի ՆԺԵ (966) թուականին... վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին»։ Այս Աշոտը կը յիշեն նաեւ արաբացի պատմագիրք· «Աշոտ որդի Գրիգորի իշխանաց իշխան եւ տէր Սասնոյ» յորջորջելով[2]։

Աշոտի որդիներէն կը յիշուին Գրիգոր եւ Բագարատ, որոնք 977ին Վարդ Սկլերոսի բանակին մէջ կը ծառայէին. Ասողիկ (191) կը գրէ· «Վարդայ զինեալ ընդդէմ նորա (Վասիլ կայսեր) ի պատերազմ· յորում քաջապէս մարտուցեալ զօրն Հայոց, որպէս որդիք իշխանին Տարօնոյ՝ Գրիգոր եւ Բագարատ եւ Զափրանիկ իշխան Մոկացի, ահարեկ արարեալ զզօրսն Յունաց»։ Եւ դարձեալ· 991ին Վասիլ կայսր «երթեալ պաշարէ զքաղաքն Վէռայ եւ առնու զնա եւ զմաժիստրոսն զԳրիգոր որդի իշխանին Տարօնոյ զօրօքն թողու անդէն ընդդէմ Բուլղարին»։ Բուլղարները սակայն կը փորձեն յանկարծական յարձակմամբ մը յետս մղել Գրիգորի զօրքը· «որոց ընդդէմ եկեալ որդին Գրիգորոյ՝ պատանեակն Աշոտ,

[2] Marquart, Südarmenien. 460 եւ 498։

զոր ձերբակալ առնէին ։ Եւ ապա հօրն զկեանս ի վերայ եղեալ պատերազմաւ, մինչ ի նմին մեռանել ամենայն զօրօքն[3]» ։

Աշոտ, որ գերի ինկած էր Բուլղարացւոց ձեռքը, ազատ կ'արձակուի եւ կը փեսայանայ Բուլղարներու Սամուէլ ցարին ։ Եւ երբ ցարը կը յանձնէ իրեն Դիւռաքիոնի պահպանութիւնը՝ գաղտագողի կը դիմէ փախուստի, իսկ քաղաքը կը մատնէ Կայսեր ։ Իբրեւ վարձատրութիւն՝ զինքը մագիստրոս կ'անուանէ Կայսրը[4] ։

2. Ապուղամր, Գրիգորիկի եղբայրը, որ Արքայիկի որդւոց հետ Կայսեր ներկայացած, պրոտոսպաթար անուանուած եւ միւսանգամ հայրենիք ուղարկուած էր, վերստին Կ. Պոլիս կու գայ, պատրկութեամբ կը պատուի եւ կ'ամուսնանայ Լիբոսի որդւոյն՝ Կոստանդնի աղջկան հետ ։ Երկիր դառնալէն քիչ յետոյ կը վախճանի ։ Իր միակ ժառանգն էր Թոռնիկ. սա իր հօրեղբօր Գրիգորիկի մահէն ետքը Կ. Պոլիս կայսեր կը ներկայանայ եւ պատրկութեան կը բարձրանայ ։ Իր հօրեղբօր որդիներէն՝ Բագարատէն եւ Աշոտէն շատ նեղութիւններ կը կրէ. կը վախճանի կտակելով իր հողերը Կայսեր ։ Իր կինն եւ փոքրիկ զաւակը Կրենիտէս կը փոխադրէ Կ. Պոլիս ։

Այսպէս Կոստանդին Ծիրանածին ։

---

3 Ասողիկ, 260—261 ։ Հմմտ. եւ Կեդրենոս ։ Բ., 447—449 ։

4 Կեդրենոս, Բ., 449—451 ։ Հմմտ. Marquart, անդ, 498—499 ։

3․ Ց․ Մարկուարտ Գրիգորիկն ու Ապուղամրը կը սերեցնէ Բագարատ Բագրատունւոյ Տարօնի տիրոջ (Սողոմոն) որդիէն։ Բայց պատմութենէն յայտնի չէ թէ Սողոմոն Բագրատունի (Թ․ Արծր․ 204) Բագարատի որդին ըլլայ եւ ոչ ալ թէ Գրիգորիկ եւ Ապուղամր Սողոմոնի որդիքն են։

Այն պարագան որ Կրենիտէս Մամիկոնեան տէրն կ՚ըլլայ Գրիգորիկի եւ Ապուղամրի թոռնիկներուն, եւ դարձեալ այն հանգամանքն որ Գրիգորիկի խորթ որդին Աշոտ Սասնոյ տէր կը ներկայանայ, իսկ Գրիգոր Մագիստրոս Սասնոյ տէրը Մամիկոնեան կը ճանչնայ, կրնանք ասկէ հետեւցնել, թէ սոնք՝ Գրիգորիկ եւ Ապուղամր Մամիկոնեան եղած ըլլան եւ Տարօնի մէկ մասին տէրը, յանուանէ ծանօթ է թէ Ողնուտն Գրիգորիկի ձեռքն էր։

Այս նկատումով աւելի հաւանական կը թուի ինձ Գրիգորիկն նոյնացնել Վասակայ որդւոյն Գ ր ի գ ո ր ի հետ, զոր կը յիշէ Թովմաս Արծրունի (221), որուն համար կը գրէ պատմիչը, թէ «սա նմանապէս ողեզուարճ իմաստութեամբ աւլցեալ՝ հոյակապ եւ անուանի ի մէջ Հայկականացս եւ ցանկալի լսողաց եւ ուրախարար տեսողաց․ սա առաւելեաց յամենայն հոգածութիւնս ի գիտաս իմաստութեան ուսումնասիրութեան եւ այլն ամենայնի՝ քան զհարս եւ զհաւս իւր»։ Այլուր (278) խօսելով միւսանգամ իր մասին կը գրէ Թովմաս, թէ «ի սոյն աւուրս (905°) զնոյն օրինակ ապստամբութեան բերեալ եւ Գրի-

գուրի որդւոյ Վասակայ, որոյ Ապուհամզայն անուն ճանաչիւր, որ բունեալ որջացեալ էր յԱրուճան անուանեալ ամրոցի»: Անոր մէկ գաւառը կնութեան տուած էր Գագիկ, այս պատճառաւ ալ Արուճ ամրոցը կը կործանէ միայն, իսկ «զժառանգութիւն իւրեանց գաւառին հաստատէ նոցա... բնակեալ (անդէն) աներկիւղ» (Արծր. 279): Այլուստ ծանօթ է թէ Արուճ Մամիկոնեանց կալուածքն էր (Ղեւոնդ, 15):

4. Ապուզամրի որդւոյն Թոռնիկ յորջորջումը կը հրաւիրէ իր վրայ ուշադրութիւն: Արդեօք իր մէջը պէտք չէ փնտռել կապը Տայոց եւ Սասնոյ Թոռնիկեանց: Դժբախտաբար պատմութիւնը չէ պահած Թոռնիկի անչափահաս որդւոյն անունը, զոր Կրենիտէս Մամիկոնեան տարած էր Կ. Պոլիս. անծանօթ կը մնայ մեզի նաեւ անոր բախտը: Սասուն կը գտնուի այժմ Կայսեր դրօշին տակ:

Ժ. դարու երկրորդ կէսին Սասնոյ տէր կը ներկայանայ՝

ՄՈՒՇԵՂ

Մատթէոս Ուռհայեցի (130) խօսելով Սասնոյ տիրոջ վրայ, կ՚անուանէ զանիկա «Իշխանն Հայոց զօրաւորն եւ քաջ որդին Մուշեղայ Թոռնիկ»: Այս Մուշեղի հայրանունը չէ յիշուած: Ալիշան[5] եւ Մարկուարտ[6] Մուշե-

[5] Հայապատում, § 293:
[6] Südarmenien. 528:

զի հայրը կ՚ենթադրեն Զորտուանէլ Գ․, որ նիզակակիցն եղած է 1021ին Վասակ պահլաւունւոյ (Համա․ վերը՝ էջ 68)։ Ինձի կ՚երեւայ թէ 966ին երբ վախճանեցաւ «Տարօնոյ (եւ Սասնոյ) իշխանն Աշոտ», «որդին Գրիգորի», ինչպէս կ՚անուանեն զինքը արաբ պատմիչները, եւ «Տարօնոյ (անշուշտ միաժամանակ Սասնոյ) Հոռոմք տիրեցին» (Ասողիկ 183), իշխանութեան գլուխ կարգուեցաւ Ապուղամրի Թոռը, Թոռնիկի որդին, որ ըլլայ թերեւս Մուշեղ (կամ անոր յանուանէ անծանօթ հայրը)։

Մուշեղ հաւանօրէն իր հօրը անուամբ — ըստ ընկալեալ սովորութեան — անուանած է իր որդին՝

## ԹՈՌՆԻԿ Ա․

Կը գրէ Մ․ Ուռհայեցի (130—131) թէ 1056ին, գարնան Պարսից զօրքը կ՚արշաւէ «ի գաւառն Տարօնոյ եւ բանակալեալ առ ստորոտ լերամբն Տաւրոսի մերձ ի Սասուն։ Եւ լուեալ զայս իշխանին Հայոց՝ զօրաւորն եւ քաջ որդին Մուշեղայ Թոռնիկ․․․ հասանէր ի վերայ զօրացն այլազգեաց»։ Կը պատմէ Ուռհայեցի դարձեալ թէ 1072ին Փիլառտոս «յղարկեաց եւ կոչեաց զքաջն Թոռնիկ, զտէրն Սասնոյ, գալ նմա ի հնազանդութիւն»։ Թոռնիկ աներկիւղ կը մերժէ այս առաջարկը։ «Յայնժամ կոչեաց Փիլառտոս զտէր Գրիգորիս (կաթողիկոս) եւ ասէ ցնա, եթէ քո փեսայ է Թոռնիկն, գնա՛ եւ կոչեա՛ զնա ինձ ի հնազանդու-

թիւն» ։ Բայց ապարդիւն կը մնայ այս միջնորդութիւնը ։ Ալեւրուա դաշտին վրայ տեղի կ՚ունենայ ճակատամարտ մը ․ Թոռնիկ կը զարնէ Փիլառտոսի բանակն եւ մինչեւ Խարբերդ փախստական կը վարէ ։ Այս յաղթութենէն քիչ յետոյ կը սպանուի Թոռնիկ դաւանակալ զինուորէ մը (Մ․ Ուռհ․, 206—209) ։

Գրիգոր Մագիստրոս († 1058) գրած է առ Թոռնիկ «Մամիկոնեան իշխան» չորս թուղթ (ՀԴ—ՀԷ) ։

## ԶՈՐՏՈՒԱՆԷԼ ԵՒ ՎԱՍԱԿ

Թոռնիկ յետ մահուան թողուց երկու որդի «Զորտուանէլն եւ Վասակ, ի տղայական հասակի» (Մ․ Ուռհ․ 210) ։ Սասնոյ գահին վրայ նստաւ Զորտուանէլ ։ 1101ին կը յիշէ զինքը Պօղոս Տարօնեցի իր առ Թէոփիստէ թղթին մէջ այսպէս․ «Ով պատուական անուն Թէոփիստէ . . . զթուղթս զոր գրեցէք, ընկալեալ ընթերցայ եւ հասու եղէ ամենայն գրելոցս, որ է ի Նամակի աստ, զոր առաքեցիք յառաջնմէ եւ բերաւ առ իշխանն Հայոց Սասանու առ նուլէբսիմոսս (իմա՛ νοβιλισσίμος = nobilissimus) Զարտուանէլս, որդւոյ Թոռնկայ (Զ․ որ յաթոռն կայ)․ եւ ի նոյնժամայն առ մեզ հասուցին զգիրս քո յամսեանն Օգոստոսի է․ եւ ի թուականութեանս Հայոց ՇԾ (1101)․ եւ բերաւ ի վանքս Ղազարու[7]» ։

---

[7] Զեռ․ էջմ․ 840 ։

## ՎԻԳԷՆ

Ակնայ Ս. Գէորգ եկեղեցւոյ «Սասունցի» կոչուած Աւետարանը օրինակուած է 1169ին «ի հայրապետութեանն տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի եւ ի տէրութեան Սասնոյ Վիգենոյ մեծի պատուելէսիմոսի (νοβιλισσίμος) որդւոյ Զորտուանէլի Թոռ(ի)ն Թոռնկայ մեծի հզօրի եւ քաջի, որ ընիկ յԱստուծոյ հաստատուն հիմնակառուցեալ ունի զաթոռ հայրենի տէրութեան իւրոյ», եւ ի Թուականութեանս Հայոց ի ՈԺԸ (1169) հրամանաւ երանելի եւ քրիստոսասէր Թագուհւոյ Մէլէքսէթոյ ամուսնոյ Վիգենայ, որ է յազգէ Արծրունի եւ ի չառաւիղէ սրբոյն Վարդանայ դստեր մեծ իշխանին Մոկաց Համայեկի[8]»:

Վիգէնի օրով Սասունը գրաւելու փորձ կ՚ընէ Շահի-Արմէն: Բայց Վիգէն «կալեալ տանի զնա յամուրս իւր. եւ զկնի աւուրց արձակէ ուխտիւ եւ երդմամբ սիրոյ»: Շահի-Արմէն սակայն հակառակ տուած ուխտին եւ երդման «էառ զԱմուկ ի Խեղենկայ եւ զՍասունք ի Վիգենայ ամենայն վանորէիւք. եւ պահէր ի խոր խաղաղութեան զամս վաթսուն[9]»: Այս կը պատահի 1173/74ին. Միքայէլ Ասորի կը գրէ. «Ի սոյն ամի բերդեր, զոր ունէին Հայք յերկիրն Սասնոց, նեղեալ ի Մուփարկնոյ ամիրայէն՝ տուին ի Շահի Արմէնն,

---

[8] Թորոս Աղբար., Բ., 308—309:
[9] Վարդան, էջ 124:

յամիրայն Խլաթայ, զայն որ ունէին ի հին ժամանակաց[10]»։

ԶՈՐՏՈՒԱՆԷԼ Բ.

Վիդէն կ'ունենայ «ուստերս լուսածաղիկս եւ դստերս գեղեցկատեսիլս... ապա ոմանք ի զաւակաց սոցա յառաջագոյն փոխեցան յաստեացս ի հանդերձեալսն... յորոց մինն Գրիգորիոս ճանաչիւր...»։ Կենդանի որդիներէն կը յիշէ յիշատակագիրը «զերիցերանեան եւ զամենագովելին ասեմ զԶորտուանէլն, զգեղեցիկն, զբարետեսիլն, զզանդրահերն, զխարտիշագեղն, զլայնաթիկունքն, զհաստաբազուկն, զչափահասակն, զքրիստոսասէրն, զապօթասէրն, զքահանայասէրն, զխոնարհամիտն»։

Ծնողքը «փեսայացուցանեն զնա ընդ դուստր Վասլի եղբօր տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի, հզօրի եւ մեծի, որոյ անուն Վանինէ ճանաչի...։ Ծնանին երիս որդիս... որում առաջնոյն ասի Վասիլ· իսկ երկրորդին Շահինշահ· եւ երրորդին՝ Թոռնիկ։

Զորտուանէլ 1165, Մարտ 20ին կը վախճանի եւ կը թաղուի յուխտին որ կոչի Վան-

[10] Միք. Ասորի, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1871, էջ 476· Ասորի բնագրին թարգմանութիւնն է. Les Arméniens occupaient des forteresses dans la montagne de Sassoun depuis de nombreuses générations; en cette année, les Turcs s'en emparèrent; l'émir de *Maipharqaṭ*, en effet, leur fit la guerre; il les pressa, et, réduits à l'extrémité par la famine, ils livrèrent eux-mêmes les places fortes au Šah-Armen, seigneur de Khélat (այն է Սոքման Բ. Նասր էդ-Դին Մուհամմէդ, 1128—1185), էջ 361 ed. Chabot.

դիր, ի դուռն Ս. Կաթուղիկէին, զոր շինեաց իւր երանելի հայրն Վիգէն»:

Կ՚ըսուի թէ «էր ապա դուստր մի իւրեանց կոյս գեղեցիկ յոյժ, ...որոյ անուն յորջորջեալ կոչի Կատա... զնա կամեցեալ ծնողացն իւրոց տալ մեծաշուք պատուով ի թագուհութիւն Շահինշահի որդւոյ Գրիգորի Թոռին Կատակալոսի, որդւոյ Կամենի մեծի ի Դեգաց գաւառ ի մեծ ամրոցն որ կոչի Սաղուկ: Որ իբրեւ երթեալ անդ... ծնեալ մանուկ մի գեղեցկատեսիլ, որոյ անուն է Շահմէլիք...»: Կատա կը վախճանի 1166ին տղաբերքի ժամանակ, երբ աշխարհ կը բերէր երկուորեակներ:

ՎԱՍԻԼ, ՇԱՀՆՇԱՀ, ԹՈՌՆԻԿ Բ.

Կը գրէ Վարդան պատմիչ (133) թէ 1185ին կը մեռնի Շահի-Արմէն. «եւ զի Թոռն Վիգենայ Շահնշահ քեռորդի տեառն Գրիգորի կաթողիկոսի առընթեր կայր մահուան Շահին, առեալ զիւրսն անկանի ի Սասունս. եւ անդ անկաւ ի ձեռս նորա Բէկդամուրն՝ որ էր իշխան ամենայն տան շահին. առնու ի նմանէ զբերդն որ Թառձեան կոչի, եւ ուխտիւ արձակեաց զնա. որ եւ ստեաց ուխտին ի տիրելն իւրում աթոռոյ Շահին. եւ զայն եւս եւ զամենայն Սասունս եհան ի նմանէ. եւ արկ ընդ հարկաւ զեկեղեցիս եւ զուխտս»: Վարդան, 133:

Այս միջոցին Շահանշահ եւ եղբարք անցան Կիլիկիա:

Սասնոյ Թոռնիկեանք թէ ի՞նչ բախտի

հանդիպեցան ի Կիլիկիա, կը բացատրեն հետեւեալ տողեր, որոնք Հ. Ղ. Ալիշանի կը պատկանին (Սիսուան, 441).

«Այնուադոյնք յազատորդիս Հայոց ժամանակին, որք եւ յարքունիս իսկ Լեւոնի կային յայնժամ, էին եղբարք երկու, Հեթում[11] եւ Շահնշահ, որդիք Զորտուանէլի մեծատոհմ իշխանի Սասնոյ, եւ քեռ կաթողիկոսին Հայոց (Գր. Տղայոյ). որ է ասել, մայրենեօք Պահլաւունի, տոհմ մեծահարկի յետ Բագրատունեացն. եւ էին երկոքին եւս «արք բարետեսիլք», ըստ պատմչին. որոց անդրանկանն՝ ետ Լեւոն զանդրանիկն Ռուբենի՝ զԱլիծ, եւ պաշտատական նմա զքաղաքն եւ զգաւառն Սասոյ. իսկ կրտսերոյն՝ Շահնշահի՝ ետ ի կալուած զՄելեւկիայ վիճակն, խոստմամբ որպէս թուի՝ Փիլիպպինեայ, զի զեռաբուսիկ էր սա, եւ մնանէր առ հանւոյ իւրում Ռիթայ (մօր Լեւոնի): Յետ ամաց լոկ վեցից, այն է յամի 1193, ի միում ամսեան ժամանակի՝ յորում վախճանեալ էր կաթողիկոսն Գր. Տղայ (ի 16 մայիսի), մեռան եւ երկոքին սոքա եղբարք, ոչ յայտնի ինչ բռնօրէն մահուամբ. այլ զի զուգաժամանակ եղեւ կատարած երեցուն եւս արենակցացն, եւ զի՝ թուի իմն թէ խէթ ինչ գոյր ընդ նոսա եւ ընդ Լեւոն, զոր ոչ յայտնեաց պատմութիւն, համարեցաւ յոմանց, ըստ համառօտ ժամանակագրի, թէ

---

[11] Հեթում, որ Շահնշահի երէց եղբայրն կ՚ըսուի, պէտք է նոյնացնել Վասիլի հետ. Մարկուարտ (Südarmenien) կը համարի թէ Թոռնիկն ըլլայ:

«Լեւոն եղեւ պատճառ մահուան նոցա»․ յոր կարծիս անկեալ երեւի եւ ինքն գրողն, թէպէտ եւ ըստ արեւելեան սովորեալ ոճոյ յաւելուցու «այլ ճշմարիտն Աստուծոյ է գիտելի»․․․։ Եթէ հարսնացեալ էր Փիլիպպինեայ ի Շահնշահ եւ եթէ ոչ՝ այն չէ յայտ, բայց այս՝ զի երկոքին եւս քորքն այրիացեալք էին, որպէս թուի, մինչ չեւ ի կատարեալ չափ ամուսնութեան հասեալ։

«Երէցն Ալիծ — որ 1193ին հազիւ 12ամեայ էր — յերկրորդում ամին (1194) տուաւ ի կնութիւն Ռեմունդի, անդրանկան եւ ժառանգի Բրնձին Անտիոքայ․․․ եւ ծնաւ զՌուբէն բրինձ․․․։

«Փիլիպպինէ տուաւ ի կնութիւն Թէոդորի Ա․ Լասկարեայ կայսեր» († 1222)․ սակէ ծնաւ զվաղամեռիկն Կոստանդին․ ապա գժտելով կնոջ հետ «դարձոյց զնա ի Հայս» (1212°)։

Թոռնիկեանց մասին անդրադոյն տեղեկութիւններ կը պակսին։

ՏՈՀՄԱԾԱՌ ՍԱՄՆՈՅ ԹՈՌՆԻԿԵԱՆՑ



# ԺԴ.

# ԹԷՈՆԵԱՑ ՅԱՂԱԳՍ ՃԱՐՏԱՍԱՆԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԵԱՆՑ

## ԺԴ.

# ԹԷՈՆԵԱՅ ՅԱՂԱԳՍ ՃԱՐՏԱՍԱՆԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԵԱՆՑ

## ΘΕΩΝΟΥ ΠΕΡΙ ΠΡΟΓΥΜΝΑΣΜΑΤΩΝ

### ԱՌԹԻՒ ՆՈՐԱԳԻՒՏ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

1. Նորագիւտ բնագիրը: *Երբ կ'ուսումնասիրէի Երեւանի Պետական Թանգարանի հայերէն Ձեռագիրները* (1925), *ուշադրութիւնս գրաւած էր Թ.* 870 *թղթեայ ձեռագիրը, գրուած ԺԷ. դարուն: Ձեռագրին բովանդակութիւնն էր ըստ խորագրին* «Տոնականի Յաղագս ճարտասանական կրթութեանց»: *Առաջին տեսութեանս կարծած էի թէ «Պիտոյից Գրքի» հետեւողութեամբ խմբագրուած աշխատութիւն մըն է, Տօնական անուն հայ աշխատասիրողէ մը: Երբ ձեռք առի «Պիտոյից Գիրքն» եւ համեմատեցի հարեւանցիօրէն, համոզուեցայ թէ աշխատութիւնս հակառակ բովանդակութեան ընդհանուր նմանութեան, չունի որ եւ է աղերս Պիտոյից գրքին հետ, այլ անկախ գործ մըն է: Որովհետեւ չէր ներեր ժամանակս երկար յամել գրուածքիս քով, բաւականացած էի առ ժամն համառօտիւ ցուցակագրել բովանդակութիւնը,*

*թողլով ապագային քաղուածքներուս հիման վրայ ուսումնասիրել զայն եւ ճշդել որպիսութիւնը։*

*Վերջերս միայն ունեցայ պատեհութիւնն անդրադառնալու գրուածքիս։ Համեմատութիւն մը Թէոնի Նախակրթութեանց հետ երեւան բերաւ թէ գրուածքս գլուխ առ գլուխ կը հետեւի յոյն բնագրին, եւ այն՝ նախնական խմբագրութեան. ուստի եւ Երեւանի Թ. 870ի մէջ պահուած է մեզի Թէոնի Նախակրթութեանց հայերէն թարգմանութիւնը։*

*Որովհետեւ չունիմ այժմ առ ձեռն Երեւանի Թ. 870 ձեռագիրն կամ անոր արտագրութիւնը, պիտի հիմնեմ ուսումնասիրութիւնս այն քաղուածքներուս վրայ, զորոնք կատարած էի 1925ին Երեւան։*

2. Թէոնի մասին *հիներէն միայն Սուիդաս հաղորդած է տեղեկութիւններ։ Իւր Բառարանին մէջ կը գրէ Սուիդաս.*

*Θέων Ἀλεξανδρεύς, φιλόσοφος στωικός, γεγονὼς ἐπὶ Αὐγούστου μετὰ Ἄρειον, ἔγραψε τῆς Ἀπολλοδώρου Φυσιολογικῆς εἰσαγωγῆς ὑπόμνημα, Περὶ τεχνῶν ῥητορικῶν βιβλία γʹ = Թէոն Աղեքսանդրացի ստոյիկեան փիլիսոփայ, որ եկաց առ Աւգոստեաւ յետ Արեայ. գրեաց Մեկնութիւն ի Բնախօսական Ներածութիւնն Ապողղոդորայ եւ յաղագս ճարտասանական արուեստից գիրս Գ։*

Եւ դարձեալ.

Θέων ᾿Αλεξανδρεύς σοφιστής, ὃς ἐχρημάτισεν Αἴλιος. ἔγραφε Τέχνην περὶ προγυμνασμάτων, ὑπόμνημα εἰς Ξενοφῶντα, εἰς τὸν Ἰσοκράτην, εἰς Δημοσθένην, Ῥητορικὰς ὑποθέσεις, καὶ Ζητήματα περὶ συντάξεως λόγου, καὶ ἄλλα πλείονα = Թէոն Աղեքսանդրացի սոփեստէս, անուանեալ Եղիոս. գրեաց զԱրուեստ յաղագս նախակրթութեանց, զՄեկնութիւն ի Քսենոփոն, յԻսոկրատ, ի Դեմոսթենէս, ճարտասանական հրահանգս, եւ խնդիրս յաղագս կազմութեան խօսից. եւ զայլս բազումս:

Սուիդասի այս կրկին տեղիքները կ'ենթադրեն երկու Աղեքսանդրացի Թէոններ, մին ստոյիկեան փիլիսոփայ եւ երկրորդը սոփեստէս («ճարտասան») կոչուած Եղիոս: Երկրորդի ժամանակի մասին խօսք չ'ըներ Սուիդաս. բայց առաջնոյն համար կ'ըսէ թէ Աւգոստոսի դարուն (31—14) ապրած է «յետ Արիոսի»: Այս Արիոսն է հաւանօրէն Արիոս Դիդիւմոս, որ Աղեքսանդրեան դպրոցի վարիչն էր, համբաւուած իբրեւ ուսուցիչ Աւգոստոսի եւ բարեկամ Մեկենասի[1]: Սուիդասի շեշտն՝ «յետ Արիոսի» կարծել կու տայ թէ Թէոն «յետ Արիոսի» եղած ըլլայ Աղեքսանդրիոյ դպրոցի վարիչը. նոյն Սուիդաս այլուր (յանունն ᾿Απίων) կը գրէ թէ Ապիոն յաջորդած ըլլայ նոյն ամպիոնի վրայ «Թէոն գրա-

[1] Wilhelm von Christ, Geschichte der Griechischen Literatur, II, 1[6] (München 1920), 343.

մատիկոսի» (διάδοχος Θέωνος τοῦ γραματικοῦ). Ապիոն Արիոսի աշակերտն էր, եւ կը գործէր Տիբերիոս կայսեր օրով[2]: Կրնանք ասկէ հետեւցնել թէ Թէոն Ստոյիկեան փիլիսոփայ նոյն ըլլայ Թէոն գրամատիկոսի հետ: Իսկ Թէոն սոփեստէսի նոյնութիւնը համանուն ստոյիկեանի հետ ենթադրել կու տայ այն պարագան որ Կուինտիլեան իր Institutiones oratoriae գրուածքին մէջ (Գ. 6, 48 եւ Թ. 3, 76) երկիցս կը յիշէ յանուանէ զԹէոն, մէկ անգամ նաեւ Ստոյիկեան յորջորջմամբ եւ կ'օգտուի — ուստի իբր 90ին — անոր Նախակրթութիւններէն[3]: Նախակրթութեանց հեղինակի Ստոյիկեան մ'ըլլալը համոզիչ կերպով ապացուցուած է G. Reichel[4]:

Սուիդաս Թէոնեանց ընծայած բանասիրական եւ քերականական գրուածոց թուին մէջ կը յիշատակէ նաեւ երկու աշխատասիրութիւն, որոնք ճարտասանական բովանդակութեամբ են. ասոնք են. περί τεχνῶν ῥητο-

---

[2] Անդ, 437: U. v. Wilamowitz-Mollendorff, Asianismus und Atticismus. Hermes 53 (1900), 6—7. Կ'առաջարկէ Թէոնի Նախակրթութեանց Զ. գլխոյն (էջ 217 Walz) տեղիքն ἐκ τῶν Ἀρίωνος ἐλέγχων կարդալ Ἀπίωνος: Այս ուղղութիւնը ի նպաստ Թէոնի որ եւ իցէ արժէք չ'ունենար այնու որ ամբողջ այս գլուխը անհարազատ է Թէոնի Նախակրթութեանց, այս պատճառաւ ալ կը պակսի հայերէնի մէջ:

[3] Կուինտիլեան կ'օգտուի Թէոնի Նախակրթութիւններէն. Հմմտ. G. Thiele, Hermagoras, ein Beitrag zur Geschichte der Rhetorik. Straßburg 1893, էջ 5, ծ. 1. G. Reichel, Quaestiones progymnasmaticae. Leipzig 1909, էջ 22: Wilamowitz, անդ:

[4] Անդ, էջ 22—30:

ρικῶν βιβλία γ΄ եւ τέχνη περὶ προγυμνασμάτων. Առաջնոյն որպիսութեան նկատմամբ չունինք որ եւ է տեղեկութիւն. որովհետեւ ինչպէս յիշուած բազմաթիւ գրուածքներն, նաեւ սոկա չէ հասած մեզի: Ունինք սակայն երրորդը, ծանօթ առ հասարակ προγυμνάσματα, «Նախակրթութիւնք» անուամբ: Գաղափարները, զորոնք կը պաշտպանէ հոս Թէոն, աղբիւրները, որոնցմէ կ'օգտուի, եւ արտայայտութեան եղանակը միաբան կը վկայեն թէ գրուածքիս հեղինակը դասական մատենագրութեան վերջին շրջանին կը վերաբերի, ուստի եւ իրաւամբ ունի իր տեղը Աւգոստինեան դարուն: Ըստ E. Nordenի Թէոն պէտք է περὶ ὕψους գրութեան հեղինակին ժամանակակից մ'եղած ըլլայ[5], ուստի Ա. դարու սկիզբը մօտաւորապէս: Wilamowitz անոր ժամանակը ցոյց կու տայ «առաջին դարու կէսին». von Christ «առաջին դարու վերջն կամ Բ. դարու սկիզբը»[6]. աւելի հին հեղինակներ ուզեցին փնտռել իր տեղը անգամ Ե. դարուն, որ ի հարկէ մերժելի էր:

3. Թէոնի Նախակրթութիւնք համանիւթ գրականութեան մէջ կը համարուին հնագոյնն եւ արտայայտութեան ոճի տեսակէտէ գիտնականագոյնը: Առաջին անգամ աշխատութեանս մէջ ձեռնարկեց Թէոն յօրինել «Ճարտասանական կրթութիւններ», դասագիրք մը

---

5 Ed. Norden, Die antike Kunstprosa, 1. Leipzig 1909, էջ 267, ծ. 2:

6 Անդ, II, $2^5$, 746:

ճարտասանութեան հետամուտներու համար, որ կը համարէր անհրաժեշտաբար կարեւոր թէ փիլիսոփաներու եւ թէ պատմագիրներու համար: Գործին գիտնական ձեւը պատճառ եղաւ որ յաջորդ դարերուն մոռացութեան մատնուի: Յատկապէս երբ լոյս տեսան Բ. դարու վերջին քառորդին Հերմոգենէսի «Ճարտասանական արուեստ» եւ Դ. դարու սկիզբը Ափթոնիոսի «Նախակրթութիւնքը». անոնք հող տարած էին հռետորական արուեստի հրահանգներն պարզել եւ օրինակներով դիւրամատչելի ընել հետամուտ ուսանողներու: Այսպէս Թէոնի գեղեցիկ աշխատութիւնը տեղի տուաւ նորերուն: Բայց եւ այնպէս Ե. դարուն կը տեսնուի նոյնը Նիկողայոս Միւռացւոյ ձեռքը. իսկ Զ. դարուն կը թարգմանուի մինչեւ անգամ հայերէնի:

Այժմեան յոյն օրինակներու մէջ Թէոնի Նախակրթութիւնք իրենց սկզբնական ձեւի մէջ չեն հասած մեզի: Լաւ որ Թէոն ինքնին նախահոգ եղած է տալ իր գործին բաժանումները, որոնք կ'ընձեռեն մեզի միջոց, վերականգնելու սկզբնագրին կազմութիւնը գոնէ մերձաւորապէս: Այժմեան ծանօթ օրինակներու մէջ կը պակսին սկզբնագրին վերջին գլուխները, բաց աստի ետեւառաջութիւն կրած են գլուխները, կերպարանափոխուած է անոնց բովանդակութիւնը, ինչ ինչ գլուխներ ալ դուրս ինկած: Այս փոփոխութիւնները կատարուած են մի միայն այն նպատակով, որ Թէոնեան Նախակրթութիւնք

բառ ձեւին համապատասխանեն Հերմոգենէսի կաղապարին: Ինձ կը թուի թէ Նախակրթութեանց այս կերպարանափոխութիւնը տեղի ունեցած է Զ. դարէն ետքը, որովհետեւ նոյն դարու վերջերը, երբ կը թարգմանուէր Թէոն հայերէնի, տակաւին իր անաղարտ ձեւին մէջ էր:

Հայերէն թարգմանութեան գլխակարգութիւնները բառ ամենայնի կը համաձայնին այն բաժանումներուն, զորոնք Թէոն տուած է այլ եւ այլ անգամներ իր Նախակրթութեանց մէջ: Նկատի առնելով այն կազմութիւնը, զոր կը ներկայացնէ հայը, եւ համեմատելով զայն Նախակրթութեանց այժմեան օրինակին հետ, կը տեսնուի նախ թէ դուրս ինկած են ԺԲ.—ԺԵ. գլուխները, այն է ἀνάγνωσις, ἀκρόασις, παράφρασις եւ ἐξεργασία, որոնք առ հասարակ կը պակսին Հերմոգենեան–Ափթոնեան Նախակրթութեանց: Թէոնի անծանօթ են եւ գոյութիւն չունին հայերէն թարգմանութեան մէջ ἀνάσκευη եւ κατάσκευη, որոնք կը կազմեն այժմեան յոյն բնագրին Զ. գլուխը. եւ G. Reichel իրաւամբ իբրեւ անհարազատ խաբանած է զայն: Կը կարծէ Reichel թէ Թէոն խօսած ըլլայ նաեւ ἀντίρρησιςի վրայ. հայ թարգմանութիւնը չ'արդարացներ այս կարծիքը:

Սկզբնագրին եւ այժմեան օրինակին համեմատութիւնն է հետեւեալը (նկատի առնուած է հայ բնագիրը):

| | | |
|---|---|---|
| *Նախերգանք* | = | I. |
| *Ա.* | = | II. |
| *Բ.* | = | V. |
| *Գ. Դ.* | = | III, IV. |
| *Ե.* | = | VII. |
| *Զ.* | = | XI. |
| *Է.* | = | X. |
| *Ը. Թ.* | = | VIII, IX. |
| *Ժ.* | = | XII. |
| *ԺԱ.* | = | XIII. |
| *ԺԲ.—ԺԵ.* | = | — |

*Թէոնի Նախակրթութեանց ընտիր հրատարակութիւն մը հոգաց* Ch. Walz *ի հաւաքման* Rhetores graeci, I (Stuttgart 1832), 145—256. *Ասկէ արտատպեցին ապա* E. Finkh, Stuttgart 1834 *եւ* L. Spengel, Leipzig 1856 (Bibliotheca Teubneriana):

*Կարեւոր քննութիւններէն յիշենք.* O. Ph. Hoppichler, De Theone, Hermogene, Aphthonio progymnasmatum scriptoribus. Diss. Würzburg 1884. G. Reichel, Quaestiones progymnasmaticae. Diss. Leipzig 1909, *էջ* 20—114. *Հմմտ. եւ* W. von Christ, *Անդ*, II, $2^5$. 746—747:

4. Թէոնի Նախակրթութիւնք ըստ հայերէն թարգմանութեան: — *Այս տեղ յառաջ կը բերեմ Երեւանի Թ. 870 ձեռագրէն քաղուածքներս, իւրաքանչիւր հատուածին կից տալով յոյն բնագրին համապատասխան տեղիքները, նաեւ գլխակարգութեան համարները:*

# ԹԷՈՆԻ ՅԱՂԱԳՍ ՃԱՐՏԱՍԱՆԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԵԱՆՑ

## *ΘΕΩΝΟΣ ΠΡΟΓΥΜΝΑΣΜΑΤΑ*

Բանզի վաղք ճարտասանացն եւ յաւէտ
I. *Οἱ μὲν παλαιοὶ τῶν ῥητόρων, καὶ μάλιστα*
բարգաւաճեալքն ոչ արժան համարեցան
*οἱ εὐδοκιμηκότες, οὐκ ᾤοντο δεῖν*
փոյթ առնել ճարտասանութեան, նախ քան
*ἐφικέσθαί τρόπον τινὰ τῆς ῥητορικῆς, πρὶν*
որչափ [ճարտասանութեան նախ քան] կար
*ἀμωσγέπως*
ուրուք ընդ իմաստութիւն հարկանել եւ
*ἅψασθαι φιλοσοφίας, καὶ*
անդուստ առ(լ)նուլ մեծութեամբ...
*τῆς ἐκεῖθεν ἐμπλησθῆναι μεγαλονοίας...*

Ա. Յաղագս մանգանց վարժման, յո-
II. *Περὶ τῆς τῶν νέων ἀγωγῆς, ἐν*
րում յաղագս առ հինսն ի կիր
*ᾧ καὶ περὶ τῆς παρὰ τοῖς παλαιοῖς χρήσεως*
առնելոյ կրթութեանն...
*τῶν προγυμνασμάτων.*

Բ. Յաղագս Պիտոյիցն: Պէտք են համա-
V. *Περὶ χρείας. Χρεία ἐστὶ συντομος*
ռօտ եւ արագ բացերեւութիւն կամ գործ՝
*ἀπόφασις, ἢ πρᾶξις,*
հանդիպողութեամբ վերբերեալ յորոշեալ
*μετ' εὐστοχίας ἀναφερομένη εἴς τι ὡρισμένον*
ինչ դէմս կամ համեմատեալ դիմաց...
*πρόσωπον ἢ ἀναλογοῦν προσώπῳ...*

Գ. Յաղագս Առասպելի.
III. *Περὶ μύθου.*

Դ. Յաղագս Պատմութեան.
IV. *Περὶ διηγήματος.*

Ե. Յաղագս Տեղւոյ.
VII. *Περὶ τόπου.*

Զ. Յաղագս Արտասանութեան.
XI. *Περὶ ἐκφράσεως.*

Է. Յաղագս Դիմառնութեան.
X. *Περὶ προσωποποιΐας.*

Ը. Յաղագս Ներբողենի եւ Պարսաւանացն.
VIII. *Περὶ ἐγκωμίου καὶ ψόγου.*

Թ. Յաղագս Բաղդատութեան.
IX. *Περὶ συγκρίσεως.*

Ժ. Յաղագս Դրութեան.
XII. *Περὶ θέσεως.*

ԺԱ. Յաղագս Օրինաց.
XIII. *Περὶ νόμου.*

ԺԲ. Յաղագս վերծանութեան եւ վերծանմանն.
*Περὶ ἀναγνώσεος καὶ ἀναγνώσματος.*

ԺԳ. Յաղագս Լսելութեան.
*Περὶ ἀκροάσεως.*

ԺԴ. Յաղագս Տարասութեան.
*Περὶ παραφράσεως.*

ԺԵ. Յաղագս Արտագործութեան.
*Περὶ ἐξεργασίας.*

(ԱՓԹՈՆԵԱՑ ՅԱՂԱԳՍ ՃԱՐՏԱՍԱՆԱԿԱՆ ԱՐՀԵՍՏԻ)

*ΑΦΘΟΝΙΟΥ ΠΡΟΓΥΜΝΑΣΜΑΤΑ*

ԺԶ. Յաղագս Պիտոյից: — Պէտք են
c. III. *Περὶ χρείας. — Χρεία ἐστὶν*
բացայիշատակք համառօտ, քաջադիպու-
*ἀπομνημόνευμα σύντομον, εὐστόχως*
թեամբ ի դէմս ինչ վեր[ա]բերեալ...
*ἐπὶ τι πρόσωπον ἀναφέρουσα...*

5. Ափթոնիոսի Նախակրթութիւնք: — *Առանձին ուշադրութեան արժանի է հայերէն թարգմանութեան ԺԶ. գլուխը, որ խորագրուած է «Յաղագս Պիտոյից»: Այս հատուածը Պիտոյից գրքի Ա. գլուխը կը կազմէ, եւ իր կարգին կը համապատասխանէ Ափթոնիոսի Նախակրթութեանց Գ. գլխուն: Թէ ի՞նչպէս կցուած է Թէոնի Նախակրթութեանց, կը կարօտի բացատրութեան: Դժբախտաբար ես ժամանակին փոյթ չեմ տարած այս գլուխը մանրամասն բաղդատելու Պիտոյից գրքին հետ. իսկ այժմ դժուար է ըսել թէ պարզապէս արտագրութի՞ւն մըն է այդ գրքէն, թէ Ափթոնիոսի աշխատութեան թարգմանութենէն գլուխ մը կը ներկայացնէ: Այս հարցին լուծումը պիտի տայ Ձեռագրին համեմատութիւնը Պիտոյից Գրքին հետ:*

*Ուրիշ տեղ առիթ պիտի ունենանք ապացուցանելու թէ Պիտոյից Գրքի Նախակրթութիւնք փոխառութիւն են Ափթոնիոսէն. ուստի եւ նախնիք կից Թէոնի աշխատութեան թարգմանած էին նաեւ Ափթոնիոսի գործը: Թարգ-*

մանութիւնը կարող է կատարուած ըլլալ մի եւ նոյն դարուն, բայց հաւանօրէն տարբեր թարգմանչի մը ձեռօք։

6. Խորագիրը։ — Թէոնի Նախակրթութիւնքը, զոր Սուիդաս կ'անուանէր τέχνη περὶ προγυμνασμάτων, «արուեստ յաղագս Նախակրթութեանց», Պարիսի Ազգային Մատենադարանի Թ. 2918, Թղ. 182, կը խորագրէ Θέωνος σοφιστοῦ προγυμνάσματα (140, Walz)։ Հայ թարգմանութիւնը կը հայացնէ զայն «(Թէոփնեայ ճարտասանի) յաղագս ճարտասանական կրթութեանց»։ Թ. 870ի ընթերցուածն «Տօնականի» առանց տարակուսի աղաւաղումն է «Թէոփնեայ ճարտասանի» ընթերցուածին, որ թարգմանութիւնն է Θέωνος σοφιστοῦ[7] յորջորջանքին։ Անուան «Թէոփնեայ» տառադարձութիւնը կը գտնէ իր արդարացումը Գրիգոր Մագիստրոսի քով, որ իր առ Կարուց թագաւորն Գագիկ որդի Աբասայ գրած թղթին մէջ ունի հետեւեալ տողերը (էջ 96 տպ. Կոստ.). «Զի Թէովնեայն[8] արհեստն հռետորական յորդորեալ շարժել զքեզ մակառեցէ»։ Մագիստրոսի իբրեւ խորագիր գործածած «արհեստն հռետորական» կ'ենթադրէ τέχνη ῥητορική, որ նախասիրուած է նաեւ Պիտոյից գրքի խմբագրչէն (580) իբրեւ «ճարտասանական արհեստ» եւ Ստ. Ասողիկէն (79) «ճարտասանական արուեստ»։ Հայ

[7] Թէոնի թարգմանիչը σοφιστής կը թարգմանէ մերթ «ճարտասան» եւ մերթ «իմաստակ»։

[8] Տպ. Թոփնեան. ՁՁ. զԹէոփնեան (էջ 265)։

*թարգմանչին* περὶ προγυμνασμάτων *«յաղագս ճարտասանական կրթութեանց» թարգմանութիւնը չնորհաւորելի է. «Նախակրթութիւնք» հիներուն անծանօթ է* προγυμνάσματα *իմաստով:*

7. Նախակրթութեանց հայերէն թարգմանութիւնը *կատարուած է այն Յունաբան Դպրոցին մէջ, որ Զ. դարու վերջին քառորդին (572էն ետքը) հիմնարկուած էր հայ փախստականներու համար ի Կ. Պոլիս*[9]*: Թարգմանութեան ժամանակը հաւանօրէն կը զուգադիպի Դիոնեսիոս Թրակացւոյ Քերականական Արուեստի թարգմանութեան հետ, թերեւս ըլլայ նաեւ նոյն թարգմանչի գրչին արտադրութիւնը:*

*Թարգմանութեան արուեստը, բառակերտութեան սկզբունքը, սկզբնագրին հաւատարիմ մնալու ձգտումը երեւան կու գան հոս ալ, առանց օգտելու գծուած ճանապարհէն:*

*Թարգմանութեանս շուրջը անդրադոյն խորհրդածութիւններու մխիլ վաղաժամ է դեռ, քանի մատչելի չէ Նախակրթութեանցս ամբողջական հայերէն բնագիրը: Ապագային կը մնայ պատասխանել նաեւ այն կարգ մը հարցերու, որոնք բնականաբար կը յառնեն ի յուր Նորագիւտ հայերէն թարգմանութեան դասական շրջանի պատկանող յոյն գրուածքի մը, որ կրած է ժամանակի աւերիչ հարուածները:*

---

[9] *Տես իմ Դասական հայերէնը եւ Վիեննական Մխիթարեան Դպրոցը. Վիեննա* 1932. *էջ* 85—119:

Այս տեղ տարաժամ չեմ համարիր սակայն հերքելու A. Baumgartnerի[10] այն հաստատութիւնն թէ Թէոնի Նախակրթութիւնք աղբիւր ծառայած ըլլան Պիտոյից Գրքի հեղինակին։ Օրինակները, զորոնք իբրեւ ապացոյց յառաջ կը բերէ Baumgartner, ինչպէս Թէոփնայի հատուածը, անմիջական կապ չունին Թէոնի Նախակրթութեանց հետ․ կ'ենթադրեն երկրորդ աղբիւր մը, որ նաեւ Նիկողայոս Միւսացւոյ ձեռքը գտնուած է։ Թէոնի աշխատութիւնը կարող էր մատչելի եղած ըլլալ Պիտոյից գրքի հեղինակին հայերէն թարգմանութեամբ, բայց, ինչպէս կ'երեւայ, զգալի ազդեցութիւն մը չէ գործած անոր վրայ։

8․ Թէոնեան հատուածներու խումբ մը յաջողեցաւ ինձ վեր հանել Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ․ 29 հաւաքածոյ Ձեռագրին մէջ, որ գրուած է 1746ին[11]։ Թղ․ 199բ—222ա կը ներկայացնէ Ձեռագիրս «Յաղագս ամենայն պիտոյից բանք իմաստասիրաց», որ յէականս նոյն է այն «Բանք իմաստասիրաց» հաւաքման հետ, որ յաճախ կը տեսնուի ձեռագիր ժողովածուներու մէջ, եւ հրատարակուած ալ է Սոփերք Հայկականք, Ա․, էջ 9—59։ Համեմատութեամբ ուրիշ օրինակներու հոս խառն դասաւորութեամբ են վճիռները, աղաւաղուած բնագրով, յապա-

---

[10] Adolf Baumgartner, Über das Buch „Die Chrie". ZDMG. 40 (1886), 457—515, յատկապէս էջ 461—462։

[11] Հմմտ․ Տաշեան, Ցուցակ, էջ 163—174։

ւուած եւ ընդարձակուած բովանդակութեամբ[12]։ Թղ. 216ա—219ա ունի «Յաղագս Օրինաց» գլուխ մը, որ բովանդակութեամբ բոլորովին կը տարբերի Թղ. 206ա—207ա նոյն խորագրով գտնուած գլխէն (= Բանք Իմաստասիրաց, էջ 46—47)։ Ս. Գրքէն քանի մը վճիռ յառաջ բերուելէ ետքը, կը յաջորդեն 34 վճիռներ ի բանից Իմաստասիրաց, որոնցմէ 19 վճիռ Թէոնի Նախակրթութեանց «Յաղագս Պիտոյից» գլխէն քաղուած են։ Անշուշտ չենք կրնար պատահականութեան վերագրել Թէոնեան այս 19 վճիռներու առընթերագրութիւնը այս տեղ եւ ոչ ալ ուրիշ աղբիւրէ ենթադրել։ Ասոնք ուղղակի «Յաղագս ճարտասանական կրթութեանց» հայերէն թարգմանութենէն փոխ առնուած են. կը պակսին Բանք Իմաստասիրաց հաւաքման սովորական օրինակներու մէջ։

Կարեւոր կը համարիմ այս վճիռները իրենց ամբողջութեան մէջ յառաջ բերել հոս, առընթեր տալով համապատասխան յունարէնները։ Կան վճիռներ, որոնք երկրորդ թարգմանութեամբ կը գտնուին նաեւ Պիտոյից

---

12 Այս խումբէն է նաեւ Վենետիկի Մխիթարեանց Թ. 245 Զ. Ոսկեփորիկը (Սարգիսեան՝ Ցուցակ, Բ., էջ 656—658), որ Թղ. 1—23ա կը պարունակէ Բանք Իմաստասիրաց գրութիւնը։ Ձեռագիրը ԺԶ.—ԺԷ. դարէն է։ Թղ. 17բ—20ա կը գտնուի «Յաղագս Օրինաց» գլուխը։ Ինձ կը թուի թէ այս Ձեռագիրը կ՚ակնարկուի Նոր Հայկազնեան Բառգրքի մէջ «Ոսկեփորիկ» եւ «Պիտառ» համառօտութեամբ յառաջ բերուած վկայութեանց համար (տե՛ս Առնանց, Մանկամարգ, Քաջաբոյս բառերը)։

գրքին մէջ, կամ Ափթոնիոսի եւ կամ Նիկողայոս Միւռացւոյ ընծայած բնագիրներէ թարգմանուած ։ Ինչ ինչ վճիռներ ալ կը գըտնուին նոր խմբագրութեամբ եւ կամ թերեւս նոր թարգմանութեամբ Բանք Իմաստասիրաց հաւաքման եւ այլ գրուածքներու մէջ, զորոնք նոյնպէս ուզեցինք համեմատութեան առնել ։

Դժբախտաբար Թ. 29ի գրիչը շատ անհմուտ անձ մ'եղած է իր արուեստին մէջ եւ բնագիրները սխալաշատ աւանդած ։ Ուր պէտք էր, մուծեցինք մանր ուղղումներ ։

1. «Դիոգինէս հարցեալ. Զիա՞րդ ոք փառաւոր եղիցի. ասաց. Եւ ոչ միով իւիք փառաց հոգ տանելով» ։

Διογένης ὁ φιλόσοφος ἐρωτηθεὶς ὑπό τινος, πῶς ἂν ἔνδοξος γένοιτο, ἀπεκρίνατο, ὅτι ἥκιστα δόξης φροντίζων (էջ 203) ։

2. «Իսոկրատէս[13] ճարտասան զքաջաբոյս աշակերտացն աստուածոց մանկունս գոլ ասէր» ։

Ἰσοκράτης ὁ σοφιστὴς τοὺς εὐφυεῖς τῶν μαθητῶν θεῶν παῖδας ἔλεγεν εἶναι (էջ 203, 210) ։

3. «Դիոգենէս շնական տեսեալ պատանի մեծատուն անխրատ՝ ասաց. Սա է աղտ արծաթապատ» ։

Διογένης ὁ κυνικὸς φιλόσοφος ἰδὼν μειρά-

---

[13] Զ. Սոկրատէս ։ Այսպէս նաեւ Վենետիկի Մխիթարեանց օրինակը. տե՛ս ամբողջութեամբ յառաջ բերուած «Պիտառ»էն Նոր Հայկազ. Բառգիրք, Քաջաբոյս բառին տակ ։

*κιον πλούσιον ἀπαίδευτον, εἶπεν, οὗτός ἐστι ῥύπος περιηργυρωμένος* (203, 211—212):

4. *«Թէանով պիւթագորեան հարցեալ՝ քանօրեա՞յ կին յառնէ մաքուր ի թեսմոփորոնն իջանէ. ասաց. Յիւրմէն նոյնժամայն, յօտարէն՝ եւ ոչ երբեք»:*

*Θεανὼ ἡ Πυθαγορικὴ φιλόσοφος ἐρωτηθεῖσα ὑπό τινος, ποσταία γυνὴ ἀπ' ἀνδρὸς καθαρὰ εἰς τὸ θεσμοφορεῖον κάτεισιν, εἶπεν, ἀπὸ μὲν τοῦ ἰδίου παραχρῆμα, ἀπὸ δέ τοῦ ἀλλοτρίου οὐδέποτε* (204):

*Այս հատուածը կը գտնուի նաեւ Պիտոյից գրքին մէջ* (*էջ* 352), *թարգմանուած այսպէս.*

*«Զթէանով ոմն Պիթագորական եհարց, եթէ Յետ քանի՞ աւուր կնոջ առ այր մերձաւորութեան արժան է մտանել ի տէրունին: Եւ նա ասէ. յիւրմէն՝ նոյնօրին. յօտարէն՝ եւ ոչ բնաւ երբեք»: Պիտոյից գրքի աղբիւրն է հոս հաւանօրէն Նիկողայոս Միւռացւոյ օրինակն* (274, Walz), *որ այսպէս ունի.*

*Θεανώ ἡ πυθαγορικὴ φιλόσοφος ἐρωτηθεῖσα, πόσον ἔσται απ' ἀνδρὸς γυνὴ προσελθοῦσα τοῖς θεσμοφορίοις, εἰ μὲν ἐξ οἰκείου, παραχρῆμα, ἔφη, εἰ δέ ἀπ' αλλοτρίου, μεδέποτε.*

*Նոյն թարգմանութենէն մաս գտած է հատուածս Ներսէս Շնորհալի առ Կոստաս կայսր գրած նամակին մէջ, հաւանօրէն օտար գրչէ ներմուծուած, ուր հետեւեալ փոփոխութիւնը կրած է* (*Սերիոս*, *էջ* 132).

*«Զթէանով ոմն զկին մարդ զաշակերտ*

Պիւթագորայ հարցեալ եղեւ, թէ Յետ քանի՞ աւուր մերձաւորութեանն ի կին մարդ, արժան է յարքունիս մտանել։ Եւ նա ասէ․ Յիւրմէն աւրէն է․ յաւտարէն՝ եւ ոչ բնաւ»։

Կը գտնուի նաեւ Բանք Իմաստասիրաց հաւաքման մէջ հետեւեալ ձեւով․

«Զթէոմնաս[14] ումն կին պիթագորական հարցեալ թէ յետ քանի՞ աւուր մտցէ ի տուն կուոց այր որ լինի ընդ կնոջ․ ասէ․ Յիւրն՝ նոյնաւրին, եւ յաւտարին՝ ոչ բնաւ»։

Արդէն Baumgartner[15] եւ Հ․ Յ․ Տաշեան[16] նկատած էին թէ Սեքիոսի հատուածը կախում ունի Պիտոյից գրքէն։ Հ․ Տաշեան կը ժխտէ սակայն Պիտոյից գրքի ուղղակի կախումը Թէոնէն, զոր կը հաստատէր Baumgartner, եւ կը միտի ընդունիլ թէ հոս Պիտոյից գրքին աղբիւրն եղած ըլլան «Բանք Իմաստասիրաց»։ «Խստիւ խօսելով, կը գրէ Տաշեան, թէ՛ Բանք Իմաստասիրաց եւ թէ՛ Պիտոյից գիրքն կրնան յիշեալ կտորն՝ իրարմէ անկախ՝ մի եւ նոյն յոյն բնագրէն թարգմանած ըլլալ։ Բայց աւելի հաւանական կ'երեւայ ընդունիլ որ Պիտոյից Գրոց հեղինակը Բանք Իմաստասիրաց գրութեան խօսքն գործածած ըլլայ, բայց ոչ միշտ բառ առ բառ օրինակած անկէ։ Սեքէոս ստուգիւ կարդացած է Պիտոյից Գրոց խօսքը, բայց նաեւ Բանք Իմաստասի–

---

[14] Զ․ գթէոմնաս։

[15] Անդ, էջ 465—466։

[16] Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք․ Ա․։ Վիեննա 1895, էջ 215—218։

բաց. որով մերթ միոյն, մերթ միւսին հետ կը միաբանի»:

Ինձ կը թուի թէ Թ. 29էն յառաջ բերուած հատուածը Թէոնեան Նախակրթութեանց հայերէն թարգմանութենէն փոխառութիւն է: Իսկ Պիտոյից գիրքը աչքի առաջ ունեցած է Նիկողայոս Միւռացւոյ Նախակրթութիւնքը եւ օգտուած է անկէ ազատօրէն: Θεσμοφορεῖον Թէոնի թարգմանիչը տառադարձած է պար- զապէս «Թեսմոփորոն»: Ըստ իմաստին է «Օրէնստու» Դեմետրեայ տաճարը, ուր կը հաւաքուէին կանայք: Պիտոյից գրքի թարգ- մանիչը հայացուցած է «տէրունիք» եւ մեկ- նած «ի տէրունեան տաճար». զոր Բանք Իմաս- տասիրաց հաւաքման հեղինակը վերածած է «տուն կուոց»: Սեբիոսի «յարքունիս» ձեւը առանց տարակուսի աղաւաղութիւնն է «ի տէ- րունիս» բառին. ուստի երկուքն ալ կը գտ- նուին Պիտոյից գրքի ազդեցութեան տակ:

5. «Աղեքսանդրոս թագաւորն ի վերայ ան- ցեալ եկաց Դիոգենի մինչ դեռ ի քուն կայր. ասաց. Ոչ է պարտ զամենայն գիշերն ի քուն լինել խորհրդականի առն: Ասաց. Որում ժո- ղովուրդք յանձն են <եւ> այսքան հոգք»:

’Αλέξανδρος ὁ τῶν Μαχεδόνων βασιλεὺς, ἐπιστὰς Διογένει χοιμωμένῳ, εἶπεν, οὐ χρὴ παννύχιον εὕδειν βουληφόρον ἄνδρα. Καὶ ὁ Διο- γένης ἀπεχρίνατο, ᾧ λαοί τ’ ἐπιτετράφαται χαὶ τόσσα μέμηλεν (205):

Այս հատուածը Հոմերոսի Իլիականէն է,

զոր նաեւ Սուտն Կալլիսթենէս Աղեքսանդրի վարքին մէջ (էջ 2, տպ. Վենետ.) յառաջ բերած է. «Ոչ է պարտ եւ արժան զգիշերն ամենայն ի քուն կալ առն խորհրդաբերի, որում ժողովուրդք յանձն (տպ. յանձին) են եւ այսքան հոգք»:

6. «Դիոգենի տեսեալ մանուկ, զի ուտէր թան, զմանկավարժն մականաւ եհար»:

Διογένης ὁ κυνικὸς φιλόσοφος, ἰδὼν ὀψοφάγον παῖδα, τὸν παιδαγωγὸν τῇ βακτηρίᾳ ἔπαισε (205, 211):

Այս հատուածը ուրիշ թարգմանութեամբ.

«Դիոգենէս համբակ տեսանելով ստահակեալ, զմանկածուն տանջեաց ասելով. Ընդէ՞ր այդպէս դաստիարակես» (Գիրք Պիտոյից, 341): Քիչ ետքը՝ «զդաստիարակն ջնեալ պատուհասէր» (343):

Նոյնը Ա. Օրինակին մէջ (էջ 342). «Դիոգենէս տեսեալ զմանուկ ստամբակ, զմանկածուն գաւազանաւն եհար»:

Պիտոյից գիրքը կախում ունի հոս Ափթոնիոսէն, որ այսպէս ունի.

Διογένης μειράκιον ἑωρακὼς ἀτακτοῦν τὸν παιδαγωγὸν ἔπαισεν, ἐπειπὼν, τί γὰρ τοιαῦτα παιδεύεις (Ափթոնիոս, 63 Walz):

Այս տեղ ուշադրաւ է Թէոնի յառաջբերութեան մէջ ὀψοφάγος բառը, որ կը նշանակէ «փափկակեր, առանց հացի թացան (թան, քաղցուեղէն եւն) կերող», զոր հայը թարգմանած է «զի ուտէր թան»: Ափթոնիոս

(եւ Նիկ. Միւռացի, 272) բառիս փոխարէն ունին ἄτακτοῦν, «ստահակեալ», «ստամբակ»: Պիտոյից գրքի երկրորդ ձեւն՝ «գաւազանաւ եհար» կը յիշեցնէ Թէոնի բնագիրը:

7. «Երկուորեակ փողահար ըմբռնեալ ի շնութեանն, զանուանէն կախեաց»:

Δίδυμος ὁ αὐλητὴς ἁλοὺς ἐπὶ μοιχείᾳ, ἐκ τοῦ ὀνόματος ἐκρεμάσθη (205—206, 212):

8. «Պիթագորի հարցեալ թէ քանիօն է մարդկան կենցաղս, ի վեր ելեալ ի տանիսն հեռացաւ սակաւ»:

Πυθαγόρας ὁ φιλόσοφος, ἐρωτηθείς, πόσος ἐστὶν ὁ τῶν ἀνθρώπων βίος; ἀναβὰς ἐπὶ τὸ δωμάτιον, παρέκυψεν ὀλίγον (էջ 206):

9. «Ղակոնացի[17] այր հարցեալ. Ո՞ւր զսահմանս երկրին ունին Ղակեդեմոնացիք, եցոյց զնիզակն»:

Λάκων ἐρομένου τινὸς αὐτόν, ποῦ τοὺς ὅρους τῆς γῆς ἔχουσι Λακεδαιμόνιοι; ἔδειξε τὸ δόρυ (206):

Պիտոյից Գիրքը (350) ունի հատուածս՝

«ԶԼակոնացի ոմն հարցեալ, թէ ո՞ւր սահմանք Սպարտայ. եւ նորա զնիզակն ցուցեալ (տպ. ցցեալ) ասէ. Յա՛յսմ վայրի»:

Λάκων ἐρωτηθεὶς, τίνες ἂν εἶεν τῆς Σπάρτης οἱ ὅροι, τὸ δόρυ ἔδειξεν (Նիկ. 277):

Պիտոյից գիրքը նաեւ հոս Նիկողայոս Միւռացւոյ օրինակն աչքի առաջ ունի: Ցցեալ անշուշտ պէտք է կարդալ ցուցեալ:

---

17 Զ. Ղադոնացի... Ղակեդոմնացիք:

Այս հատուածի ազդեցութեան տակ հաւանօրէն կազմուած է Մովսէս Խորենացւոյ ասածը (Ա. 7). «Սահմանք քաջաց գէնք իւրեանց. որքան հասանէ, այնքան ունի»:

10. «Նոյն այր հարցեալ. Ո՞ւր պարիսպ Սպարտայ. ի վեր առեալ զվահանն ասաց»:

Այս հատուածը կը պակսի այժմեան յոյն բնագրին մէջ: Նախադասութիւնը թերի կ'երեւայ. պէտք է լրացնել. «ասաց. Յայսմ վայրի»:

11. «Բիոն իմաստակ զարծաթսիրութիւնն մայրաքաղաք ասէր ամենայն չարութեանն»:

=Βίων ὁ σοφιστὴς, τὴν φιλαργυρίαν μετρόπολιν ἔλεγε πάσης κακίας εἶναι (206—207):

12. «Իսոկրատէս[18] խրատ տայր աշակերտացն յարգել եւ մեծարոյ համարել քան զծնողս զվարդապետս. զի նոքա կելոյ են պատճառ, իսկ սոքա բարիոք կելոյ»:

Ἰσοκράτης ὁ ῥήτωρ παρῄνει τοῖς γνωρίμοις, προτιμᾶν τῶν γονέων τοὺς διδασκάλους, ὅτι οἱ μὲν τοῦ ζῆν μόνον, οἱ δέ διδάσκαλοι καὶ τοῦ καλῶς ζῆν αἴτιοι γεγόνασιν (Թէոն 207):

13. «Դիոգինէս [ասէ] տեսեալ համբակ կարի առաւել զարդարեալ՝ ասէ, թէ <առ> արս թշուառական[19] <ես> եւ թէ առ կանայս անիրաւ ես»:

Διογένης ὁ φιλόσοφος, ἰδὼν μειράκιον περισσῶς καλλωπιζόμενον, εἶπεν· εἰ μὲν πρὸς

---

[18] Զ. Սոկրատէս:

[19] Զ. Թշուառականս:

ἄνδρας, ἀτυχεῖς, εἰ δὲ πρὸς γυναῖκας, ἀδικεῖς (208) :

14. «Աղեքսանդրոս յորդորեալ ի բարեկամացն ինչս ժողովել, ասաց. <այլ այս> օգուտ ինչ <ոչ> արար <եւ> ոչ Կրիսոսի[20]» :

Ἀλέξανδρος ὁ τῶν Μακεδόνων βασιλεύς, παρακαλούμενος ὑπὸ τῶν φίλων συναγαγεῖν χρήματα, εἶπεν, ἀλλὰ ταῦτα οὐκ ὤνησεν οὐδὲ Κροῖσον (208) :

15. «Դամոնն[21] մանկամարզ ոտիւք կաղ էր. գողացեալ կօշկացն, իցի՛ւ, ասաց, թէ յարմարիցի գողոյն» :

Δάμων ὁ παιδοτρίβης χωλοὺς ἔχων τοὺς πόδας κλαπέντων αὐτοῦ τῶν ὑποδημάτων, ἔφη εἴθε ἐναρμόσειε τῷ κλέπτῃ (208) :

16. «Աղեքսանդրոս հարցեալ՝ ո՞ւր ունիցի զգանձսն. ի սոսա՛, ասէ, ցուցեալ զբարեկամսն» :

= Ἀλέξανδρος ὁ τῶν Μακεδόνων βασιλεύς, ἐρωτηθεὶς ὑπό τινος, ποῦ ἔχει τοὺς θησαυρούς ἐν τούτοις, ἔφη, δείξας τούς φίλους (208) :

Սոյն հատուածս Պիտոյից Գիրքն (345) ունի.

«Աղեքսանդրոս Մակեդոնացի հարցեալ յումեմնէ. Ո՞ւր են քո գանձք. զսիրելիսն ցու–

20 Այս վճիռը խանգարուած է Ձեռագրին մէջ. «ասաց. Ինչ օգուտ արար ոչ Կրիսոսի» :

21 Ձ. Դոմինոն : Վենետիկի Մխիթարեանց օրինակը՝ «Դամինոն». տե՛ս Նոր Հայկ. Բառգիրք, Մանկամարզ բառին տակ. յառաջ բերուած «Պիտոյ»էն :

ցեալ ասաց. Ի սուտ»: Որովհետեւ նոյնը յառաջ կը բերէ նաեւ Լիբանիոս, հաւանական է կարծել թէ Պիտոյից Գիրքը նոյն աղբիւրէն առած է հատուածս, ուստի անկախ Թէոնի հայերէն թարգմանութենէն:

17. «Դիոգենէս տեսեալ զհամբակ ի չան տանէ քարինս արտաքս ընկենլով. Դադարեա, ասէ, պատանեակ, գուցէ չգիտելով հարցես զհայր»:

*Διογένης ὁ Κυνικὸς φιλόσοφος, ἰδὼν μειράκιον ἐκ μοιχοῦ λίθους βάλλον εἰς ἀγορὰν, παῦσαι ἤφη, παιδίον, μὴ ἀγνοοῦν παίσῃς, τον πατέρα* (209—210):

18. «Անտիսթենէս որ էր Ատտիկեցի, երթեալ յԱթէնս եւ հարցեալ. Ուստի՞. Ի Ղակեդեմոնիայ (Զ. Ղակեդոմնեայ) ի կանանոցէն, ասէր, յառնանոցն գալ»:

*᾿Αντισθένην ᾿Αττικόν γε ὄντα παραγενόμενον ᾿Αθήνηθεν εἰς Λακεδαίμονα, ἐκ τῆς γυναικωνίτιδος λέγειν εἰς τὴν ἀνδρωνῖτιν ἐπιέναι* (215):

Հատուածս ծանօթ է նաեւ Նոր Հայկ. Բառգրքին, այս անգամ «Ոսկեփորիկ»է. տե՛ս Առնանոց բառին տակ:

Յոյն բնագիրը եղծուած, աղաւաղուած է. ուղղելու է ըստ հայոյն: Համեմատէ առ այս Նիկողայոս Միւռացւոյ օրինակը, ուր խօսքը Դիոգենի բերանը դրուած է եւ «առ-

*նանոց» ներկայացուած Ղակեդեմոնիա, իսկ Աթէնք «Կանանոց». Կ՚ըսուի՝*

*Διογένης ἐκ Λακεδαίμονος εἰς Ἀθήνας ἰὼν, πόθεν ποῖ βαδίζεις ἐρομένου τινὸς, ἐκ τῆς ἀνδρωνίτιδος ἐπὶ τὴν γυναικωνῖτιν εἶπεν* (275):

= *Դիոգենէս ի Ղակեդեմոնիայ եկեալ յԱթէնս, հարցաւ յումեմնէ. Ուստի՞ եւ յո՞ երթաս: Յառնանոցէ անտի, ասէ, ի կանանոց անդր»:*

*Նկատմամբ* Առնանոց *եւ* Կանանոց *բառերու գործածութեան համեմատէ Փիլոնի հետեւեալ տեղիքները. «Իսկ հասարակ պարկեշտանոցս այս... կրկին գուիթ է. մին* յառնանոցն *եւ միւսն ի* կանանոցն *զատուցեալ եւ որոշեալ»* (*Յղ. վարուց կենաց տեսականի, էջ* 14, *տպ. Վենետիկ* 1892): *Իսկ Յղ. լինելութեան. Դ.* 15 (*էջ* 256, *տպ. Վենետիկ* 1826) *կը գրէ Փիլոն. «Հոգւոյ իբր տան, է որ* առնանոց *է եւ է որ* խորոպճին. *արդ* առնանոցն *վայր է, որում դէպ եղեւ բնակել արու խորհուրդք...* խորոպճին, *տեղի է, յորում շրջին բնակել բարք կանացիք»: Այս եւ նման բառեր կարող են կռուան ծառայել հանելու թարգմանչին նոյնութեան:*

19. *«Պիտտակոս հարցեալ եթէ ծածկի՞ ոք յաստուածոց վատթար ինչ գործելով. ասաց. Եւ ոչ ընդ միտ ինչ ածելով»:*

*Πιττακὸς ὁ Μιτυληναῖος ἐρωτηθεὶς, εἰ λανθάνει τις τοὺς θεοὺς φαῦλόν τι ποιῶν; εἶπεν οὔ, οὐδὲ διανοούμενος* (203, 211):

Թէոնի Նախակրթութեանց հայերէն թարգմանութեանս մասին թող բաւական համարուին տողերս իբրեւ նախապատրաստական տեղեկութիւններ։ Մեր փափաքն է հայերէն բնագիրը ամբողջութեամբ հրատարակուած տեսնել։

---

# ԺԵ.

# ՅԱԿՈԲ ՆԵՏՐԱՐԵՆՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՐԾԿԷԻ

## ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾ ՄԸ ԺԵ. ԴԱՐՈՒ ԵՐԿՐՈՐԴ ԿԷՍԷՆ

(† 1501)

---

# ԺԵ.

## ՅԱԿՈԲ ՆԵՏՐԱՐԵՆՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՐԾԿԷԻ

### ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾ ՄԸ ԺԵ. ԴԱՐՈՒ ԵՐԿՐՈՐԴ ԿԷՍԷՆ

(† 1501)

*Դեռ փորձ չէ եղած ուրուագծելու եպիսկոպոս բանաստեղծիս կենսագրութիւնը, ստուգելու անոր ժամանակն եւ ամփոփելու անոր ցիր ու ցան գրական արտադրութիւնները: Առաջին փորձն է այս:*

*Նկատմամբ բանաստեղծիս անձին եւ ժամանակին ակնարկութիւն մ'ըրած է Ղեւոնդ Վ. Փիրղալէմեան*[1]*, նոյնացնելով զինքը* 1464*ին յիշուած Յակոբ քահանային եւ* 1467*ին յիշատակուած Յակոբ եպիսկոպոսին հետ: Անոր գրութիւններու մասին հարեւանցիկ նկատողութիւններ ըրած են Ն. Քարամեանց*[2] *եւ Կ. Կոստանեանց*[3]*: Գրուածքներէն ծանօթ են հրապարակի վրայ երեք տաղ միայն:*

---

[1] *Ղ. Վ. Փիրղալէմեան, Նօտարք Հայոց, Կ. Պոլիս* 1888, *էջ* 219, *ծ.* 1 *եւ* 229, *ծ.* 2:

[2] *Արարատ*, 1895, *էջ* 91:

[3] *Նոր Ժողովածու, Բ.: Տփղիս* 1892, *էջ* 19—20· *«Մենք անկարող ենք որոշել թէ Արծկէացին կամ Նետարենցը եւ այս Յակոբ [Թոխաթեցի] երէցը նո՞յնն են. պարզ է, որ երկուսն էլ եթէ ոչ աւելի վաղ ժամանակների գէթ ԺԷ. դարի սկիզբների մարդիկ են»:*

*Յակոբ Նետրարենց մեծահանճար բանաստեղծներէն չէ անշուշտ։ Բայց եղած է իր դարուն համար ականաւոր դէմք մը, մտքով «շնորհածաւալ», անձամբ «հեզ եւ խոնարհ եւ ամենայն շնորհօք լի», արուեստով «քաջ քարտուղար», այսինքն գրիչ, եւ հմտութեամբ «անյաղթ փիլիսոփայ», որով քաջաձայն երգիչ պէտք է իմանալ։ Իր գրուածքները կարդացուած են ախորժմամբ, նաեւ երգուած եկեղեցիներու մէջ։*

## ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

*Յակոբ ծնած է Արծկէ ծովահայեաց քաղաքը, Բզնունեաց ծովակին ափանց վրայ տարածուած։ Նետրարենց*[4] *տոհմէն էր. որդի Ներսէս քահանայի եւ Խաթուն Մելիքի։ Իր եղբայրն էր Ղազար քահանայ, որ «շնորհալից» կը յորջորջուի. անոր խնդրանքով գրած է Յակոբ «Աքանչելի սուրբ Նշանդ պատուեալ» տաղը։ Ղազար*[5] *վախճանած է* 1491*ին, թող–*

---

[4] *Անունս Նետրարենց Ձեռագիրներէն ոմանք կը ներկայացնեն «Ներտարենց» սրբագրուած՝ «Նետտարենց»* (*էջմ.* 282). *«Նետարենց»* (*Այրըն*). *«Նետարեց»* (*Պարիս*) *եւն։ Ուղղագոյնն է անշուշտ Նետրարենց, ինչպէս ունի՝ չորս անգամ կրկնուած՝ Զաքարիա դպիր, Յակոբի եղբօրորդին, իւր ինքնագիր Ճաշոցակարաններու մէջ* (*տե՛ս վարը*)։

[5] *Թէպէտ իրեն ժամանակակից եւ հայրենակից, բայց ուրիշ անձնաւորութիւն է Ղազար գրիչ, որդի Հազարբէկի եւ Շահաստանի, որ* 1465*ին օրինակած է յԱրծկէ Ոսկեփորիկ–Տօնական մը* (*Թ.* 38 *Տիւբինգենի հայերէն Ձեռագրաց*)։ *Հաւանօրէն սա է նաեւ* 1475*ին նոյն տեղ օրինակուած Յայսմաւուրքին գրիչ Ղազարը* (*Թ.* 11 *Հայերէն Ձեռագրաց Մաղնիսայի. Տ. Վ. Պալեան, Ցուցակ, էջ* 34—36)։

լով իւր կինն Դովլաթ եւ որդիքն եղբօրը խնամքին: Այնուհետեւ Զաքարիա դպիր մանաւորապէս վայելեց իւր հօրեղբօր գութն ու հոգածութիւնը: Իւր եղբօր մահը լացաւ Յակոբ առանձին ողբով:

Թէ զո՞վ իրեն դաստիարակ ունեցաւ Յակոբ, յայտնի չէ: Հաւանօրէն իւր հօրը՝ Ներսէս քահանայի առաջնորդութեան տակ առաւ անիկա ուսման նախատարերքը եւ զարգացուց ապա ինքնօգնութեամբ: Ինքն ալ կոչուած էր քահանայութեան: Չափահաս տարիքին առաւ իրեն կին Մեհրուբանը. բայց երկար չկրցաւ վայելել անոր սէրը: Մեհրուբան 1464էն յառաջ կը վախճանի, ինչպէս կ'երեւայ՝ անծնունդ: Յակոբ այրիացած՝ կ'առանձնանայ Արճկէի Սքանչելագործ Ս. Նշան վանքը. ու կը նուիրուի խորհրդապաշտ կեանքի եւ գրական զբաղումներու:

Սքանչելագործ վանքը Բզնունեաց գաւառի ամենանշանաւոր սրբավայրն եւ ուխտատեղին էր: Դիրքն, օդն ու ջուրն եւ ամէն ինչ սքանչելի: Արեւելեան կողմէն կը տարածուին վանքին առաջ Արկէ քաղաքի որթատունկ եւ մրգաւէտ այգիները. անոնց կից են մարգագետինները, որոնք կը հասնին մինչեւ ծովին եզերքը: Ծովն իւր երկնագոյն մոգ–կապոյտ մակերեւոյթովը նոր հրապոյր կ'ընծայէ այդ գրաւիչ տեսարանին: Հարաւէն կը ցցուին Նեմրութ ու Գրգուռ հրաբխային լեռները. եւ հիւսիսէն կը բարձրանայ սպիտակափառ Սիփան: Ամբողջութեամբ գաւառին առատա–

բուղխ Ջրամբարն է: Բուսականութեամբ հարուստ անդերն ու անդաստաններըիրենց երեսը դէմ տուած դէպի արեւելք, դէպի Վարագայ լեռը կը ծիծաղին ուրախադէմ, հայցելով Վարագայ Ս. Նշանին պահպանութիւնը Բզնունեաց աշխարհին վրայ:

Վանքն ունի իւր սեպհական կալուածները. իր թեմին կը պատկանին շրջակայ աւելի քան երեսուն հայարնակ գիւղերը[6]:

Յակոբ հմուտ էր գրչութեան արուեստին. կ'անուանուի «քաջ քարտուղար»: 1464ին Գուլչատ Խաթունի յանձնարարութեամբ կ'օրինակէ Աւետարան մը, «ի քաղաքիս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ տաճարի մօրս լուսոյ Աստուածածնի եւ Ս. Ստեփանոսի Նախավկայի եւ մերոյս մենաստանի Սքանչելագործ Ս. Նշանի». հոս կը խնդրէ յիշել «զախմար գրիչս Յակոբ («քահանայ») եւ զծնողսն իմ զՆերսէս քահանայն՝ զփոխեցեալն առ Քրիստոս եւ զԽաթուն Մէլիք եւ զեղբայրն իմ զշնորհալից քահանայն Ղազար. եւ զամուսին իմ զՄեհրուբանն զփոխեցեալն ի Քրիստոս»[7]:

Յիշատակարանիս վերջը կը խնդրէ յիշել «զՄինաս եպիսկոպոսն զփոխեցեալն ի Քրիստոս եւ զԱստուածատուրն»: Փիրղալէմեան եպիսկոպոսիս անուան կից կը ծանօթագրէ. «Թերեւս էր սա վանահայր Սքանչելագործայ

[6] Գէորգ Շէրենց, Սրբավայրեր: Թիֆլիս 1902, էջ 94—96:

[7] Փիրղալէմեան, Նօտարք, էջ 218—219:

ուխտին եւ դէտ վիճակին Բգնունեաց»: Իսկ Աստուածատուր ըլլայ թերեւս տեղապահը:

Յակոբ այս միջոցին դեռ «քահանայ» էր: Հաւանօրէն ինքն եղաւ Մինաս եպիսկոպոսի անմիջական յաջորդը Բգնունեաց աթոռին վրայ: Յամենայն դէպս երեք տարի յետոյ կը հանդիպինք մենք իրեն եպիսկոպոսական տիտղոսը զգեցած: 1467ին կ՚օրինակէ ուրիշ Աւետարան մը. Յիշատակարանին մէջ կը գրէ. «Եւ՛ արդ գրեցաւ սա ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի տաճարիս եւ Ս. Նշանիս Պատերազմի. ի թուին Հայոց ՋԺԶ ի թագաւորութեան որդւոյ Ջհանշայի՝ Հասան Ալիի միրզին. եւ ի կաթողիկոսութեան տեառն Ըռըստակէսի ընդհանուր Հայոց, Աղթամարայ՝ տեառն տէր Ստեփաննոսի: Յայսմ ամի, յորում Ուզուն Հասան զՋհանշէն կոտորեաց. եւ մեք յահ ենք եւ ի փախ եւ ի դառնութեան ժամանակի. (գրեցաւ) ձեռամբ Յակոբ եպիսկոպոսի»[8]:

Ուրիշ Աւետարան մ՚ալ կ՚օրինակէ «Յակոբ եպիսկոպոս» սատարութեամբ իւր եղբօրորդւոյն «Զաքարիա դպրի», «ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի եւ Սքանչելագործ Ս. Նշանի» 1499ին «ի խնդրոյ Ստեփանոսի որդւոյ Մովսէսի»[9]:

---

[8] Փիրղալէմեան, անդ, էջ 229: Ծանօթութեան մէջ կը գրէ Փիրղալէմեան. «Ինձ թուի թէ Նետրարենց երգասաց նշանաւոր եպիսկոպոսն է»:

[9] Աւետարան Օձախ գեղջ Շիրակայ (ի հաւաքման Հ. Մ. Պոտուրեանի):

Ուրիշ անձ է տէր Յակոբ դպիր որդի Յովհաննէս քահանայի, որ 1482ին օրինակած է Մովսէս դպրի հետ Յայսմաւուրք մը[10] եւ 1500ին առանձին՝ Աւետարան մը[11], երկուքն ալ յԱրծկէ: Մովսէս, որ 1502ին յԱրծկէ օրինակած է Աւետարան մ'ալ[12], հաւանօրէն նոյն է այն Մովսէսի հետ, որուն խնդրանքով յօրինած է Յակոբ Նետրարենց իր տաղն ի Ս. Գէորգ «ՅԱստուծոյ ընդրեցար դու բարի» սկզբնաւորութեամբ:

Յակոբ Նետրարենց եպիսկոպոս վախճանեցաւ 1501ին, Հայոց ՋԾ թուականութեան: Իր եղբօրորդին Զաքարիա դպիր այս թուին կ'օրինակէ Մաշտոց մը, որուն Յիշատակարանին մէջ կ'արձանագրէ շատ կարեւոր տողերս[13].

«Յիշեցէք ի Քրիստոս զփցուն գրիչս Զաքարայ դպիրս եւ զծնօղս իմ զՂազար քահանայն եւ զմայրն իմ զԴաւլաթն եւ զեղբարսն իմ զԿարապետ նորընծա քահանայն եւ զՅովանէսն եւ Ներսէս եւ զԴարմանն: Եւ զհօրեղբայ(ր)ն իմ (Զեռ. մի՛) շնորհածաւալ եւ զքաջ քարտօղարն եւ զյանյաղթ փիլիսոփայն զՅակոբ եպիսկոպոսն յիշեցէք ի Քրիստոս. զի յայսմ ամի փոխեցաւ առ Աստուած. եւ խիստ

10 Հ. Ե. Քօսեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարնոյ գիւղերու, Թ. 8, Յայսմաւուրք Երկնիստ գիւղի Ս. Աստուածածին եկեղեցւոյ:

11 Կը յիշուի ի Ձեռագիրս Ախլցխայի (ի հաւաքմանց Հ. Մ. Պոտուրեանի):

12 Աւետարան ի ձեռագիրս Տարօնոյ:

13 Էջմ. Թ. 214:

կսկծացոյց զսիրտըս իմ· զի հեռացայ ի քաղցրատեսութենէ նորա· զի հեզ էր եւ խոնարհ եւ ամենայն շնորհօք լի» (*Թղ. 213 ա*)։

«*Դարձեալ աղաչեմ զձեզ մանկունք սուրբ եկեղեցւոյ*, զՅակոբ եպիսկոպոսն որ մականուն Նետրարենց ասեն, *յիշեցէք ի Քրիստոս եւ Աստուած ողորմի ասացէք*· որ ուսուցեր է ինձ զարուեստս գրչութեան· *եւ սխալանաց եւ խոշորանացս անմեղադիր լերուք, զի դեռ նո(ր)ուսում էի*» (*Թղ. 213 բ*)։

«*Քրիստոս Աստուած ողորմի ստացողի գրոցս . . . եւ ինձ գծողիս մեղաւոր Զաքարիայ սարկաւագին եւ ծնողացն իմ Ղազար քահանային եւ մօր իմոյ Դոլլաթին եւ* հօրեղբաւրն իմ Յակոբ եպիսկոպոսին, որ մականուն Նետրարե(ն)ց ասեն։ *Աստուած ողորմի ասացէք նոցա եւ Աստուած ձեզ ողորմեսցի· ամէն*։»

*Սոյն Զաքարիա 1511ին ի վայելումն Մկրտիչ վանից հօր գրած Աւետարանի մը մէջ*[14] *միւսանգամ կը յիշէ իր հօրեղբայրը*· «*Աստուած ողորմի ասացէք ինձ Զաքարիայ սարկաւագի եւ ծնողացն իմ Ղազար քահանայի եւ Դաւլլաթի. եւ եղբարցն իմ Կարապետ կրօնաւորի եւ Ներսէսի. եւ փոխեցելոցն առ Աստուած Յովանիսին եւ Դարմանին եւ քուերացն Արղունին եւ Մահսումին. եւ* հօրեղբօրն իմ Յակոբ եպիսկոպոսին որ մականուն Նետրարենց ասի»։

---

14 *Պահուած Տիւբինգէնի Համալսարանի Մատենադարանի հայերէն Թ. 27 ձեռագրին մէջ, Թղ. 313ա*։

Արծկէի աթոռին վրայ Յակոբ եպիսկոպոսին յաջորդն եղած կ՚երեւայ տէր Ներսէս: Մովսէս դպիր իր 1502ին «ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ Ս. Սքանչելագործին եւ պատերազմի Ս. Նշանին եւ Ս. Աստուածածնին» օրինակած Աւետարանը կ՚աւարտէ «ի հայրապետութեան տեառն Ներսիսի»: Զինքը կը յիշէ նաեւ Գրիգոր աբեղայ իր 1502ին օրինակած Ճառընտրին մէջ[15]: Կարեւոր կը համարիմ յառաջ բերել Յիշատակարանը ամբողջութեամբ, ուր պատկերացուած է Արծկէի քաղաքական եւ տնտեսական կեանքը 1500—1502 տարիներուն, երբ կը վախճանէր Յակոբ եպիսկոպոս:

«Փառք... որ ետ կարողութիւն Գրիգոր աբեղայի, հասանել ի յաւարտ գրոցս որ կոչի Ճառընտիր, ի թվականիս մերում ի Ջ եւ ԾԱ, ի դառն եւ ի դժար ժամանակի, որ կամք յերերի 'ւ ի տատանի:

Զի ազգն Սաւֆեաց ելին ի ՋԽԹ (1500) թվին եւ զօրաժողով արարեալ ի յԵրզնկայն, եւ դիմեալ ի յարեւելս հասին ի դուռն Ալանաց եւ առեալ զՇամախի եւ զամենայն տունն Շրւանայ որ են Աղուանք. եւ նստան անդ տարի մի եւ արարին շատ աւերք: Եւ յոժ առեալ անտի դիմեցին ի վերայ Ալւանդ փատիշահին Թաւրիզոյ եւ ի դիմի հարեալ կոտորեցին զնա յանխնայ եւ փախստական արարին, եւ ինքեանք առեալ զթախթըն Թաւրիզոյ

[15] Ճառընտիր Մշոյ Առաքելոց Վանքին:

նստան. եւ տիրեաց կարմիր գտակն Ատրպա-տական տանս: Եւ ի միւս ամին դարձեալ գնացին յԵրզնկայն հետեւեալ տարին. եւ նա եւս եւ անտի փախուցեալ գայ ի Թաւրէզ. եւ անտի էջ ի Պաղտատ. իսկ Սօֆին դարձեալ եկն ի Թաւրէզ. եւ կալաւ զամենայն աշխարհս. եւ արարին շատ աւերք. եւ բազում արեան հեղմունք. եւ անխնայաբար կոտորեցին զազգն Տաճկաց յամենայն տեղիս զայնոսիկ որ գլնուորք էին լեալ: Եւ եկեալ ի յԱրճէշ եւ յԱրծկէ նստան եւ երկու անգամ Թալանեցին. եւ Թողեալ գնացին: Իսկ Քուրթն ի կողմանցն Բաղիշօյ եկեալ էառ զԱրծկէ եւ ամրացաւ անդ: Յետոյ եկեալ Սօֆին. եւ եղեւ շատ կռիւ եւ աղմուկ եւ այլ ոչ կարաց առնուլ ի Քրտոյն: Եւ քաղաքն եւ բերդն մնաց ի հասար՝ յաշնանէ մինչեւ ի գարուն: Եւ զերկիրն առեալ կարմիր գտակն եւ նստաւ. եւ այնչափ ճշդիւմալ էառ ի քրիստոնէից, մինչ զի այլ ոչ մնաց գինդ եւ ապարանջան յականջս եւ ի ձեռս կանանց. եւ ոչ զգեստ եւ ոչ զարդարանք:

Եւ կողոպտեալ եղեն յընչից եւ ստացուածոց. եւ եղեն ամենեքեան այր եւ կին իբր զգերոյ տէր, պատառատուն եւ հնոտի հանդերձիւ, զառն եւ տխուր կերպարանօք: Զի որք էին ի ձեռն հասա ալանաց (?) զհակն փոխանակ առնուլին զորդիս նոցա ի ծառայութիւն ինքեանց մինչեւ բերցեն զդրամն եւ տարցին եւ թէ յամիցեն եւ ոչ բերցեն, մնասցեն որդիք նոցա ծառայք ինքեանց:

Արդ ի սոյն դառնացեալ աւուրքս եղեւ

ւսարտ գրոցս ի քաղաքս Արծկէ, ընդ հովա-նեաւ Պատերազմին Ս. Նշանիս եւ սուրբ Սքան-չելագործիս, ի հայրապետութեան Տեառն Ներսէսի, որ ոչ գոյ չինութիւն ի յէջմիածինն, եւ ոչ խաղաղութիւն յաշխարհս Հայոց: Արդ ես Գրիգոր աբեղայ գրեցի զգիրս սուրբ: Զոր ստացաւ աստուածասէր տանուտէրին գեղջին Ասոյ եւ քահանայքն Տ. Աստուածատուրին եւ իւր որդոյն Տ. Պետրոսին...»:

ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Յակոբ Նոտարենց Արծկէի եպիսկոպոսի անուամբ ծանօթ են ինձ հետեւեալ գրուածք-ները, ամէնն ալ տաղաչափուած:

1. Ոտանաւոր Յակոբ վարդապետէ ասա-ցեալ ի վերայ Յուսկանն որդոյն Ստեփանոս քահանային:

Եկայք պատմեմ ձեզ սքանչելի.
Ըզվարք սրբոյն Ստեփանոսի.
Որ ի գեղջէն Արտամէտի,
Որդի Յուսիկ քահանայի:

Ի Թուականիս Հայոց ազգի,
Վեցհարիւր եւ եւթանասնի,
Ի գալ զօրացըն Թաթարի,
Զազգըս Հայոց արին գերի...

վ. Շարագրողի այսըմ բանի
Մըտօք մոլոր անիմաստի,
Յակոբ անուն բանասիրի.
Բերան մ'աղէք Տէր ողորմի:

Ձեռագիրք՝ Երեւան, Պետթանգարան, թ. 383, 48 ա—53 բ (1611) : 863, 101 ա (ԺԸ) : Էջմ. Գէորգ. ցուց. 47, 369 ա (1607). Հմմտ. Գ. Տէր-Մկրտչեան, Հայկականք Բ., Վաղարշապատ 1899, էջ 91 :

2. Վարք եւ պատմութիւն Մարխայ եւ Կարապայ վաճառականացն. Յակոբ եպիսկոպոսի ասացեալ Արծկեցւոյ[16] :

Եկայք օրհնեմք զԱստուած որ ողորմած է.
Եւ նա միշտ ըղծառայս իւր անտես չառնէ.
Զի քաղցր եւ բարերար եւ մարդասէր է.
Եւ զդարձ մեղաւորին հանապազ խընդրէ[17] :

Այր մի վաճառական անունըն Մարխայ.
Որ էր նա բնական ի յերկրէն Սրսայ.
Էր նա աստուածապաշտ բարի քրիստոնեայ.
Ունէր այնչափ ակունք, մալ ու խազինայ :

Վ. Յակոբ եպիսկոպոս երգող այս բանիս,
Ի յԱրծկէ քաղաքէ հանդէպ ծովակիս.
Ով պատուական եղբայր որ թէ ուսանիս,
Ի յաղօթս քո յիշեա զմեղաւոր հոգիս[18] :

---

[16] Էջմ. 2459 խորագրին ունի. «...զոր արարեալ է բանաստեղծ եպիսկոպոսն քահանայն տէր Յակոբ Նետարացի», իմացի՛ր՝ Նետրարենց :

[17] Ձեռագիրներէն ոմանք (Երեւան 383, 649. Էջմ. 2393) դուրս կը թողուն այս տունը :

[18] Կոնիբիր այս տողերը յառաջ կը բերէ Բրիտ. Թանգարանի Or. 4580, թղ. 133ա—164բ ձեռագրէն, իբրեւ վերջաբան «Պատմութիւն Զարմանալի Թագաւորին» ոտանաւոր գրուածքին (F. C. Conybeare, A Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, London 1913, էջ 278) : Առանց տարակուսի

Ձեռագիրք. Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 745, 34 ա—38 բ = Կերլա, Մատ. Ս. Երրորդութիւն Եկեղ. Թ. 43, 50ա—58ա (ԺԷ)։ Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 383, 284ա (1614)։ 649, 52ա (1652)։ Էջմ. 515, 54բ (ԺԷ)։ 1682, 104ա (ԺԷ)։ 2393, 105ա (ԺԷ)։ 2459. 301ա (ԺԷ. սկ. պակաս)։

Յակոբ Նետրարենց ոտանաւորի վերածած է ձեռագրաց մէջ յաճախ տեսնուած «Պատմութիւնն Մարխայ եւ Կասփարայ վաճառականացն». որուն սկիզբն է. «Այր ոմն անուն Մարխաս յերկրէն Սըսայ եւ էր հաւատով քրիստոնեայ եւ ազգաւ հայ... (վ.) Եւ Կասփար կեցեալ ճգնաւորական կարգաւն ամս Ե. եւ փոխեցաւ ի Քրիստոս»։

Ձեռագիրք՝ Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 10, 137 ա։ 224, 42 ա։ 437, 183 ա։ 701, 163 ա։ Վենետիկ, Մխիթ. Մատ. Թ. 217, 268 բ։ 223, 404 բ եւն[19]։

---

անտեսած է Կոնիբիր, թէ Զարմանազան Թագաւորի պատմութեան կից դրուած է Մարխայ եւ Կասփարայ պատմութիւնը։ Պէտք է ճշդել այս կէտը ձեռագրին վերաքննութեամբ։

[19] Կայ նաեւ ընդարձակուած խմբագրութեամբ՝ «Պատմութիւն Մարխայ վաճառականին եւ ընկերոջ Նորա, որ եղեւ ի կռապաշտիցն. եւ սքանչելեացն զոր եցոյց յօգուտ խոստովանողաց իւրոց։ — Յետ կենդանարար չարչարանաց եւ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի...։ Ընդ որս էր այր մի, որում անուն էր Մարխայ յաշխարհէն Կիլիկեցւոց եւ էր քրիստոնեայ հաւատարիմ եւ ունէր ինչս բազումս... վ. Եւ Կասփար կացեալ ճգնութեամբ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր...»։ Ձեռ. Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 960. 165ա—175ա (ԺԷ)։

3. Գանձ Սքանչելագործ սուրբ Նշանին Արծրկոյ քաղաքէ Յակոբ եպիսկոպոսէ Նետրարենց ասացեալ է գովելի եւ ազնիւ։

Յիսուս Քրիստոս արքայդ համայնից.
Եւ արարիչ ամենայն գոյից.
Տէր եւ իշխան ամենայն էից.
Ապաստուորեալ ի հրանիւթ սեռից...

Վ. Եւ անիմաստ Գանձին ասողի
Յակոբ անուն եպիսկոպոսի։

Տուներու սկզբնատառ գրերը կը կապեն՝ ՅԱԿՈԲ։

Ձեռագիրք. Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 359: 361: Էջմ. 424, 264 բ: Զմմառ, 22, 316 ա: Թաւրիզ, Ցուց., Թ. 43, 377 ա = Աճառեան՝ Գանձարան, թղ. 502ա[20]: Վենետիկ, Մխիթ. Մատ. Ը., Գանձարան, էջ 481: Պարիս, Ազգ. Մատ. Թ. 84, 330 ա: Քիւրտեան՝ Տաղարան յամէ 1678: Այտըն, Ազգ. Ընթերց. Մատ. Թ. 1 (Գանձարան. հմմ. Քօսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ., էջ 15—16)։

4. Տաղ ի Սքանչելագործ Ս. Նշանն Արծկէոյ ի նոյն Յակոբ եպիսկոպոսէ։

---

[20] «Աճառեան՝ Գանձարան» եւ «Աճառեան՝ Տաղարան» կ'անուանեմ այն Տաղերու եւ Գանձերու հաւաքածոյքները, զորոնք զանազան ձեռագիրներէ արտագրած է յարգելի բարեկամս Հ. Աճառեան եւ նուիրած ինձ (1926)։ Առթիւս կը յայտնեմ նաեւ հրապարակաւ իմ շնորհակալութիւնս մեծարոյ նուիրատուին, այս թանկագին ընծային համար։

Սքանչելի սուրբ Նշանդ պատուեալ,
Եւ փառօք անմահին զարդարեալ,
Զչար այսոց զօրութիւն խորտակեալ,
Եւ ըղցաւս մարդկան փարատեալ...

Վ. Անիմաստ եւ տըգէտ երգողի
Նետրարենց սուտանուն Յակոբի,
Եւ եղբօրս Ղազարի խընդրողի,
Հաւասար ասացէք ողորմի։

Ձեռագիրք. Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 359։ 361։ Էջմ. 424, 266 ա։ 282 հ. 33 բ (= Արարատ, 1895, էջ 91)։ Քէչիչեան, Ցուց. Զմմառու վանուց, 22, 317բ։ 73, 136ա։ Թաւրիզ, Թ. 43, 378 բ = Աճառեան՝ Գանձ. 503 ա։ Վենետ., Մխիթ. Մատ. Գանձ. Ը., էջ 482։ Պարիս, Ազգ. Մատ. Թ. 84, 332 ա։

Հրատարակուած՝ Ն. Քարամեանցէ Արարատ, 1895, էջ 127։

5. Տաղ Ս. Խաչին ասացեալ Յակոբ եպիսկոպոսէ Նետրարենց վասն սքանչելագործ սուրբ Նշանին Արծկոյ քաղաքի։

Խաչն եղիցի մեզ պահապան
Յայսմ հետէ մինչ ի վախճան.
Խաչն ուրացողքըն կուրանան.
Հաւատացեալք ուրախանան...

Ձեռագիրք՝ Քէչիչեան, Ցուց. Զմմառու վանուց, Թ. 298, 94 բ (ԺԷ)։ Էջմ. 424, 266 ա (անանուն)։ Պարիս, Թ. 84 (անանուն)։

6. Տաղ Ս. Գէորգայ:

*Յաստուծոյ ընտրեցար դու բարի,*
*Շառաւիղ օրհնութեան պտղալի.*
*Ընդ աշխարհս ամենայն գովելի,*
*Սուրբ Գէորգ նահատակըդ բարի...*

*Վ. Սխալամիտ եւ տըգէտ երգողի,*
*Նետրարենց սուտանուն Յակոբի.*
*Մոխանի այս բանի խընդրողի,*
*Հաւասար ասացէք ողորմի:*

*Տուներու սկզբնատառերը կը յօդեն՝* ՅԱԿՈԲ ԵՊԻՍԿՈՊՈՍ:

*Ձեռագիրք՝ Երեւան, Պետ. Թանգ.* 359: 360: 361: *Էջմ.* 424: 282 *հ.*, 53 *բ* (= *Արարատ*, 1895, *էջ* 124): *Բէշիշեան՝ Յուց. Զմմառու Մատ.* 22, 328 *բ*: 298, 95 *բ*: *Վենետիկ, Մխիթ. Մատ. Գանձ. Ը.*, *էջ* 489: *Տաղարան Զ.*, *էջ* 52: *Թաւրիզ, Թ.* 43, 384 *ա* = *Աճառեան՝ Գանձ.* 508 *ա*: *Պարիս, Ազգ. Մատ. Թ.* 84, 336 *ա*:

*Հրատարակուած՝ Վկայաբ. Ս. Գէորգայ, Վենետիկ* 1849, *էջ* 68—69:

7. *Տաղ Յարութեան ի Յակոբ եպիսկոպոսէ Արծըկեցւոյ ասացեալ:*

*Յաւուր յարութեան յորժամ որոտան*
*Երկինք եւ երկիր ի յահէն Քրիստոսի դողան..*

*Տնակապ գրերը՝* ՅԱԿՈԲ ՄԵՂԱՒՈՐՆ ԱՍՑԵԼ *Է*:

*Ձեռագիրք՝ Երեւան, Պետ. Թանգարան, Թ.* 359: 361: *Էջմ.* 424: 282 *հ.*, 30 *ա*—32 *բ*

(=Արարատ, 1895, էջ 91)։ Վենետիկ, Մխիթ. Մատ. Գանձարան Ա. 361։ Ը. 151։ Թ. 344։ Պարիս, Ազգ. Մատ. 84, 117 ա։ 283, 74 բ։ Բէշիշեան, Ցուց. Զմմառու վանուց, Թ. 22, 111 բ։ 298, 67 բ։ Քիւրտեան՝ Տաղարան յամէ 1678։ Թաւրիզ 43. 194բ = Աճառեան՝ Գանձ. 272։

Միայն Յ. Քիւրտեանի Տաղարանը յայտնապէս կը կրէ խորագրին մէջ «Տաղ Յակոբ եպիսկոպոսէ Արծըկեցոյ ասացեալ»։

8. Տաղ գարնան։

Գարունն է բացուեր. վարդն ի բաղչանին
Քաղցր եղանակէ բլբուլն ու զումրին...

Վ. Եւ ունէր Յակոբին երգողի տաղին
Որ նա յԱրծըկոյ հանդէպ ծովակին.
Զթմրեալս մեղօք ի յախտըս կրկին,
Յիշեցէք յաղօթըս ձեր վերըստին։

Հրատարակած է Կ. Կոստանեանց, Նոր Ժողովածու, Բ., էջ 16—19։

Տաղս կրկին խմբագրութեամբ հասած է մեզի, ընծայուած մին Յակոբ Արծկէացւոյ վերյիշեալ վերջարանով եւ երկրորդը՝ Գրիգոր Ախթամարցւոյ. կը գտնուի նաեւ անանուն։ Ա. խումբէն օրինակ մը աչքի առաջ ունեցած է Կ. Կոստանեանց[21] իր սեպհական 1695ին գրուած Տաղարանին մէջ։ Դժբախ-

[21] Նոր Ժողովածու, Բ., 19—20։

*տարբեր Կոստանեանց իր հրատարակութեան մէջ այս կրկին խումբերը ձուլած է ի մի, որով պայծառ չի տեսնուիր թէ ի՛նչ մասերէ կազմուած էր Արծկէացւոյ ընծայուած օրինակը: Արծկէացի ժամանակով երիցագոյն էր քան Աղթամարցին. եւ չունինք պատճառ իր անուան անհարազատ[22] համարելու տաղս: Աղթամարցին ապրած է Արծկէացի Նետրարենց Յակոբի ազդեցութեան տակ:*

9. *Ողբ ի մահն եղբօր իւրոյ Ղազար քահանայի* († 1491):

*Ղ. Վ. Փիրղալէմեան կը գրէ*[23] *թէ Յակոբ իր եղբօր մահուան առթիւ* «զմի ստացուց եղերական ողբս յօրինեալ է. *որոյ պատճէն կայ առ Արժ. Արիստակէս Տէր Սարգիսեան հայրենակիցն իմ»: Դժբախտաբար յառաջ չեն բերուած ողբին սկզբնաւորութիւնն եւ այլ մանրամասնութիւններ գրուածքին յօրինուածութեան վերաբերեալ:*

10. *Տաղ գարնան այնիւ:*

*Տուք օրհնութիւն Տեառն Աստուծոյ*
*Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն.*
*Որ զամենայն նա գոյացոյց*
*Փառք եւ պատիւ ետուր մարդոյն:*

---

[22] *Հ. Գ. Գատուրեան, Կոստանդին Երզնկացի եւ իր քերթուածները. Վենետիկ* 1905, *էջ* 185 *խօսելով Յակոբ Արծկէացւոյ վրայ կը գրէ. «Սա այն երգիչն է, որ ուրիշ անգամ Գրիգորիս Աղթամարցւոյ մի տաղը երգելով հոն իր անունը կու տայ Յակոբ Արծկէցի». Հմմտ. եւ Բազմավէպ,* 1905, *Թ.* 11:

[23] *Նօտարք* 219, *ծան.:*

Ըզարարածըս զարդարեց
Եւ հըրաման ետուր հողուն.
Բուսոյց հազար ըռանկ ծաղիկ,
Ցեղք ի ցեղաց եւ գունըզգուն:

Վարդըն խօսաւ ընդ պուլպուլին,
Քաղցրաբարբառ սիրուն թըռչուն.
Դու գեղեցիկ փետուր ունիս,
Թռչիր ի վեր կացիր արթուն: ...

Վարդըն բացւաւ ի պաղչանին,
Պուլպուլն եկաւ առաւօտուն,
Ուշաթափեալ խելագնաց,
Անկաւ նա ի վարդին սիրուն:

Պուլպուլն ետուր պատասխանի,
Թէ հարբեցայ վարդին հոտուն.
Խելքըս գընաց, յիմնէ թափաւ,
Ինչպէս ընեմ հետ քեզի հուն: ...

Վ. Ինձ ողորմի դուք ասացէք,
Երգող բանիս Յակոբ անուն.
Եւ դուք յիշիք ի Քրիստոսէ
Յորժամ հընչէ հողմըն բարուն:

Վերջին տունը, որ գրեթէ բառ առ բառ կրկնուած է Թ. 11 տաղին մէջ, չունի Զմմառու օրինակը. կը գտնուի միայն Երեւանի եւ Քիւրտեանի օրինակներուն մէջ: Տաղս, որուն ինձ մատչելի տուները Վիեննայի Թ. 671էն յառաջ բերի, կ'արժէր ամբողջութեամբ հրա-

տարակել: Այս եւ յաջորդ Թ. 11 եւ 12 տաղերը քով քովի կը գտնուին Զմմառու Թ. 172 ձեռագրին մէջ (կարգն՝ 11, 12, 10), հաւանօրէն իբրեւ մէկ հեղինակի գործ: Ստուգութեամբ կարելի չէ սակայն ըսել թէ անոնք Նետրարենցի կը վերաբերին, թէեւ հաւանական կ՚երեւայ:

Ձեռագիրք՝ Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 386, 7ա: Վիեննա, Մխիթ. Մատ. 671, 89ա (թերի): Քէչիչեան, Ցուց. Զմմառու վանուց, 172, 49ա—51ա (ԺԷ. անանուն): Բիւրատեան՝ Տաղարան յամէ 1678: Ծ. Վ. Սահակեան, Տաղարան, Թ. 2, էջ 77—82:

11. Տաղ գարնան:

Այսօր եղեւ պայծառ գարուն,
հոտըն բուրեաց անուշ վարդուն.
Ձայնըն քաղցըր գայ պլպուլուն,
եւ եղանակըն հաւերուն: ...

Վ. Ինձ ողորմի դուք ասացէք
երգող բանիս Յակոբ անուն.
Եւ դուք յիշէք ի Քրիստոսէ,
յորժամ գոչէ փողըն բարուն:

Ձեռագիրք. Վենետիկ, Մխիթ. Մատ. Տաղարան ԻԹ., էջ 213: Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 390, 38ա: Քէչիչեան, անդ, Թ. 172, 47ա (ԺԷ):

Հրատարակեց՝ Հ. Մ. Պոտուրեան, Կոստ. Երզնկացի, էջ 179—180. հմմտ. էջ 184—185:

Տաղս հետաւոր նմանութիւն միայն ունի Կոստանդին Երզնկացւոյ՝

Այսօր եղեւ պայծառ գարուն
Ցնծան ծաղկունք եւ յորդորին․․․

եւ Յովհ․ Թլկուրանցւոյ՝

Այսօր եղեւ պայծառ գարուն
Ցնծան ծաղկունքն ու զարդարին․․․

տաղերուն հետ, երկուքն ալ հրատարակուած Հ․ Մ․ Պոտուրեանէ, Կոստ․ Երզնկացի, էջ 110—118։ Պէտք է ընդունիլ, թէ «Յակոբ երգող» ծանօթ եղած է յիշեալ տաղերուն եւ անոնց ազդեցութեան տակ երգած է։

12․ Տաղ գարնան։

Այսօր է մեզ տօն խնդման,
ծաղկունքն ամենայն բացվան․
Պըլպուլըն կ'առնէ փիղան,
աւետիս կու տան գարնան․․․

վ․ Երգէ զրանիս ուրախութեան
վասն ցնծութեան մարդկան․
Յակոբ ասցողս անպիտան,
յիշման գիս առնէք արժան։

Ձեռագիրք․ Բէշիշեան, Յուց․ Զմմառու վանաց, Թ․ 172, 48ա (ԺԷ)։ Ծ․ Վ․ Սահակեան, Տաղարան Թ․ 3, էջ 115—117։

Համեմատէ սաոր հետ «տաղն գարնան եւ ուրախութեան»․

Ահա հօտըն գար գարնան.
Իւր տեսն երեւի խընդման.
Զինչ կայ պաղչայ, պօստան,
Ծաղկունք ամենայն բացուան...

ԺԳ. տունը կը սկսի.

Այսօր է մեզ տօն խընդման.
Հաւասար սիրելեացդ որ կան...

Հ. Մ. Պոտուրեան այս տաղը, զոր կը հրատարակէ միւսանգամ[24], կ'ուզէ վերագրել Կոստ. Երզնկացւոյ: Երկու տաղերու մէջ նմանութեան գծեր կան. եթէ ստուգիւ Կոստանդին է վերջնոյս հեղինակը, պէտք է զՑակոբ անոր ազդեցութեան տակ ենթադրել:

Կ'արժէր Նետրարենց Ցակոբ եպիսկոպոսի այս տաղերը խնամով ի մի հաւաքել եւ հրատարակել:

---

[24] Նախ լոյս տեսած Գ. Վ. Սրուանձտեանցի Մանանայի մէջ, էջ 277—279. ապա Կոստ. Երզնկացի, էջ 173—176:

## ԺԶ.

# ԽՐԱՏՔ ԱՆՈՒՇԸՐՈՒԱՆ (ՆՈՒՇԻՐՎԱՆ) ԹԱԳԱՒՈՐԻՆ

1. *Շահնամէի պարսկերէն թարգմանութեան Զ. հատորի Յառաջաբանին մէջ* (*էջ Ե*) *կը գրէր* Jules Mohl. *«Էջմիածնի Մատենադարանին մէջ կ'երեւայ թէ պահուած են Իմաստութիւն Նուշիրվանի, խորագրի տակ երկու հայերէն գրուածք. սոյնք հաւանօրէն պահլաւ գրքերու թարգմանութիւններ են, որպիսիներ Ֆիրդուսի ունեցած է աչքի առաջ»: Մոհլի այս տողերուն ուշադիր եղած էր մեր բարեկամը Ա. Սարուխան եւ կը հրաւիրէր ակնարկուած ձեռագրի վրայ բանասէրներու ուշադրութիւնը**:

*Ինձ կը թուի թէ Յ. Մոհլ նկատի ունեցած է Էջմիածնի Թ.* 126 *ձեռագիրը եւ այն՝ Յակոբ Կարենեանի հրատարակած Ցուցակէն*[1]: *Այս տեղ ցուցակագիրը տալով յիշեալ ձեռագրին բովանդակութիւնը կը գրէ* (*էջ* 8), *թէ կը պարունակէ Ստեփաննոս Լեհացւոյ «Աստուածաբանութիւնն». բայց ասոր նաեւ «Նախ նորին*

---

* *ՀԱՆԴ. ԱՄՍ.*, 1935, *էջ* 176:

[1] *Մայր Ցուցակ ձեռագիր մատենից գրադարանի Ս. Աթոռոյն Էջմիածնի: Թիֆլիզ* 1863:

թարգմանութիւն Առարկութեան Արիստոտելի. բ. Բանք Նուշրեվան թագաւորին. գ. Խօսք փիլիսոփայից» են: Ցուցակագրին «բ. բանք...» կ՚երեւայ թէ հասկցուած եւ թարգմանուած է «deux traités en arménien, sous le titre de la Sagesse de Nouchirvan»: Թ. 126 ձեռագրին մէջ այս երկրորդ հատուածին իսկական խորագիրն է. «Խրատք ի բանից թագաւորին Նօշրօվանի»: Դժբախտաբար ձեռագրիս ուսումնասիրութիւնը պիտի չարդարացնէ Մոհլի ենթադրութիւնը: Բայց եւ այնպէս հետաքրքրական է նիւթը եւ արժանի ուշադրութեան:

2. «Նօշրօվան» թագաւորի խրատները երկու՝ Ընդարձակ եւ Համառօտ խմբագրութիւններով հասած են մեզի: Ընդարձակն ծանօթ է ինձ երկու ձեռագիր. մէկն է Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի, Թ. 791, թղ. 166բ—170բ (ԺԶ.° դար) «Խրատ պիտանի եւ օգտակար ամենայն մարդոյ» խորագրի տակ. եւ երկրորդը Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Թ. 263, թղ. 43բ—49ա (յամէ 1628) «Պատմութիւն Նաւշրաւան թագաւորին» խորագրի տակ[2]. սկիզբն է. «Կայր թագաւոր մի պարսիկ...»:

Այս Ընդարձակ խմբագրութենէն ծաղկաքաղ եղած է Համառօտը, որ խորագիր կը կրէ «Խրատք ի բանից թագաւորին Նօշրօվանի» եւ կը սկսի «Ամենայն մարդ որ գիտէ զչափս ան-

---

[2] Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 832:

ձին իւրոյ՝ յինէն ողջոյն մատուցէք»: Ձեռագիրներ ծանօթ են՝ Երեւան, Պետ. Թանգարան Թ. 822, թղ. 208ա (1672). էջմ. Թ. 126, թղ. 173ա (ԺԸ.), Թ. 195, թղ. 153բ (ԺԷ.). Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 988, թղ. 1ա—3ա (1697, սկիզբէն պակաս): Կան ձեռագիրներ նաեւ Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարանը, որոնց համեմատ հրատարակուած է Սիոն, 1875, էջ 261—263 «Ի բանից Թագաւորին Նուշրէվանի»:

3. Այս Թագաւորը, որուն անունը ձեռագիրները պէսպէս աղաւաղութեամբ կը ներկայացնեն՝ Ա<նո>շրուան, Նուշրաւան, Նօշրօվան, Նուշրէվան, Ընդարձակ խմբագրութեան մէջ կ'անուանուի Յէզլ (Էզիլ, ար. عدل), այն է Արդար: Այս յորջորջմամբ ծանօթ է Սասանեան հզօր արքայն Խոսրով Ա. Կաւատի որդին, որ թագաւորեց 531—579 տարիներուն: Խոսրով ունի իր անուան կից յորջորջանքը՝ Anôšak rawân, Anošeh rawān, զոր Սեբէոս Է. դարուն կը տառադարձէ Անուշրուան, արաբ մատենագիրները՝ Անոշարուան, Ֆիրդուսի՝ աղմամբ՝ Նուշիրվան[3]: «Խոսրով Անուշարեւան, կը գրէ Շպիգէլ[4], կը պատկանի երանեան պատմութեան ականաւո-

---

[3] Անուանս մասին տե՛ս իմ Եղիշէ վարդապետ եւ իր Պատմութիւնն Հայոց Պատերազմի, Ա.: Վիեննա 1932, էջ 255—256:

[4] Fr. Spiegel, Erânische Altertumskunde, III. Leipzig 1878, էջ 460—461:

րագոյն անուններուն ... անիկա կը փառաբանուի իբրեւ Արդար Թագաւոր[5]»: Խոսրով Անուշրուան իրանեան աւանդավէպի մէջ ըմբռնուեցաւ իբրեւ գաղափարական Թագաւոր. նոյնպէս երեւակայեց զինքը արաբական աշխարհը:

4. Խրատներու հայերէն թարգմանութիւնը կ՚ենթադրէ արաբերէն բնագիր մը: Արաբերէնն ալ իր կարգին խմբագրուած է պահլաւերէն սկզբնագրէ մը: Կայ պահլաւ գրականութեան մէջ Խոսրով Ա.ի անունով Կտակ մը[6], *Andarž i anôšakrovân Xusrov i Kavâdân*, այն է Անդարձ անմահ Խոսրովու որդւոյ Կաւատայ: Կտակին մէջ կու տայ մահուան մահամերձ Խոսրով իւր խրատները ժողովրդեան: Անոնք հայերէն «Թագաւորութեան խրատներու» հետ մերձաւոր աղերս մը չունին: Ֆիրդուսի[7], Մասուդի[8] եւ Թա՚ալիբի[9] յառաջ կը բերեն յանուն Խոսրովի այլ եւ այլ խրատներ,

---

[5] Այս յորջորջանքը նաեւ Մահմետի բերանը դրուած է. Nöldeke, Tabari, 161 ծն.:

[6] Ունիմ աչքի առաջ C. Salemannի հրատարակած պահլաւերէն բնագիրն եւ գերմաներէն թարգմանութիւնը, Mélanges Asiatique, 9 (1887), 242—246: Այս եւ յաջորդ աղբիւրներն ուշադրութեանս յանձնեց ուսուցչապետ A. Christensen ի Կոպենհագէն, որուն կը յայտնեմ շնորհակալիքս:

[7] Շահնամէ, թարգմ. Mohlի, հատոր Ե.:

[8] Maçoudi, Les Prairies d’Or, publiés par Barbier de Meynard, II, 204—210.

[9] Histoire des Rois des Perses par Al-Tha‘âlibî, ed. Zotenberg, Paris 1900, էջ 606 եւն:

զորոնք տուած է Թագմաժառանգ Որմիզդ Դ.ի եւ ժողովրդեան. ասոնք տեղ տեղ նման կը հնչեն վերոյիշեալ Կտակին, նաեւ մեր խրատներուն, բայց նոյն չեն: Թէ հին աշխարհը ո՞րքան խրատամբ վերագրած է այս եւ նման խրատներն արդարամտուն Նուշիրվան Խոսրովի, չեմ ուզեր հոս մանրակրկիտ հարցաքննութեան նիւթ ընել. անդրագոյն հետազօտութիւնը կը թողում պահլաւագէտ եւ արաբագէտ մասնագէտներու:

Խրատներուս հայերէն թարգմանութեան սկիզբը կայ Մուտք մը, ուր կ'ըսուի թէ «կայր թագաւոր մի պարսիկ, անուն նորա Ա<նո>շրուան յէգլ: Եւ ունէր թագ մի ոսկի. եւ յայն թագն էր շինած ԻԲ թարկ: Եւ գրած էր յամէն թարկ տասն բան... լուրջ աղուլթ ակամբ եւ բացած զմրուխտամբ»: Այս քանիերկու անգամ տասը «բաները» կը նկատուին «խրատ թագաւորութեան», զորոնք թագաւորը, ամէն անգամ որ ձի պիտի նստէր թագ ի գլուխ, նախ ի լուր իւր նախարարներու կը կարդար եւ ապա կը դնէր գլուխը:

Խրատներու համագումարն էր 22×10 = 220: Այս թիւը հայերէն թարգմանութեան մէջ, գոնէ ինչպէս կը ներկայացնէ զայն Վիեննայի Թ. 791, ամբողջութեամբ չէ պահուած. կը պակսի հոն 28 վճիռ. հետեւեալ բաժանմամբ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Ա· | 7· | Թ· | 8· | ԺԷ· | 8· |
| Բ· | 8· | Ժ· | 6· | ԺԸ· | 10· |
| Գ· | 9· | ԺԱ· | 9· | ԺԹ· | 10· |
| Դ· | 10· | ԺԲ· | 9· | Ի· | 9· |
| Ե· | 7· | ԺԳ· | 9· | ԻԱ· | 7· |
| Զ· | 9· | ԺԴ· | 9· | ԻԲ· | 11· |
| Է· | 9· | ԺԵ· | 9· | | |
| Ը· | 9· | ԺԶ· | 10· | | |

*Համագումարն է* 192 *վճիռ, փոխանակ* 220*ի. ուստի դուրս ինկած է* 28 *վճիռ. թարգմանչէ՞ն յապաւուած, թէ օրինակողներէն զանց առնուած:*

5· *Խրատներս միանալով համանիւթ գրուածքներու հետ, կը յիշեմ Բանք Իմաստասիրաց, Սեկունդոս, Սեքստոս, Խիկար, Ագապետոս, Եւագր, Նեղոս, կը կազմեն հայ մատենագրութեան մէջ ուրոյն գրական բաժին մը: Թէ անոնք արթնցուցած են հետաքրքրութիւն հայ ընթերցողներու մէջ, կը տեսնուի այն Ծաղկաքաղէն, որ հանուած է «ի բանից Թագաւորին Նօշրօվանի», զոր յիշեցինք վերագոյն: Այս Ծաղկաքաղը թէպէտ շատ տեղեր կը խոտորի Ընդարձակէն, բայց առանց տարակուսի քաղուած է անկէ: Անծանօթ խմբագիրը առանձին փոյթ տարած է Ընդարձակին ռամկաբանութիւնները գրական լեզուի վերածել եւ անոր մութ տեղիքները լուսաբանել. կան վճիռներ, որոնք նոյնութեամբ առնուած են. կան նաեւ այնպիսիներ, որոնք անճանաչելի ըլլալու չափ փոփոխուած են:*

Համառօտ Ծաղկաքաղին մէջ կը տեսնուին վճիռներ ալ, որոնք կը պակսին Ընդարձակին: Այսպիսիները ուրի՞շ աղբիւրէ առնուած են, թէ փոփոխակներն են Ընդարձակին եւ կամ անկէ դուրս ինկած մասերն են: Թէ խմբագիրը օտար աղբիւրէ ալ վճիռներ մուծած է իր Ծաղկաքաղին մէջ անուրանալի է. Վիեննայի Թ. 988 կ՚ընծայէ ի կատարածին խումբ մը վճիռներու, որոնք յայտնապէս ուրիշ աղբիւր կ՚ենթադրեն: Կը կարծեմ սակայն թէ Ծաղկաքաղին ինչ ինչ վճիռները, որոնք կը պակսին այժմ Ընդարձակին մէջ, նախնաբար անոր մասերն եղած ըլլան: Նկատի առնելով այս հանգամանքը իբրեւ յաւելուած կը հրատարակեմ այդ՝ Ընդարձակին պակսած վճիռները: Ապագային կը թողում հաստատել ձեռագիրներու բաղդատութեամբ, թէ անոնցմէ որո՞նք իրօք Ընդարձակին մասերն եղած են:

6. Արաբերէն սկզբնագրի մը հետքերը հայերէն թարգմանութեան մէջ գտալի են: Կան բազմաթիւ արաբերէն բառեր, որոնք նոյնութեամբ փոխ առնուած են թարգմանչէն: Թարգմանութիւնը ըստ ամենայն հաւանականութեան ի գլուխ ելած է Առաքել Անեցւոյ եւ Ընկերներու ձեռքով, որոնք Երազահանի մը թարգմանիչն եղած են 1222ին Անի քաղաքին մէջ, արաբերէն բնագրէ: Ժամանակի համար յետնագոյն եզր պէտք է առնել 1310: Վիեննայի Թ. 791 ձեռագիրը, ուր պահուած է խրատներուս հնագոյն օրինակը, Մովսէս

Երզնկացւոյ կազմած Ոսկեփորիկը կը ներկայացնէ, խմբագրուած 1310էն յառաջ։

Ինչպէս Երազահանի, նոյնպէս այս Խրատներուս Թարգմանիչը կիրարկած է ռամկօրէն բառերու մր. Հ. Բ. Սարգիսեան կը գրէր, թէ գրուածքս «միջնադարեան ռամկօրէնով Թարգմանուած է, ուր կան պատմուածք (խմա՝ վճիռք) նորակերտ եւ ուշագրաւ բառերով եւ բացատրութեամբք» (Ցուցակ, էջ 832)։ Այս տեսակէտէ կ՚արթնցնէ գրուածքս առանձին հետաքրքրութիւն։ Պէտք է ըսել թէ յաջողած է Թարգմանչին շատ տեղ ճարտարութեամբ հայացնել վճիռները, որոնք առածի նկարագիր ստացած են։ Բայց կան մութ տեղիքներ ալ, անյաջող վճիռներ ալ։

7. Կ՚ամփոփեմ այս տեղ օտար բառերն եւ ապա ռամկօրէններէն ինչ ինչ։

Աբլահ, Ը. 2, ար. ابله, ապէտ, պարզամիտ։
Աղուբ, ար. ياقوت, պահլ. yakand, յակինթ։
Ապրահ, Բ., պ. آبراه, ջրմուղ, ջրանցք. Համազօրն է բարկ բառին։
Արաղ, ԺԸ. 1, ար. عرق, օղի։
Արղապ, ԺԶ. 7, ար. ارغاب, ցանկութիւն, տենչ։
Դարպաս, Զ. 2, պ. դարվա՛զէ. Հմմտ. Աճառեան, Արմատ. Բառարան, Բ. 444։
Ըէդլ, էդիլ, ար. عدل, արդար, իրաւախոհ։
Թաղբիր, բաղբիր, ար. թէտպիր. կարգ, խորհուրդ եւն։

Թարկ, ար. طريق, ճանապարհ, ուղի, անցք, համազօր ապրահի:

Խիլաք, Թ. 5, ար. حيلة (հիլէթ) նենգութիւն, խաբէութիւն, խարդախութիւն:

Խամուր, պ. եւ ար. خمار, արբշիռ:

Խրբճալ, «յորբերդ իրք մի խորհաք», ԺԶ. 6. ար. خرب խարբ. արմատէն, գողնալ, կորզել:

Հալալ, ԺԷ. 3, ար. حلال, արդար:

Շառ ձգել, Ժ. 6, ար. شر, կագ, կռիւ, թշնամութիւն:

Թամկօրէն բառերէն կը յիշեմ.

Աղահատ, Է. 1, ագատագուտ, ագահանք. Համառօտը կը կարդայ հողահատ:

Անհարկ, «հետ անհարկից ոչր մի գնէք», Է. 5. անկարեւոր, աւելորդ իր. հոս թերեւս լաւագոյն՝ «անպատիւ». տե՛ս հարկիք:

Առոյժ, «ընդ առուժն մի հեշտ կատակէք», ԺԹ. 9:

Դեկան, «ընդ դեկնով գենածքն (մխասուածին) կռիւ մի առնէք». Է. 7. դեկան, դահեկան, դրամ:

Թլահել, ԺԲ. 2, անարգել. Աւձեան Բառարան ունի թլահ առնել, արհամարհել, անարգել:

Կանգ. «երբ քո բախտն ի կանգ է». ԺԹ. 2. կանգնիմ բայէն արմատը. երբ բախտդ յաջող է:

Հարկիք, հարկեւոր, ԺԷ. 5. արժէք, պատիւ, պատուաւոր:

Ձեւել, *ԺԸ·* 3, *երեւցնել, կերպարանել*:
Ճաճաչաւոր, *Բ·* 6, *ծանօթ շրջանէ մարդ*:
Մօտեւոր, *Բ·* 6· *մերձաւոր շրջանէ մարդ*:
Միհետ (°), *ԺԲ·* 7, *մէկգլո՞ւխ*:
Տճտղեմ, *ԺԴ·* 9, *լաւ խորհիլ*:
Փաթթիմ, *ԻԲ·* 7, *գիրկընդխառնուիլ*:
Քիթ ի վեր կեճամ· *«ի հետ ողորդ սիրելեաց քիթ ի վեր մի կենայք»· ԺԲ·* 6:
Քճքշամ, *Է·* 6, *թախանձել, մուրալ*:
Քուսեմ, քսեմ, քսմոս, *ԺԵ·* 5, *Ի·* 9, *Է·* 6:

8· *Մեր հրատարակութեան համար բնագիր առնուած է Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ·* 791, *Թղ·* 166 *բ*—170 *բ· գրուած ԺԶ· դարուն ի ձեռն Վարդան Ղարասուեցի երէցի* = A: *Համեմատութեան առնուած է առաջին երեք տողերու եւ վերջաւորութեան համար Վենետիկի Մխիթ· Մատենադարանի Թ·* 263, *ըստ յառաջբերութեան Հ· Բ· Սարգիսեանի, Ցուցակ, էջ* 832: *Ծանօթութեանց մէջ զետեղած ենք Համառօտ խմբագրութեան համապատասխան վճիռները, երբ խառնուած են անոնք բնագրէն· այլապէ միայն նոյնութիւնը ակնարկած ենք* = B· *Կից նշանակուած թուանշանները Վիեննայի Թ·* 988 *ձեռագրին յաջորդական հատուածաթուերը կը յարաբերեն, ըստ մեծի մասին համընթաց Ս ի ո ն ի օրինակին հետ* (= S):

*Վիեննայի Թ·* 791, *Թղ·* 170*բ Խրատներէս վերջը զետեղած է վճիռ մ'ալ յանուն «Բեղուբաթ» Թագաւորին, այն է Կաւատ արքային,*

*Հայրը Խոսրով Ա. Անուշըրուանի: Կարեւոր համարեցանք հրատարակել զայն Անուշըրուանի խրատներուն կից:*

## ԱՆՈՒՇՐՈՒԱՆ ԹԱԳԱՒՈՐԻ
## ԽՐԱՏՔ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ

*Կայր թագաւոր մի պարսիկ, անուն նորա Ա<նու>շրուան յէգլ: Եւ ունէր թագ մի ոսկի. եւ յայն թագն էր շինած ԻԲ թարկ: Եւ գրած էր յամէն թարկ Ժ. բան, որ էր խրատ թագաւորութեան: Եւ յորժամ կամենայր հեծնուլ թագաւորն, առնոյր զթագն զայն եւ կարդայր առաջի իւր իշխանացն: Եւ հրամայէր թէ հասկացէք եւ ի միտ առէք զխրատս զայս, որ է պէտք հոգոյ եւ մարմնոյ: Եւ ապա դնէր ի գլուխն եւ հեծնոյր:*

*Եւ էր գրած լուրջ ազուլթ ակամբ եւ բացած զմրուխտամբ:*

*Ա. Յառաջին թարկն գրած էր.*

1. *Զանձնահաճ մարդն յիմնէ ի պատ պահեցէք:*
2. *Արժանաւորացն ի յիմ զանձէն բաժին տուք:*

Խորագիր. *Խրատ պիտանի եւ օգտակար ամենայն մարդոյ* A. *պատմութիւն Նաւշրաւան թագաւորի* V. Համառօտ խմբագրութիւնը՝ *Խրատք ի բանից թագաւորին Նօշրօվանի* BCD *ի բ. թ. Նուշըրէվանի* S:

Մուտք. 1. *եւ անուն* V: — *Աշրուան* A *Նաւշրաւան* V *էգիլ* V: — 2 *այն* V: — 3 *ամէն թարկի* V: — 7 *ապայ* A: — 8 *զմրուխամբ* A իմա՝ *զմրուխտ ակամբ*:

Վճիռք. *Ա.* 1 *յինէն* $B^3$: — 2 *հանեցէք* $B^2$:

3․ Զանգիտելին մի փնտրէք:

4․ Ի բաներն մի՛ արտորայք:

5․ Զբանն ի ժամէ ժամ մի ձգէք:

6․ Զամէն բան Թադբրով արարէք:

7․ Ի խրատէ մի՛ գրնիք եւ մի գարշիք:

Բ․ Յերկրորդ ապրահն գրած էր․

1․ Ի բանին սկիզբն եւ ի կատարումն հայեցարուք:

2․ Յամէն բան որ մտանէք, յառաջ զելն իմացէք:

3․ Զամէն բան եւ զկտաւն տասն չափեցէք եւ ապա կտրեցէք:

4․ Զփորձածն մի փորձէք:

5․ Զփորձածն յանփորձն մի տայք:

6․ Զմարդ որ չէք փորձել՝ ընդ նմա մի վարիք:

7․ Զխոստումն որ ի ձեզ՝ մինչեւ ձեր անձդ մի խնայէք:

8․ Սակաւ խոստացէք եւ աւելի կատարեցէք:

3 Եւ որ անընին է՝ մի ընէք B[5]: — 4 արտաորայք A: — Եւ յամենայն իրս ստիպումն մի արկանէք B[6]: — 6 Զգործ ժամուն մի անցուցանէք B[77]:

Բ․ յերկու A: — 2 Յամենայն գործս յոր եւ կամիք ձեռն արկանել, զսկիզբն եւ զկատարումն նորին ընեցէք B[7]: — 3 Զամենայն կտաւ եւ զբան տասն անգամ․․․ B[28]: — 4 Զփորձեալն մի եւս դարձեալ փորձէք B[9]: — 5 Եւ զփորձեալն ընդ անփորձին մի փոխանակէք B[10]: — 6 Ընդ անփորձ մարդոյ զօտէմարտութիւն մի առնէք B[11]: — նմայ A:

Գ. Յերրորդ թարկն գրած էր.

1. Անուանի եւ խոնարհութեան արուեստ ուսիք:
2. Զճշմարտութիւն ձեզ արարէք արուեստ:
3. Զկարողութեան հարկիքն գիտացիք:
4. Զհամբերող մարդն ճանաչեցէք:
5. Զայս կեանքս մի օր գիտացիք:
6. Զառողջութեան հարկիքն իմացիք:
7. Զձեր կեանքդ անգիտութեամբ մի անցուցանէք:
8. Յայլոց տրտմութիւն մի խնդայք:
9. Ընդ կորածն, ընդ գնացածն, ընդ այրածն, ընդ վայթածն մի տրտմիք:

Դ. Ի չորրորդ թարկն գրած էր.

1. Ի մեծամեծաց որոգայթն կծեցարուք:
2. Զենի ժամն լաւ գիտացիք քան զայլ ժաման:
3. Մարդկաց ամէն իրաց համբերեցէք:
4. Ի տեղի որ համբերել պիտի, մի՛ ըշտապիք:
5. Հետ ամէն մարդոյ հաշտ կացէք:
6. Ի բաներն ոխակալ մի լինիք:
7. Ամէն մարդ թող զիւր չափն իմանայ:

Գ. յերեք A: — 7 անցընէք B[29]: — 9 Վասն բեկելոյն եւ այրեցելոյն եւ տուրս շնորհելոյն յետոյ մի տպաշաւէք B[13]:

Դ. 7 զիւր չարքն (թերեւս նախնաբար գրուած՝ չաքն = չափն) A: Հմմտ. «Ամենայն մարդ, որ գիտէ զչափս անձին իւրոյ, յինէն ողջոյն մատուցէք» B[1]:

8· Զոտներտ քան զձեր չափն մի մեկնէք:
9· Ի պատերազմ երես մի դարձուցանէք:
10· Զայլոց կռիւ ձեր անձինդ մի առնուք:

Ե· Ի հինգերորդ ապրահն գրած էր·

1· Զկռիւն միջակ արարէք:
2· Զբաներն համբերութեամբ արարէք:
3· Զծախն ի մտոյն վերայ արարէք· եւ անթիւ եւ անհաշիւ մի հանէք:
4· Սկիզբն նոր տնկոյն արարէք· եւ ապա զհինն խլեցէք:
5· Զերեւելի զգայարանս ձեր պատրաստ պահեցէք:
6· Յանպատեհ բերանոյն պատրաստ եւ ի դատ կացէք:
7· Ի մէջ մարդաձայնի եւ յանուանի վատանուն մի լինիք:

Զ· Ի վեցերորդ թարկն գրած էր·

1· Ի գողերոյ ընչիցն մի շահիք:
2· Յեզր թագաւորի դարպաս մի չինէք:
3· Ի ձեր բնակութեան տեղւոյն մօտ հանութ մի չինէք:

10 Զայլոց կռիւ ի ձեր անձնդ մի առնույք (առնուք S) եւ մի կռուիք B30:

Ե· 1 եւ համբերելով արարէք B31: — 3 Անհաշուարար առ ամենայն գործս ձեռն մի արկանէք B73: — 4 տնկելոյն B32 ապայ A:

Զ· 2 Ի դրացութիւնս թագաւորի տուն մի չինէք B17: — 3 զձեր A մօտ ի A Ի դուռս տանց ձերոց խանութս մի դնէք B19:

4. Ի պիղծ եւ յանպատեհ թաղուց ի զատ կացէք։
5. Որք անխրատք են թող իշխանաւորի ծառայութիւն չառնեն։
6. Անընկեր ի ճանապարհ մի երթաք։
7. Անարժանիցն մի խոնարհիք։
8. Հետ չարկամացն մի դատիք։
9. Յօտար հող ծառ մի տնկէք։

Է. Ի յեօթներորդ թարկն գրած էր.

1. Յաղահատ տեղք սերմն մի ցանէք։
2. Ի հետ անարժան մարդկաց մի նստիք։
3. Հետ ամէն ազգ մարդոյ մի փաթթիք։
4. Փոխ ի նորքսակ մարդոյ մի առնուք։
5. Հետ անհարկից սէր մի դնէք։
6. Ի քսմոս մարդկաց հաւատք եւ աղուհաց մի քնքշաք։
7. Ընդ դեկնով զենածքն կռիւ մի առնէք։
8. Որ չամաչէ եւ չվահի՝ ի յիւրմէն ի զատ կացէք։
9. Հետ չտեսած մարդկացն լոյս սէր մի դնէք։

Ը. Ի յութերորդ թարկն գրած էր.

1. Որ ի մօրէն ցաւ եւ յիմար ծնանի, իւրենն դեղ մի առնէք։

6 անուղեկից B[22]: — 9 ծառ եւ բոյս B[33]:
Է. 1 Հողահատ տեղիք սերմն մի ձգէք B[34]: — ի նորեկուկ մարդուէ պարտս մի առնիցէք (առնէք S) B[8]: — 7 Առ արծաթագին ծառայս կռիւ եւ աղմուկ մի առնէք B[23]: — 8 Ով ոք յառականաց եւ ի նախատանաց ոչ երկնչի՝ ի նմանէ հեռագոյն կացէք B[23]:

2· Աբլահ մարդուն ու խումարին ու հարբածին խրատ մի տաք։

3· Դուք զձեզ մեծ մի տեսնուք։

4· Ի լեզուանի կնոջէ պատրաստ կացէք։

5· Ով որ զխրատն ճանաչէ եւ սիրէ՝ այնոր տուք։

6· Զուտելն եւ զխմելն մի սիրէք։

7· Ձեր հնազանդելոյն ուժ մի առնէք։

8· Ցանպատեհ պատճառէ զծառայն մի ծեծէք։

9· Ցայլոց հաց աչք մի ձգէք։

Թ· Ի յիններորդ թարկն գրած էր·

1· Զձեր հացն յայլոց սեղան մի դնէք։

2· Երբ որ զձեր հացն ուտէք՝ զձեր զրուցն տուք։

3· Ի տղայոց թըդբիր մի առնուք։

4· Զօտար կին եւ զպառաւ ի ձեր տունն մի թողուք։

5. Ի չար կնոջ խիլաթէ պատրաստ կացէք։

6· Զձեզ ծառայ մարմներոյդ մի առնէք։

7· Ընդ դատերաց մահ մի տրտմիք։

Ը· 2 Տգիտաց եւ դիւահարաց եւ արբեցողաց խրատ մի տայք B[71]։ — 4 Ի յանզգամ կնոջէ պատրաստ եղերուք (պատրաստեցարուք S) B[72]։ — 8 Սակաւ վնասիւ զհաւատարիմ ծառայս ի վայր մի ընկենուք B[27]։

Թ· 3 Ընդ մանկունս խորհուրդ մի առնէք B[25]։ — 4 ի տուն B[35]։

B· 2 Զօտար իրքն (օտար իրաց սակս S)··· B[37]։ — 3 Ցայլում տան տանուտիրութիւն մի առնէք B[12] (չունի S)։ — 6 ի մէջ այր եւ կնոջ եւ եղբարց ատելութիւն մի ձգէք B[36]։

8. Ի յօտարն մի վստահանայք զերդ ի փորձածն:

Ժ. Ի տասներորդ թարկն գրած էր.

1. Զիգերն յորձերն ի պահ մի տաք:
2. Յօտար իրքն աւելի քան զտէրն մի սրտացաւիք:
3. Յօտար մարդոյ տուն տանտրութիւն մի առնէք:
4. Զայլք ի ձեր տունն տանուտէր մի դնէք:
5. Այն մարդիկքն որ զայս կեանքս առեն եւ արհամարհեն, դուք զիւրեանքն մի առէք եւ արհամարհէք:
6. Ի մէջ այր եւ կնոջ, ծառայի եւ ազատի չառ մի ձգէք:

ԺԱ. Ի մետասաներորդ թարկն գրած էր.

1. Առ թագաւորն պատրաստ եւ ահարկու կացէք:
2. Թագաւորն թէպէտ խոնարհի՝ դուք մի համարձակիք:
3. Իշխանաւորք երբ սակաւ սէր ցուցանեն, զինքն մեծ սիրեցէք:
4. Ի յոխակալ մարդկաց ի զատ կացէք:
5. Զամէն մարդոյ հարկիք իմացէք:
6. Ընդ բախտաւորքն մի նախանձիք:
7. Ընդ իմաստունք մի վանիք:

ԺԱ. 2 թէպէտ եւ $B^{39}$: — 3 իշխանաւոր... ցուցանէ... $B^{40}$: — 6 Ընդ բախտաւորք (—ն S) եւ ընդ դօլ-վաթաւորք (—ն S) մի նախանձիցիք (նախանձիք S) $B^{41}$:

8· Որ տէր է գրչի եւ իմաստութեան քարտօղարի, գնոսա թեթեւ մի տեսնուք, այլ լաւութիւն արարէք:

9· Ի բանաստեղծ մարդկաց պատրաստ կացէք:

ԺԲ. Ի յերկոտասաներորդ թարկն գրած էր·

1· Իսկի զմարդ մի թլահէք:

2· Զմեծամեծք տեսէք մեծ:

3· Զխարբէութիւն կորեցէք, որ անհոգք կենաք:

4· Հետ ժլատ եւ ոչինչ մարդկաց մի դատիք:

5· Զհօր եւ զմօր հարկիքն մեծ տեսէք:

6· Ի ծերոց ի մօտաւորութենէն մի կորիք:

7· Ի միհետէ մարդոյ մի տաք զձեզ կլանել:

8· Զերդումն եւ զպայմանն մի կոխէք:

9· Անկոչել ի մարդոյ պատիւ մի երթայք:

ԺԳ.Ի յերեքտասաներորդ <թարկն> գրած էր·

1· Զամենայն աւուրս ձեր խրատիւ եւ իմաստութեամբ վարեցէք:

2. Թէպէտ եւ դուք չարք լինիք՝ զաղէկն սիրեցէք:

8 Ո (որ) A: Որ տէր է գրչի եւ իմաստութեան, գնոսա թեթեւս (թեթեւ S) մի տեսնուք (տեսանէք S) B[45]: — 9 մարդկաց (մարդկանց S) B[47]:

ԺԲ. 8 զպամանն A: — 9 Անհրաւիրակ հիւր ումեք մի լինիջիք (լինիք S) B[75]:

3. Իսկ եթէ աղէկ լինիք՝ զչարն մի բամբասէք:

4. Վատ մարդկացն յիւրեանց սուտն մի օգնէք:

5. Ի սիրելոյ եւ ի չարկամէ զգութն մի վերացնէք:

6. Ի հետ մահու պիղծ գիր մի գնէք:

7. Ձեզ ուսում ու խելք ուսիք:

8. Ի խրատէ մի զրնիք:

9. Վասն մարդկան քան զբարին այլ իրք մի ասէք:

ԺԴ. Ի չորեքտասաներորդ <Թարկն> գրած էր.

1. Որ քան զքեզ աղէկ է եւ գիտէ՝ մեծ տես:

2. Իսկ այլ իրաց քան զիմաստութեան խնդրողք մի լինիք:

3. Իմաստունքն քանի հեռի են, առ իւրեանքն մօտեցուք:

4. Զանցած ժամանակ հետ մի համարիք:

5. Զինչ յաստըւորէ չունիք, ի մարդկանէ մի քնքշաք:

6. Զձեր անհոգութիւն ի լեզուոյ պատրաստելոյն իմացէք:

7. Թէ զանհոգութիւն ուզէք՝ զճշմարտութեան արուեստ ուսիք:

8. Իրք որ ի պահ առնուք եւ ի փոխ՝ վճարեցէք:

ԺԴ. 6 յիմացէք A:

9. Խօսք որ չէ ի խելայ՝ տնտղեցէք եւ ապա ասացէք:

ԺԵ. Ի հնգետասաներորդ <Թարկն> գրած էր.

1. Խօսք որ աւելորդ չէ՝ մի ասէք:
2. Անպատեհ խօսից պատասխանի մի առնէք:
3. Զլեզուներդ ի չար ասելն մի սրէք:
4. Պիղծ խօսից միտ մի դնէք:
5. Թագաւորաց քուսելոյ մտիկ մի անէք:
6. Զինչ լսէք պատասխանի՝ լուռ կացէք:
7. Զինչ բան որ չգիտէք՝ մի ասէք:
8. Զասելն քան զառնելն աւելի մի առնէք:
9. Զինչ լեզուովքդ պիղծ խօսիք, թող ի սրտերդ չկենայ:

ԺԶ. Ի վեշտասաներորդ <Թարկն> գրած էր.

1. Ամենայն մարդոյ խօսք մի վստահանաք:
2. Զբարի խօսքն յամենայն մարդոյ ընդունեցէք:
3. Ոչ ճշմարիտ եւ ոչ սուտ ամենեւին մի երդնուք:
4. Զայն կեանքն ընդ կեանս մի փոխէք:
5. Մարդոյ եւ ընկերի զայն կամեցէք զինչ ձեր անձինդ ուզէք:

ԺԵ. 1 Ամենայն ինչ որ անպատշաճ է, մի խօսիք $B^{4}$: — 4—5 Պիղծ խօսից (—ն S) պիղծ պատասխանի մի տայք $B^{50}$: — 6 լուր A:

ԺԶ. 1 Յամենայն մարդ (մարդոյ S) խօսք (խօսս S)... $B^{51}$: — 2 Յամենայն մարդոյ զբարի... $B^{49}$:

6. Յորբերդ իրք մի՛ խորհաք:
7. Արդարք մի սիրէք որ հանդիստ կենայք:
8. Այն յերկար ճանապարհին պաշարս ճարեցէք:
9. Ի կորճութեան ժամն զծերութիւն ի միտ ածէք:
10. Զծերութեան բանն ի կորճութեան ժամն հոգացէք:

ԺԷ. Յեօթնեւտասներորդ թարկն գրած էր.

1. Ի ժլատութենէ փախիք:
2. Յառատութենէ արուեստ ուսիք:
3. Զսկիզբն առատութեան ի ձեր հալալ արդեանցն արարէք:
4. Զմարդոյ կերպն ճանաչեցէք:
5. Սէր հետ հարկեւորացն դիք:
6. Ի ցածէն եւ յանպէտէն խնդիրք մի խնդրէք:
7. Հետ ամէն մարդոյ սէր եւ մօտաւո– րութիւն ըստ ժամանակին դիք:
8. Զպարտականն պինդ բռնեցէք. բայց խիստ թոյլ մի թողուք:

ԺԸ. Յութեւտասներորդ <թարկն> գրած էր.

1. Զձմռան արաղն ամառն հոգացէք:
2. Զայս աւուր բանն ի վաղն մի ձգէք:

9 ի տղայութեան ժամանակն (ժամն S) զծերութիւնն ի միտ ածեցէք $B^{58}$: — 10 Եւ... ի տղայութեան ժամն... $B^{59}$:
ԺԷ. 6 = $B^{52}$: — 7 = $B^{48}$: — 8 Պարտականն... բայց խիստ թոյլ... $B^{55}$:
ԺԸ. 2 Այս (յայսմ S) աւուր... $B^{56}$:

3· Բան որ եղծած չէ, զերդ գեղծած մի ձեւէք:
4· Զդեղն յառողջութեան ժամու խմեցէք:
5. Զարիւնն յիւր ժամու յանձներոյդ հանէք:
6· Երբ ծեր լինիք՝ կորճութեան մի ցանկայք:
7· Զամենայն ինչ թադբրով արարէք զինչ որ էնէք:
8· Զբանն ի բանագէտն վստահացիք:
9· Ամէն իրաց չուտ մի ատաք:
10· Զձեր ընդանիքն սիրեցէք:

ԺԹ. Ցիննեւտասներորդ <Թարկն> գրած էր.

1· Ի հետ ողորդ սիրելեացն քիթ ի վեր մի՛ կենաք:
2· Երբ քո բախտն ի կանգն է, զքո սիրելին յայնժամ յիշէ:
3· Զքո թշնամին խիստ մի արհամարհել:
4· Ցիմաստուն թշնամւոյն մի խիստ արհամարհել եւ մի երկնչել:
5· Զանգէտ սիրելին մեծ թշնամի գիտացիք:
6· Ի թշնամութեան ժամու սիրոյ տեղիք պահեցէք:
7· Ի սիրելութեան ժամու զթշնամութիւն յիշեցէք:
8· Ծուլութեան արուեստ մի ունիք:
9· Ընդ առուժն մի հեշտ կատակէք:

4 = B[57]:

ԺԹ. 4 Ցիմաստուն թշնամոյն մի վախէք B[67]: — 5 = B[66]: — 6 = B[62] ժամու (ժամանակն Տ)… տեղ B:

10. Զձեր սիրելին յաղքատութեան ժամու խնդրեցէք։

Ի. Ի քսաներորդ <Թարկն> գրած էր.

1. Հետ գէշ աւուրն մի զիջանաք։
2. Ամէն մարդ յիւր չափ վայելեցէք։
3. Աստըւորս խաղաղ թող չթուի ձեզ։
4. Զհողեստանոյդ բաժինն ի մարմնաւորս մի մոռանաք։
5. Զտղայքն հնարութեամբ ուսուցէք արուեստ։
6. Զձեր կերպն որպէս էք՝ ի սիրելեաց եւ ի թշնամեաց ծածուկ պահեցէք։
7. Զմարդկաց խորհուրդ պահեցէք։
8. Զձեր խորհուրդն մարդկաց մի տաէք։
9. Ի տեղի որ քսել կենայ՝ ականջ մի դնէք։

ԻԱ. Ի քսաներորդ առաջնորդ <Թարկն> գրած էր.

1. Զձեր խորհրդակիցն ի ժամանակի բարկութեան փորձեցէք։
2. Զկին եւ զորդի ի ժամանակ աղքատութեան մի ուրանաք։
3. Առ մեծամեծք աչք ի բաց կացէք հանապազ։
4. Զամենայն իրք զհերիքն սիրեցէք։

Ի. 8 = $B^{63}$ խորհուրդն (S —ս) մարդոյ B։
ԻԱ. 3° Ի մեծամեծաց երկիւղիւ կացէք $B^{42}$։ — 4 Ամենայն իրաց զհ. ս. $B^{65}$։

5· Զհպարտութիւն քան զմահ այլ զատն իմացիք:

6· Զանհոգութիւն ձեզ կենդանութիւն գիտացիք:

7· Ընկեր զայն սիրեցէք, որ յիւրմէն իրք մի չահիք:

ԻԲ. Ի քսաներորդ երկրորդ <Թարկն> գրած էր·

1· Ի ժամանակ անհոգութեան քան ի նեղութեան այլ խիստ պատրաստ կացէք:

2· Յառատութեան ժամն հոգացէք մեծապէս զԱստուծոյ:

3· Ի տղայութեան ժամն համբերութիւն կալէք:

4· Յառատութեան ժամն զոհացիք մեծապէս զԱստուծոյ· զաղութիւն յիշեցէք:

5· Երբ առողջ կենայք՝ զհիւանդութիւն ի միտ ածէք:

6· Կին ի մօտեւորայ եւ ի ճանաչաւորայ առէք:

7· Ի մէկ տեսնուլն ի հետ մարդոյ մի փաթթիք:

7 = B[64]:

ԻԲ. 4 Եւ յառատութեան ժամն զպղութիւնն յիշեցէք B[61]: — յառատութիւն A: — 5 Եւ յառողջութեան ժամն զհիւանդութիւն ի միտ ածեցէք B[60]: — 6 = B[38]: — 7 Ի մէկ տեսնելուն (ի տեսն) յամենայն մարդոյ հետ մի փաթթուիք (-թիք S) B[53]:

8· *Ձեզ առ մարդիկք մի սուղ ունենայք:*
9· *Խիստ ժողովրդեան բեռն քարշ մի վիճիք:*
10· *Ձեր բեռնդ այլոց մի բառնայք:*
11· *Յանչահ սիրելեացն ի զատ կացէք:*

—

*Թագաւոր մի կայր Քեղուբաթ անուն. ասաց· Զինչ վատ նզովք կայ, ի վերայ ադէկ կնոջն լինի: — Ասաց մէկ ամիրայն· Յէ՞ր էնց կասես: — Ասաց, թէ Շունն լաւ է քան զկին. զի չուն ոփայ կու պահէ եւ կինն ոչ:*

## ՀԱՄԱՌՕՏ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐԸ

8· *Ձեզ ի մանկութեան բարի անուամբ հռչակեցէք* (*Ե*· 7°):
14. *Ի չարանուն տեղւոջ մի բնակիք* (*Զ*· 4°):
15· *Ի հեղեղատ տեղի մի բազմիք* (*Է*· 2°):
16· *Ի գողոց ուխտադրութիւնս մի ընդունիք* (*ԺԳ*· 4°):
20· *Ի չար դրացեաց հեռաբնակ կացէք* (*Զ*· 4°):
21· *Աւրնթեր կովոյ հում մի երթայք* (*Դ*· 9°):
26· *Հրամանաւ կանանց չար մի գործէք:*
41· *Եւ թագաւոր ոք, թէպէտ եւ փանաքի լինի, նուաստագոյն մի տեսանիցէք* (*ԺԲ*· 2°):

9· Խանգարուած կ'երեւայ A· թերթեւս երկու վճիռ անկմամբ բառերու՝ միացած· հմմտ· *Ընդ մարդոյ մի վիճիք* V: — 10 *բեռն* V: — 11 *ի յանչահ... կացիք: Եւ Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս յամէն* V:

43. *Եւ զաւակաւ ձիրս թագաւորաց մեծա-գոյն գիտացիք:*

46. *Ոք որ առաւել գիտէ քան զձեզ, զնա աւելի պատուեցէք* (*ԺԴ.* 1°):

54. *Ամենայն խրաց եւ ամենայն մարդոյ շուտ մի հաւատայք* (*Հմմտ. Դ.* 3, *ԺԶ.* 1):

68. *Եւ ձեզէն զձեզ ի փորձութիւն մի ար-կանէք* (*Դ.* 9°):

69. *Հանապազ այլոց ձեռօք զօձն բռնեցէք:*

70. *Ի բարկացող արանց պատրաստ կա-ցիք:*

74. *Զկերակուրս եւ զըմպելիս առանձնա-բար մի ընթրիք* (*Ը.* 6°):

76. *Ընդ բարեբախտիկ արանց մի հակա-ռակիք* (*ԺԱ.* 6°):

78[1]. *Ի մէճլիսն ի ձեր նմանոյն խէչն նստէք:*

79. *Ի հետ այլազգեաց յանպատեհ խօսս մի համարձակիք:*

80. *Ով ոք ընդ ձեզ խէթ ունի, ի նմանէ հեռագոյն կացէք:*

81. *Ցերեկս թշնամեաց զաոնութեամբ մի հայիք:*

82. *Յամենայն զրոյցս եւ ի բանս քաղցրա-բարբ եւ մեղմախօս լերուք:*

83. *Զօր մահուն ի միտ ածեցէք:*

84. *Եւ ի տանջանաց դժոխոց երկերուք:*

---

[1] *Թ.* 78—90 համաձայն B*ի.* չունի S: Իբրեւ վեր-ջին խրատ ունի S. *Եւ յամենայն ժամ զհանդերձեալն ի միտ ածէք.* Կը պակսի Bին:

85. *Ի յամենայն բան զԱստուած յիշեցէք։*

86. *Անգրաղ աղօթս արարէք։*

87. *Եւ զգոհութիւնն ի լեզուէ անպակաս արարէք։*

88. *Յողորմութենէ ունայն մի լինիք։*

89. *Աղքատաց եւ կարօտելոց օգնական լերուք։*

90. *Եւ ամենայն բարութեանց սիրողք եղերուք. զի աստ մարմնով ուրախ լինիջիք եւ ի հանդերձեալն հոգւով ցնծասջիք։ . . .*

---

## ԺԷ.

# ԽԱՉԱՏՈՒՐ ԽԱՍԳԼԿ ԵՐԷՑ ԿԱՓԱՑԻ

## ՏԱՂԱՍԱՑ (1610—1686)

# ԺԷ.

# ԽԱՉԱՏՈՒՐ ԽԱՍՊԷԿ ԵՐԷՑ ԿԱՓԱՑԻ

## ՏԱՂԱՍԱՑ (1610—1686)

(ԱՌԹԻՒ ՄԱՀՈՒԱՆ 250ԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ)

*Ասեմ ըզբանածին միտքըն Սխրալոյն*
*Գովեմ զերանաշնորհ ձեռքըն Ըղձալոյն.*
*Զարմանամ ընդ բարբառ օրհնեալ բերանոյն.*
*Գոհութիւն յարազուարճ զարդարողին զնոյն:*

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՁԱՑԻ

Իբրեւ գրիչ, ծաղկող, կազմող, բանաստեղծ եւ ուսուցիչ անուանի եղած է Խաչատուր Խասպէկ իր դարուն. ունեցած է տոկուն գործունէութիւն, եղած է արդիւնաւոր եւ հնձած ժամանակիցներու շնորհակալիքն եւ գրուատիքը: Այդ «մեծի առն իմաստնոյ» մահուան 250երորդ տարեդարձը, որ պիտի բոլորուի տարւոյս Հոկտեմբեր 29ին, կը թելադրէ ինձ հիւսել անոր համառօտ կենսագրութիւնը այս երկրորդ անգամ [1], այս նուագ աւելի ճոխ տեղեկութիւններով, ներկայացնելով նաեւ երկու ողբախառն տաղեր, նուիրուած առթիւ մահուան՝ անոր յիշատակին:

«Խաչատուր երէց Կաֆացի, որ մականուամբ Խասպէկ ասի [2]» ծնած է ի Կաֆայ

---

[1] Հ. Մ. Պոտուրեանի խմբագրութեամբ լոյս տեսած հաւաքածոյ հրատարակութեան մէջ, Դիցաւան, Գիրք Ա., Պուքրէշ 1923, էջ 138—142 տուած եմ յօդուած մը «Խաչատուր Խասպէկ երէց Կաֆացի» խորագրոյ տակ:

[2] Ծաղիկ, 1890, Թ. 27:

Խրիմ Թերակղզւոյ, 1610ին[3]: Անոր ծնողաց անուններն են՝ մահտեսի Անդրէաս[4] եւ մահտեսի Խանում[5]: Խասպէկ ունեցած է եղբայրներ եւ քոյրեր[6], որոնք չեն յիշատակուած յանուանէ: 1636ին կը ներկայանայ Խասպէկ «նորաջան դեռաբոյս պատանեակ[7]»: 1642ին կ՚անուանուի «Խասպէկ դպրիկոս[8]» եւ «Խասպէկ դպիր[9]»: Այս թուականէն ետքը կ՚ընդունի քահանայական ձեռնադրութիւնը, իբրեւ ամուսնացեալ երէց: 1653ին կը յիշէ, թէ ունի մանչ զաւակ մ՚եւ դուստրներ[10]:

Խասպէկ ուսած է առ ոտս տէր Յովհաննէս քահանայի[11], որ աշակերտն էր «ալեօք ծերացեալ իմաստասէր եւ կորովամիտ եւ հանճարեղ տէր Մկրտիչ քահանայի[12]»: Գրչութեան արուեստին համար ուսուցիչ ունեցած է Գալուստ սարկաւագը[13]:

Խասպէկ իր գործունէութեան շրջանը

---

[3] Խաչ. Խասպէկ վախճանած է 1686ին ՀԶամեայ (Յովհ. Կաֆայի):

[4] Ձեռ. էջմ. 1558: Երեւան, Պետ. Թանգ., Թ. 25:

[5] Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 25:

[6] Անդ:

[7] Երեւան, Պետ. Թանգ., Թ. 13:

[8] Անդ, Թ. 395, 110 ա:

[9] Անդ:

[10] Անդ, Թ. 25: Նոյն թանգարանի Թ. 431ի գրիչը՝ Գէորգ երէց կը գրէ. «Յիշատակ է սուրբ Խորհրդատետրս Մարիամին, հօրն Խասպէկ քահանային, դստերն Նուրպիքէին ի դուռն Ս. Աստուածածնին, որդւոյն Ղազարին եւ փեսին Վարդանին. Թվին ՌՃԾԸ» (1709). ասկէ կը տեսնուի թէ Խասպէկի դուստրներէն մին է Մարիամ, իսկ թոռնիկներն՝ Նուրպիքա եւ Ղազար:

[11] Էջմ. 1558: Երեւան, Պետ. Թանգ., Թ. 25:

[12] Երեւան, Պետ. Թանգ., Թ. 13:

[13] Անդ:

սկսած է ի Կաֆայ. ժամանակ մը գտնուած է ի Ղարասու: 1664էն ետքը կը գտնենք զինքը Կ. Պոլիս, ուր իւր բնակութիւնն ունեցած է ի Ս. Գէորգ (Սուլումանաստիր): Հոս էր 1668—1671 տարիներուն: Ասկէ վերադարձած է Կաֆայ, ուր եւ գործած է մինչեւ մահը, հաւանօրէն իբրեւ երէց տեղւոյն Ս. Աստուածածին եկեղեցւոյ:

1682ին կ'անուանուի Խասպէկ «ծերունի քահանայ», բայց տակաւին իբրեւ «ծաղկող եւ կազմող»: Այժմ նա արդէն 72 տարեկան է: Կը վախճանի 1686, Հոկտեմբեր 29ին, 76 տարեկան հասակին մէջ: Իր մահը ընդհանուր սուգ կը պատճառէ քաղաքացիներուն: Մահը կ'ողբան արտասուախառն Յովհաննէս եւ Սիմէոն Կաֆացիները: Անոնց հիւսած ողբերը պիտի հրատարակեմ ի վերջ գրութեանս:

Խասպէկ երէց գործած է իբրեւ ուսուցիչ, գրիչ, ծաղկող եւ կազմող: Բազմաթիւ են ձեռագիրք, որոնք անցած են իր ձեռքէն. մասի մը օրինակողն եղած է, ուրիշներ ծաղկած է եւ դարձեալ մաս մը կազմած է եւ նորոգած: Յառաջ կը բերեմ հոս համառօտիւ այն յիշատակարաններն եւ յիշատակագրութիւնները, որոնք արդիւնքն են իր գրչին:

ա. 1636. այս թուին իւր ուսուցիչն «տէր Յովհաննէս մելանաւորն» կ'օրինակէ Յայսմաւուրք մը ի խնդրոյ մահտեսի Գրիգորի ի Կաֆայ, «ընդ հովանեաւ Ս. Նիկողայոս արագահաս հայրապետին»: Յիշատակարանին վերջը կ'ըսուի (հաւանօրէն Խասպէկի գրչէն).

«Դարձեալ յիշեսջիք ի Քրիստոս դյուսուցիչն իմ զԳալուստ սարկաւագն, որ գծիրս ուսոյց: ... (Աստուած ողորմի ասացէք) Նաեւ աշխատողաց եւ ծաղկողիս Խասպէկ Նորաջան, գեստարոյս պատանեկիս եւ Թղթիս կոկողին[14]»:

Բ. 1643ին կ'օրինակէ Խասպէկ Ներսէս Շնորհալւոյ Յիսուս որդին[15]. ընդարձակ 52 տողեան Յիշատակարանին կարեւոր տողերն են.

«Ի Նորաջան գրչէս խնդրի,
Մի մեղադրել ինձ ծառայի·
Զի չեմ հմուտ այսմ արհեստի,
Այլ զի անվարժ ի չափ տաղի,
Ոտանաւոր ի հանդիսի,
Նորոգ բանիւ աստ ի կարգի,
Կարճ ի կարճոյ համառօտի:
Թուականիս Հայոցս հազարի,
Նրասուն 'ւ երկու թիւ յաւելի·
Աւարտեցաք յայս նահանգի,
Հոնաց երկրիս Ղարասուի·
Նաեւ առ ոտս սուրբ Աւգսենտի,
Քսան եւ ութն աւգոստոսի:
Ի դառնագոյն ժամանակի,
Մահմէտ Քարայ Թաթար խանի·
Պատճառելով ինչ պատճառի,
Յոյժ կողոպտեն զազգըս Հայի:
Ռամեալ եւ ինձ անարժանի,

---

14 Երեւան, Պետ. Թանգ., Թ. 13:
15 Լէմ. 1558 (= Կար. 1495):

Գրծաւղ բանիս եւ ծաղկաւղի.
Ամենիմաստ ձերում շնորհի,
Տուք ողորմի ինձ Խասպէկի.
Հուպ յիշեցէք ի յայս կարգի,
Զհայր Անդրէասն իմ մահտեսի...

Կը խնդրէ ի մէջ այլոց յիշել նաեւ իւր ուսուցիչն զտէր Յոհաննէս քահանայն: Յիշատակարանիս տնակապ սկզբնագրերը կը հիւսեն. Ի ԺԱՄԱՆԱԿՍ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԿԱՑ ՍՈՒԼԹԱՆ ԻՊՐԱՀԻՄԻ ԾՐԱԳՐԵԱԼ:

գ. 1643ին կ'օրինակէ Բերլինի Ms. Or. oct. 1921 ժողովածու գիրքը: Յիշատակարանին մէջ կ'ըսուի (Թղ. 104 ա). «Գրեցաւ գիրս ձեռամբ անարժան եւ Թարմատար, փծուն գրչի Խասպէկի, յայժ մեղաւք զառածեալ եւ յետնեալ գծողացն ի քարտիսի. ի Թվականի Հայոց ՌՂԲի եւ յունիսի է: Խնդրեմ ի ձէնջ, ով սիրելիք, որ չմեղադրէք, զի կար մեր այս էր»:

դ. 1645, յուլիս 10ին կ'օրինակուի Խորհրդատետր մը[16] ի խնդրոյ Գրիգոր քահանայի «ձեռամբ անարհեստ Խասպէկ գրչի»:

ե. 1650ին կ'օրինակէ Գանձարան մը[17], որուն Յիշատակարանն է. «Եւ արդ ես նուաստ վերջին գրիչ՝ վերստին կազմեալ նորոգեցի չուառ Խասպէկս, հրամանաւ տէր Գրիգոր արհիեպիսկոպոսին ի Թուաբերութեանս հայկազեան սեռի քսան եւ մէկ յոբելինի եւ եր–

16 Երեւան, Պետ. Թանգ., Թ. 418. Հմմտ. Ե. Շահազիզ, Պատմական պատկերներ, էջ 100 ծան.:

17 Երեւան, Պետ. Թանգ., Թ. 354:

րեակ վեշտասանի եւ մի թիւ ընդ Նմին չարագուշի եւ ի ծննդենէ կենար(ար)ին Յիսուսի Քրիստոսի ութերորդ երկերիւրի եւ ի չորրորդ երկոտասանի եւ քառիցս թիւ աւելի» (1652—2 = 1650). «ի մայրաքաղաքս Կաֆայ առ ոտս սուրբ Յարութեան»:

գ. 1652ին նորոգած է ի Կաֆայ, ընդ հովանեաւ Ս. Յարութեան Ճաշոց մը[18]. «եւ զանպիտան նորոգաւղ եւ զկազմող սրբոյ սոփերիս զԽասպէկ գրիչս յիշեցէք»:

է. 1653, մարտ 22ին կ'օրինակուի Յայսմաւուրք մը[19], «ձեռամբ անիմաստ եւ թարմատար վերջին եւ յետին, մեղսասէր եւ անարժան հող եւ փոշի, ծառայ ամենայն ծառայից Աստուծոյ, անարհեստ Խասպէկ գրչի»: Կը խնդրէ յիշել «զհայրն իմ զմահդասի Անդրէասն եւ զմայրն իմ զմահդասի Խանումն եւ զեղբարքն իմ եւ զքորքս. եւ զորդեակն իմ եւ զվստերքն իմ»: «Եղեւ ծրագրութիւն մատենագիր յիշատակարանիս ի մեծ եւ հոյակապ եւ ի հռչակաւոր մայրաքաղաքս ի Կաֆայ, ընդ հովանեաւ սրբոյ տաճարիս Յարութեան»:

ը. 1661 կ'օրինակուի Պարզատումար-Օրացոյց մը[20] «ձեռամբ Խասպէկ մեղաւորի»:

թ. 1663 օրինակած է Ժողովածու գիրք մը[21]. «Ով ուսումնասէր... (յիշեա) զտառա-

---

18 Անդ, թ. 57:

19 Անդ, թ. 25:

20 Էջմ. 2008 (= 1990):

21 Թորգոմ եպ. Գուշակեան, Ցուցակ ձեռագրաց Ս. Նշանի վանուց Սեբաստիոյ, թ. 232:

*պեալ մեղաւոր Խասպէկ Խաչատուր երէցս որ գրեցի զսա ի Թվին ՌՃԺԲ. յիշատակ Մարտիրոս քաջ հռետորի եւ Ղրիմեան տանս վերադիտողի ի վայելումն անձին իւրոյ»*:

Ժ. 1667, *յունուար 12ին կ՚օրինակէ Տօնացոյց մը*[22]. *«գրեցաւ Տօնացոյցս եւ աւարտեցաւ ձեռամբ բազմամեղ Խաչատուր երիցու Կաֆայեցւոյ, որ մականուամբ Խասպէկ ասի. Թելադրութեամբ եւ հրամանաւ տէր Յակոբ աւագ քահանայի (բառ մը անընթեռնլի) ինէ Կոստանդինուպօլսի... Թվին ՌՃԺԶ. յունուարի ԺԲ»*:

ԺԱ. 1668*ին օրինակած է Քահանայաթաղ մը*[23]. *«Աւարտեցաւ ... յարքայանիստ մայրաքաղաքն Կ. Պոլիս, առ դրան Ս. Գէորգայ ... որ յայլազգեաց լեզուով Սուլումանաստր կոչի, ձեռամբ Խասպէկ Խաչատուր իրիցու Կաֆայեցւոյ ... ի վայելումն տէր Յովսէփ քաջ րաբունապետի Կեսարացւոյ»*:

ԺԲ. 1670, *յուլիս* 6*ին կ՚օրինակէ Սեւանի Թ.* 59 *ձեռագիրը*[24]:

ԺԳ. 1674*ին կը նորոգէ Գր. Նարեկացւոյ Մեկնութիւնն Երգոց Երգոյն*[25]. *«նորոգեցաւ գիրքս ձեռամբ մեղաւոր Խասպէկ Խաչատուր երիցու Թվ. ՌՃԻԲ. յիշատակ իւր եւ ի վայելումն մահդասի Խաչատուրի որդւոյ տիրացու Աւետիքի»*:

---

[22] *Ծաղիկ (Կ. Պոլիս)*, 1890, *Թ.* 27:
[23] *Պարիս, Ազգ. Մատենադարան*, Cod. Arm. 61:
[24] *Ն. Մառ, Ցուցակ ձեռագրաց Սեւանի, էջ* 26:
[25] *Էջմ.* 1154, *Թղ.* 170 *ա. հմմտ. եւ* 60 *բ*:

ժդ. 1677ին ի խնդրոյ խոճայ Օգսէնտի կ՚օրինակէ Աւետարան մը[26] ի Կաֆայ, «ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին... ձեռամբ անիմաստ Խասպէկ Խաչատուր դրչի»:

ժե. 1682ին կը ծաղկէ եւ կը կազմէ Ճաշոց մը[27]. «դարձեալ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԽասպէկ ծերունի քահանայն, զծաղկաւղ եւ զկազմաւղ այս սուրբ գրոցս»:

ԳԱՆՁ ԵՒ ՏԱՂԵՐ

Ժամանակակիցները կ՚անուանեն Խաչատուր Խասպէկը «փիլիսոփայ ներհուն, քահանայ արի», «բանածին միտք», «պետ երաժըշտոց», «բացատրող տառից հնոց եւ նորոց», «վարժապետ յոգունց մեծ փիլիսոփայից», «տեղետ յոքնահանճար», «ներհուն ճարտասան», «սոփէր պըւետիկոս բանից վիպասան»: Կ՚ըսուի թէ «արուեստ ձեռաց, մտացն էր զարմանալի, ներակից երգս երգէր երաժըշտական... հոգեբուխ, սխրալի եւ հրաշական», որոնք էին «սփռեալ յոլորտս երկրի հաճութեամբ մարդկան»: Այս դրուատական տողերը, որոնք քաղուած են Յովհաննէս եւ Սիմէոն Կաֆացիներու Ողբերէն, միայն կու գան հաստատել, թէ Խասպէկ օժտուած էր ինչպէս գեղագրութեամբ, նոյնպէս հմուտ էր երաժշտութեան, երգիչ մը, միանգամայն բանաստեղծ: Իր բանաստեղծական արտա-

---

26 Երեւան, Պետ. Թանգ., Թ. 169:
27 Անդ, Թ. 67:

*գրութիւններէն, որոնք հեղինակին կենդանութեան իսկ տարածուած են «յոլորտս երկրի», մեզի հասած են Գանձ մը եւ վեց կտոր տաղեր։ Անոնք գրուած են պարզ լեզուով եւ կ'երեւցնեն համեստ շնորհք մը բանաստեղծին վրայ, որ աւելի հետեւող է քան ինքնակաց։ Գանձն եւ կցորդ Մեսեդին յօրինուած են Գանձերու նմանութեամբ, Գրիգոր Խլաթեցւոյ ազդեցութեան տակ։ Գանձս Խասպէկի անդրանիկ աշխատութիւնը կ'երեւայ։ Կը թուեմ այս տեղ Խասպէկի ինձ ծանօթ գործերը.*

1. Տաղ ի վերայ վարդին եւ անուշահոտ ծաղկանց. ի Խասպեկէ ասացեալ։

*Արե՛կ որ պաղչան մտնունք ու վարդ քաղենք.*
*Ծաղկեցաւ այգին, պիւլպիւլն ու տուտի,*
*ղումրին*
*Եղանակեն կանանչ թփին,*
*Ուրախանան հետ կարմիր վարդին,*
*հետ ճերմակ վարդին...*

*Ձեռագիր՝ Էջմ.* 2394, 201 *ա*։ *Աճառեան՝ Տաղարան,* 40 *ա* (=*Թաւրիզի Լիլաւաթաղի Թ.* 2, *թղ.* 81 *ա, անանուն*)։ *Պարիս, Տաղարան Ա. Անտոնեանի,* 175*ա* (1695)։ *Վիեննա, Մխիթ. Մատ.* 643, 11*ա*։ *Կ. Կոստանեանցի Տաղարանները յամէ* 1682 *եւ* 1695։

*Հրտ.՝ Գիրք Դպրութեան եւ Տաղարան, Կ. Պոլիս* 1714, *էջ* 214—216։ *Հայերգ, էջ* 119։ *Կոստանեանց, Նոր ժող. Բ.* 11—14 (*հմմտ. Գ., էջ Զ եւ* 15)։

2· Խասպեկէ ասացեալ ի վերայ սուրբ Աստուածածին (1672)։

Գըլուխ հանուրց ազգին կանանց,
Անհամեմատ գոլ հողածնաց…
Վ· Երազընթաց թիւ տումարիս
Հազար հարիւր քսան եւ մի,
Ի Խասպէկէ առն աղտեղի,
Շարադրեցաւ ի քարտիս։

Տնակապ սկզբնագրերը· ԳՈՎԵՍՏ Ի ԽԱՍՊԷԿ ԵՐԻՑԷ։

Ձեռագիրք՝ Էջմ· 2394, 196բ (ԺԷ) = Տաղարան Կ· Կոստանեանցի յամէ 1682· Հմմտ· Նոր Ժողովածու, Գ· 15։

3· Տաղ սիրոյ եւ ուրախութեան (1670)։

Եկ սիրելի ուրախացուք,
  ահա այգին ծաղկեցաւ.
Նոր արուսեակն առաւօտուն
  այսօր յայգին ծագեցաւ։
Վ· Էր հազար հարիւր թուական
  տասն եւ ինն յեռեալ ի նոյն.
Խասպէկէ մեղօք զառածեալ,
  'ւ ընկղմեալ անհոգ ի քուն։

Տնակապ գրերը՝ ԵՐԳՍ Ի ԽԱՍՊԷԿ ԵՐԻՑԷ։

Ձեռագիր՝ Էջմ· 2394, 194ա—196ա (ԺԷ) = Կոստանեանց Տաղարան 1682։

Հրտ·՝ Կոստանեանց, Նոր Ժողովածու· Գ· 12—15։

4․ Ի Խասպէկ երիցուէ ասացեալ է ի Ս․ Աստուածածինն (1662)։

*Իմանալի արեգակն արդարութեան,*
*Որ ծագեցաւ ի քէն կոյս անապական...*
*Վ․ Եղեալ շրջեալ թիւ տումարիս հայկազան,*
*Ռճ լցեալ ընդ իւր մետասան*
*Միաշաբաթ Սուրբ Նշանի Երեւման*
*Միածնորդւոյ քո, սուրբ Կոյս, տիրա-*
*մայր Աստուածածին*

*Տնակապ գրերը՝ Ի ԽԱՍՊԷԿԷ։*

*Ձեռագիր՝ Էջմ․* 1636, 83*բ*—85*ա* (*ԺԷ*)։ 2394, 199*բ* (=*Կոստանեանց Տաղարան* 1682․ *Հմմտ․ Նոր Ժողովածու, Գ․* 15)։

5․ Տաղ Ս․ Աստուածածնի (1663)։

*Ի քեզ յուսամ հոգւով,*
*Տաճար անեղին Կոյս Մարիամ...*
*Վ․ Երագընթաց ամանակիս թիւ Ռճ*
*'Ի երկոտասան ընդ իւր միաշար․*
*Ի Խասպէկէ լրցեալ մեղօք չարաչար,*
*Մակագրեցաւ երգս ի քարտիսի նորաշար։*

*Տունք՝ Ի ԽԱՍՊԷԿԷ։*

*Ձեռագիր՝ Էջմ․* 2394, 203 *ա* (=*Կոստանեանց Տաղարան* 1682․ *Հմմտ․ Նոր Ժողովածու, Դ․* 15)։

6․ Ողբ ասացեալ տաղիւ չափիւ եւ ոտանաւոր՝ կսկիծ դառն ժամանակի ի վերջին սռն (°) ի Խասպէկ գդերիկոսէ (յ)աշակեր-

տաց Յովաննէսի՝ վասն իւր աստիճանակցի եւ եղբայրակցի եւ ընկերակցի իւրոյ՝ անպարտ Սարգիսի († 13 *Յունիս*, *Եչ․ ՌՂԱ* = 1642 *ի Ղարասու*)։

*Օրհնեալ, փառաւորեալ անուն սոսկալի*
*Հայր անսկիզբն անեղ ՚ւ անիմանալի.*
*Գովեալ բարեբանեալ միածին որդի,*
*Հոգին բղխումն անճառ եւ անքննելի...*
*վ․ Յանարժան Խաստէկէ բաներս (յ)արմա-*
*րին.*
*Որ էր ինքն աշակերտ տէր Յովաննէսին.*
*Ի խնդրոյ Ղուկասա ՚ւ Արիստաքիսին,*
*Եւ միշտ եւ միշտ եղբայր եւ եղբայրակցին։*

*Ձեռագիր՝ Երեւան, Պետ. Թանգարան*, 395, 110 *ա*—117 *ա*։

7․ Մեղեդիս նորին ասացեալ դարձեալ կրկնակի առ Աստուած վասն Սարգսի։

*Ի Հօրէ Աստուծոյ կամեցեալ,*
*Թէ զՈրդին միածին առաքեալ...*

*Տուներու սկզբնակապ գրերը՝ Ի ԽԱՍՊԷԿ ԴՊՐԷ ԱՍԱՑԵԱԼ ԲԱՆԸՍ ԱՅՍ*։

*Ձեռագիր՝ Երեւան, Պետ. Թանգարան*, 395, 117 *ա*—118 *ա*։

## Ա.

## Ի ՎԵՐԱՅ ՄԱՀՈՒԱՆ ԽԱՍՊԷԿ ՔԱՀԱՆԱՅԻ ԱՍԱՑԵԱԼ Ի ՍԻՄԷՈՆԷ ԽՐԸՄՊԷՑ ՕՂԼԸ ԿՈՉԵՑԵԼՈՅ

*Ողեւ ահա այսօր ժամանակ ողբոց,*
*Սուգ տրտմութիւն եհաս ամենայն տեղոց·*
*Քանզի բարձաւ ի մէնջ պետն երաժշտոց,*
*Բացատրօղըն տառից Հընոց եւ Նորոց:*

*Ռամք վերծանողացըն ուաղէն եւ լան,*
*Տեսանելով յաւէտ խըրթնածածուկ բան·*
*Այլ ո՞վ մեկնէ նոցա, ծանուցէ զայն,*
*Զի փոխեցաւ առ Տէր Խասպէկ քահանայն:*

*Գոչեն աշխարելով, կոծեն եւ ողբան,*
*Զվարժապետըն յոգունց, մեծ փիլիսոփայն·*
*Զտէլէտն յոքնահանճար, ներհուն ճարտասան,*
*Սոփէր պըւետիկոս բանից վիպասան:*

*Երկիրս միգախըռնեալ սուգ իւր ցուցանէ,*
*Երկինս ամպով պատեալ՝ զլոյս իւր ծածկէ·*
*Զի երկրի արեգակն խաւարեալ է,*
*Եւ ջահըն մեծալոյս այսօր շիջեալ է:*

*Ամենեքեան ողբան զտէրս այս գերապանծ,*
*Մինչ զի հովիտք եւ դաշտք, բըլուրք ընդ լե-*
*րանց,*

ՁԵՌԱԳԻՐ՝ *Էջմ.* 1636, *Թղ.* 102*բ*—104*բ*:

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ՝ *Հանդէս Ամսօրեայ*, 1935, *էջ* 343—344:

ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ ՁԵՌԱԳՐԻՆ՝ 2 *սուք*: — 6 *աւէտ խըրթնայ ծածուկ*. Հանդ. Ամս. կարդացած՝ *խըրթնոց ծածուկ*: — 10 *ոգունց*: — 12 *պըւերիկոս*:

*Ծառք եւ տունկք ամենայն այգիք ընդ ծաղկանց,*
*Ըստընդեայ տղայքն ի գիրկըս կանանց։*

*Կան ըզԹասպէկ էրէցն որ մեծահռչակ,*
*Եղիեական գոլով ամենայն հասակք․*
*Քանզի ոչ գոյ այլ ոք սըմա օրինակ,*
*Եւրոպի, Ասիա, Լիբի մասն եռեակ։*

*Իսկ զիա՞րդ ոչ ողբաց երկիրս Ղրիմեան,*
*Կազարիա, Սուլխաթ՝ դղեակօք համայն.*
*Կաֆա մայրաքաղաքն կողմամբքն ամենայն,*
*Որ շնորհալի առնեն, այժմ եղեն ունայն։*

*Սուգ ըզգենու Քէֆէն, տխրի եւ տրտմի,*
*Մահուամբ տէր Թասպէկի մեծին հռետորի․*
*Այժմ այլոց քաղաքաց ենթարկեալ լինի,*
*Զի բեկաւ ստորէոսն իւր մարգարտալի։*

*Իւր սուրբ եկեղեցւոյն դրունք փակ մնացին*
*Որ կառուցեալ յանուն սուրբ Աստուածածնին․*
*Վարագոյրըն քարշեալ հանդէպ խորանին,*
*Զերդ նոր հարսն յանկիւն՝ քողն ի յերեսին։*

*Մատակարար կարգեալ անմահ փեսային,*
*Ու երգիչն օրհորդաց հարսանեաց վերին․*
*Աստանօր բաց թողեալ զըսպասք տաճարին,*
*Գնաց անդառնալի չաւիղն երկնային։*

*Է սուգ եւ տրտմութիւն Հայոց մեծագոյն,*
*Մեկուսանալն ի մէնջ դիտին բարեգոյն․*

19 *տունք․․․ այքիք*։ — 20 *բստընդիա*։։ — 23 *գո*։ — 24 *եռակ*։ — 25 *ողբա*։ — 29 *սուք*։ — 33 *փաք*։ — 34 *անուն*։ — 35 *վարապուրըն*։ — 36 *երեսին*։ — 40 *անդառալի*։

*Թէպէտ ամենեցուն մահն է դառնագոյն,*
*Բայց իմաստնոցն այլ է կըսկիծ կարծրագոյն։*

*Ունէր բազում հանճարս, տէր էր շընորհի,*
*Համեմատ Քիրամայ, Բէսէլիէլի.*
*Քարտուղար, ծաղկարար էր զարմանալի,*
*Արուեստ ձեռաց մըտացն էր զարմանալի։*

*Ներակից երգս երգէր երաժշտական,*
*Դաւթի, Սողոմոնի երգոցըն նըման.*
*Հոգէբուխ, սխրալի եւ հրաշագան,*
*Սփռեալ յոլորտս երկրի հաճութեամբ*
*մարդկան։*

*Էր թըվականս Հայոց ըՌա ՃԷ եւ Լին*
*Եւ Եչիւրն խառնեալ հոլովեալ ի ձեւ.*
*Եւ հուպ Գիւտի Խաչին վաղճանըն եղեւ,*
*Շնորհեցէք Հայր մեղայն հոգուն իւր պարգեւ։*

## Բ.

### ԴԱՐՁԵԱԼ Ի ՎԵՐԱՅ ԽԱՍՊԷԿ ՔԱՀԱՆԱՅԻ ՈՐ ՓՈԽԵՑԱՒ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ ԱՍԱՑԵԱԼ Ի ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՖԱՅԵՑՒՈՅ

*Ի սուգ կոծոյ ողբոյ դառն աղէտագոյն.*
*Եւ ձայն լալեաց հեծեաց, յոր կայր սաստ-*
*կագոյն*
*Հնչեաց յերկրէ մերմէ կըսկիծ ոյժգնագոյն.*
*Վասն մահուան մեծի առըն իմաստնոյն։*

46 *քիրամա*։ — 50 *երգուցն*։ — 55 *հիւպ*։
ՁԵՌԱԳԻՐ՝ *Էջմ*. 1636, *թղ*. 104*բ*—106*ա*։
ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ ՁԵՌԱԳՐԻՆ՝ խորագիրը. *ի վե-րա*։ — *Ովաննի(ս)է*։
1 *սուք*։ — 3 *հըչեաց*... *ոյգնագոյն*։

Ամենայն տեսակաւ զի զարդարեալ էր,
Հոգւոյ սրբոյ շնորհօքն նա լցեալ էր.
Լցեալ որակ որակ առատացեալ էր.
Եւ մերձեցեալն առ ինքն ոչ անտես առնէր:

Ունէր զբանըս ծածուկ ի խորին մըտաց,
Եւ յայտնէր վարժապէս ախորժ տըղխտաց.
Հարկիւ բացեայ առնէր ըղգլին մարգարտաց,
Վաճառականն Խասպէկ՝ ցանկալին բազմաց:

Վարդապետաց յաւէտ նա էր խըրատիչ,
Ըստահակաց սաստող եւ մխիթարիչ.
Իսկ հերձուածողացն էր պապանձեցուցիչ,
Ջեկեալս նոր յուղղութիւն՝ նոցա ընդունիչ:

Ասեմ զբանածին միտքըն սըխրալոյն,
Գովեմ զերանաշնորհ ձեռքըն ըղձալոյն.
Զարմանամ ընդ բարբառ օրհնեալ բերանոյն,
Գոհութիւն յարագուարճ զարդարողին զնոյն:

Նըման էր առաջնոց հարցն իրաւապէս,
Ընդ բընաւիւք ձեւովք անսըխալապէս.
Քանզի զտարակուսանս ի գըրոց պէսպէս,
Առ ժամայն լուծանէր նա տարագրապէս:

Նա որ ասաց Քրիստոս յաւետարանին
Ցաղագս ընտրելոցն՝ աւուրքըն կարճեսցին,
Եկեալ կատարեցաւ ի վերայ նորին,
Զի վաթսուն եւ վեց էր երանելին:

5 յամենայն: — 10 այտնէր: — 11 բացեա: — 13 աւէտ: — 16 ուղղութիւն: — 21 յառաջնոց հարձն: — 22 ըն(դ): — 25 աւետարանին:

Ի անեղ բանին հօր նա պիտոյացաւ,
Վասն այնորիկ յերկրէ յերկինս կոչեցաւ.
Զի ընդ քահանայից սրբոց դասեցաւ,
Ըսպասու գոլ փառաց Տեառն արժանացաւ:

Սորա հանդոյն այլուստ ոք ոչ գըտանի,
Ի մէջ ըրաբունեաց եւ մենաստանի.
Քանզի ամենեցուն նա էր պիտանի,
Փիլիսոփայն ներհուն, քահանայն արի:

Եղեր այսօր գեր ի վերոյ սրբութեան,
Ծինեալ անուն կուսին Մօրն անապական.
Քեզ տայցեն երանի մինչեւ յաւիտեան,
Թէ գըտցես զքեզ հովող, դու այլ նորա նման:

Եղեւ վաղճան մերոյ քաջ հռետորին
Ի չըջանիս Հայոց ՌՃԻՆ.
Ընդ իւր չարածագծեալ երեսուն հընդին,
Ամսեան հոկտեմբերի էր քսան եւ ինին:

30 յերկր: — 39 մին աւիտեան: — 43 չարա-ծագցեալ:

## ԺԸ.

# ՍԻՄԷՕՆ ԽՐԸՄՑԷՅԻ ՈՐԴԻ ԿԱՖԱՑԻ ՏԱՂԱՍԱՑ

*Սիմէոնի կենսագրութենէն քիչ բան ծանօթ է մեզի: Ծննդեամբ Կաֆացի էր, որդի Խրըմցէյի (Խրըմցէկի): Ապրած է Կաֆա քաղաքը. «Սիրուն է փորձը» տաղին վերջի տողը՝ «ձգէ կօշիկ կարելն» կը թելադրէ մեզի հետեւցնելու թէ անիկա կօշկակար էր արուեստով: Իր գործունէութեան շրջանը կ'իյնայ ԺԷ. դարու երկրորդ կէսին. ունինք իրմէ տաղեր, որոնք գրուած են 1683, 1685 եւ 1686 տարիներուն: Իր մեներգներու շրջանակին կը պատկանին Յարութիւն վաճառական, Յակոբ Ջահրնկալ եւ Սրապիոն, զոր եղբայր կ'անուանէ: Ողբը, զոր գրած է Սիմէօն Խասապէկ երէցի մահուան առթիւ, ենթադրել կու տայ, որ Սիմէօն Խասապէկի մտերիմ ծանօթներէն, թերեւս նաեւ անոր աշակերտներէն եղած ըլլայ:*

*Սիմէօն երգած է զանազան տաղեր, ողբեր, հաճելի ոճով եւ ժողովրդական նկարագրով: Անոնցմէ մին՝ «Իսկական...», յօրինուած է տող մը հայերէն եւ տող մը թաթարերէն:*

*Կը բաւականանամ հոս թուել Սիմէոնի տաղերը, որքան ծանօթ են ինծ անոնք։ Նկատի ունիմ գլխաւորաբար Էջմիածնի Թ. 1636 (ԺԷ./ԺԸ. դար) եւ Թ. 2394 ձեռագիր Տաղարանները. վերջինս նոյն է Կոստանեանցի 1682 տարւոյ Տաղարանին հետ։*

1․ Նորին Սիմէոնի ասացեալ։

*Եկ պխլպուլում գարնանային,*
*ձայն աւետեաց բեր, բեր...*
*Տունք՝ ԵՐԳ Ի ՍԻՄԷՈՆԷ։*
*Ձեռ.՝ Էջմ.* 1636, 91*բ*—92*բ*։ 2394, 211*ա*։

2․ Ի վերայ մահուան խասպէկ քահանայի, ասացեալ ի Սիմէոնէ խրիմպէյ օղլը կոչեցելոյ։

*Եղեւ ահա այսօր ժամանակ ողբոց,*
*Սուգ, տրտմութիւն եհաս ամենայն տեղոց..*
*Վ. էր Թըվական Հայոց ըՌա, ձէ եւ Լին*
*Եւ Եչիւրն խառնեալ հոլովեալ ի ձեւ*
*Եւ հուպ Գիւտի Խաչին վաղճանըն եղեւ.*
*Շնորհեցէք Հայր մեղայն հոգուն իւր*
*պարգեւ։*

*Տունք՝ ԵՐԳԵԱԼ Ի ՍԻՄԷՈՆԷ։*
*Ձեռագիր՝ Էջմ.* 1636, 102*բ*—104*բ*։

*Հրա. Հանդ. Ամս.*, 1935, *էջ* 343—344 *եւ վերը*, *էջ* 185—187։

3․ Նորին Սիմէոնէ այս։

*Էանց ցուրտ եւ ձմեռն եւ վիշտն աշխարհէ,*
*Զարեգակն եմուտ ամպրոպայն երկնի...*

*Վ. ըՌա, Ճէ, Լիւն, Դայ է թիւ թըւականիս,*
*Երբ յանգ ելեալ եղեւ երգ Սիմէոնիս,*
*Ի խնդրոյ Յարութիւն վաճառականի...:*
*Տունք՝ Է ՍԱ ՍԻՄԷՈՆԷՍ:*
*Ձեռագիր՝ Էջմ.* 1636, 98*բ*—101*ա*:

4. Անխորագիր:

*Ինձ ունկն դիր տատանօր,*
*բարբառիմ առ քեզ...*
*Վ. Խրըըմպէյի որդի,*
*մեղք ունիս անթիւ...:*
*Տունք՝ Ի ՍԻՄԷՈՆԷ:*
*Ձեռագիր՝ Էջմ.* 1636, 95*ա*—96*ա*:

5. Նորին Սիմէոնէ ասացեալ:

*Իսկական գերաբուն լուսոյն անթարգման.*
*Մաւէրի խաախուէն եօխ սանկոյ կիւրան...*
*Տունք՝ Ի ՍԻՄԷՈՆԷ:*
*Ձեռագիր՝ Էջմ.* 1636, 89*բ*—91*ա*:

6. Խրըմպեկի որդի Սիմէոնէ առ Ս. Աստուածածին:

*Խորան լուսազարդ Հայրական Բանին,*
*Շնորհօք լցեալ փառակից Հօրն...*
*Վ. էր այս ժամանակս թիւ թըւականիս*
*Տամարի մերում արամեան սեռիս,*
*Ի Ռ եւ Ճ. Լ. երկուս* (1683),
*Որժամ անդ եղաւ երգ Սիմէոնիս:*
*Տունք՝ ԽՐԸՄՊԷՑ ԱԻԴԱԼԸ ՍԻՄԷՈՆԷ ԳԷՎԵՑՈՑ ԵՐԳ Է:*
*Ձեռագիր՝ Էջմ.* 1636, 85*ա*—89*բ*:

7· Տաղ ի խնդրոյ փոքրագոյն մանկանն Յա-կոբայ ջահընկալի :

*Սէր քո ահեղ անտանելի*
*Անկաւ ի սիրտ իմ այսօր···*
*վ· Թիւն է Հայոց ՌՃԼ եւ չորս տասանօք :*
*Տունք՝ ՍԻՄԷՈՆԷ :*

*Ձեռագիր՝ Էջմ·* 1636, 92*բ*—94*ա* :

8· Տաղ վասն ուրախութեան :

*Սիրով ուրախութեան ժամ է զխաղցիր ,*
*Ճեմելով եկ ինձ մօտեցիր···*
*վ· Խըրըմպէյի որդի կոչեալ Սիմէոն··· :*
*Տունք՝ ՍԻՄԷՈՆԻ է :*

*Ձեռագիր՝ Էջմ·* 2394, 212*ա* (= *Կոստա-նեանց, Տաղարան* 1682)· *Կոստ· Տաղարան* 1695*ամին· թերի* :

*Հրտ·՝ Բազմավէպ*, 1884 *էջ* 34 (*թերի*) : *Կոստանեանց*, *Նոր ժողովածու*, *Ա·*, 60—61 (*թերի*, 1695*ի Տաղարանէն եւ Նոր ժող·*, *Գ·*, 54—56 (*հմմտ· էջ Ե*) :

9· Տաղ Սիմէոնի ասացեալ :

*Սիրուն է վարդըն ի մէջ ծաղկանցն ամենի··*
*վ· Խըրըմպէյի որդի տե՛ս ի՞նչ ասացաւ ,*
*Զըգէ կօշիկ կարմիրն , ահա մահ հասաւ :*
*Տունք՝ ՍԻՄԷՈՆ :*

*Ձեռագիր՝ Էջմ·* 2394, 216*բ*—219*բ* : *Պա-րիս*, *Ա· Անտոնեանի սեպհական Տաղարան*, *թղ·* 148*ա* (1695) :

10. Անխորագիր:

*Սիրտ իմ ապաքինել բաղձամ ի սըրտոյս...*
*Ձեռագիր՝ Էջմ. 1636, 96ա—97ա:*

11. Անխորագիր:

*Սպեղանի իմ խոցերոյս,*
*բժիշկ եւ դեղ ցաւերոյս...*
*Վ. Այլ եւ երգոյս խընդըրողի*
*եղբօրս իմ Սրապիոնի...:*
*Տունք՝ ՍԻՄԷՈՆԻ Է ՍԱ:*
*Ձեռագիր՝ Էջմ. 1636, 97բ—98բ:*

12. Նորին Սիմէոնի ասացեալ է:

*Ստեղծողին հրամանաւն*
*բանք անհամար յայտնելոց է...*
*Տունք՝ ՍԻՄԷՈՆԷ ՍԱ:*
*Ձեռագիր՝ Էջմ. 1636, 101ա—102ա:*

13. Տաղ Ղարիպութեան:

*Սրտիկս խոցեալ է սիրով,*
*տէրտէր ունիմ շատ եւ յոլով.*
*Տունք՝ ՍԻՄԷՈՆ:*

*Ձեռագիր՝ Քէչիշեան, Ցուցակ Զմմառու վանաց, Թ. 338, 24բ (ԺԸ): Կոստանեանցի Տաղարան յամէ 1695:*

*Հրտ.՝ Կոստանեանց՝ Մ. Նաղաշ, էջ 55: Տաղարան Կ. Պոլսոյ (անթուական), էջ 127:*

*Չկայ որ եւ է ակնարկութիւն, թէ տաղս Խրըմպէյի որդւոյն ըլլայ. Կոստանեանց կը գրէ (անդ, 55 ծան.). «այս երգիչն է Սիմէոն Խրըմպէյի որդին»:*

14. Անխորագիր:

*Սքանչելագործ անճառ արքայից արքայ,*
*Ձեմ արժանի կալ ի քո դիմաց հրաշագործ:*

*Տունք՝ ՍԻՄԷՈՆԻ:*

*Ձեռագիր՝ էջմ.* 1636, 94*ա*—95*ա*:

15. Ոտանաւոր յընտրութիւնն Եղիազար կաթողիկոսի:

*Տաղին սկիզբը կը պակսի.*

*վ. Յոբելեանք Թըւոյս Ի եւ երկրորդ լեալ,*
*Կէս յոբելեանօք եւ Զ թիւ ընդ այլ*
*(ՌՃԼԱ).*
*Զ օգոստոսի ամսեանըն երգեալ.*
*Սիմէոնս յիմար, սուրբ էջմիածին...*

*Տունք այժմ* ||| *ԸՄԵՑԻՈՅ, այսինքն՝* [*Սիմէոնի Խր*]*ըմեցւոյ:*

*Ձեռագիր՝ էջմ.* 2394, 214*ա*—215*ա* (*սկ. պակաս*): *Հմմտ. Կոստանեանց՝ Նոր ժողովածու, Գ., էջ Ե:*

*Կ՚արժէր հաւաքել այս տաղերն եւ հրատարակել:*

# ԺԹ.

# ԲԻՒՐԱՍՊԻ ԱԺԴԱՀԱԿ ԵՒ ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆ ՄԱԶԴԱԿ ՀԱՅ ԱՒԱՆԴԱՎԷՊԻ ՄԷՋ ԸՍՏ ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

## ԺԹ.

# ԲԻՒՐԱՍՊԻ ԱԺԴԱՀԱԿ ԵՒ ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆ ՄԱԶԴԱԿ ՀԱՅ ԱՒԱՆԴԱՎԷՊԻ ՄԷՋ ԸՍՏ ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻՈՅ

## Ա.

1. *Մ. Խորենացւոյ «Հայոց պատմութեան» գրութեան ժամանակի նկատմամբ իմ ուսումնասիրութիւններս բերած են զիս այն համոզման, թէ Մովսէս ապրած է Ը. դարու վերջին եւ Թ. դարու առաջին քառորդին եւ «Հայոց պատմութիւնը» գրուած է իր 810ին Հարաւային Հայաստանի իշխան Սահակ Բագրատունւոյ հրամանով*[1]*: Ա. Զամինեան*[2],

---

[1] *Հ. Ն. Ակինեան, Մովսէս Խորենացւոյ ժամանակն եւ անձնաւորութիւնը: Անահիտ Ա. Ն. Շ.* (1929), *Թ.* 4, *էջ* 67—77: *Նոյն՝ Ղեւոնդ երէց եւ Մ. Խորենացի. ի գիրս՝ Մատենագրական հետազօտութիւններ, Գ.* (*Վիեննա* 1930), 127—291 = *Հանդէս Ամսօրեայ*, 1930, *էջ* 8—41, 129—156, 257—272 *եւ* 381—404: *Նոյն՝* Moses Khorenatzi, Die Abfassungszeit der Geschichte Armeniens und die Persönlichkeit des Geschichtsschreibers in neuem Lichte betrachtet. W. Z. K. M. 37 (1930), 204—217. *Նոյն՝* M. Chorenaçi *ի գիրս՝* Pauly-Wissowa-Kroll, Realenzyklopädie, Suppl. VI (1935), 534—541.

[2] *Ա. Զամինեան, Մովսէս Խորենացին. իր ժամանակը, ընկերակիցներն ու գործերը. Անահիտ Գ.* (1931), *Թ.* 1—2, *էջ* 117—136:

Յ. Մանանդեան[3] եւ Հ. Վ. Հացունի[4] ընդունելի չգտան իմ հաստատութիւնս: Զամինեան Հայոց Պատմութեան գրութեան տարին Զ. դարու վերջին քառորդին փնտռեց. Մանանդեան Թ. դարու Բ. կէսին եւ Հացունի ընդդէմ թէ 669էն յառաջ[5] արդէն հրապարակի վրայ գոյութիւն ունէր «Հայոց պատմութիւնը». Մ. Խորենացի գրած է զայն «459—465 թուականաց միջեւ»: Զեմ ուզեր վիճաբանել այստեղ: Կը հաստատեմ միանգամ, թէ 810էն յառաջ գոյութիւն չունէր Մ. Խորենացւոյ Հայոց պատմութիւնը. եւ կ՚աւելցնեմ թէ այն տեսած է խմբագրութիւն մը Աշոտ Մեծ Բագրատունւոյ օրով, հաւանօրէն Սահակ Մռուտ Տայեցւոյ ձեռքով. վերջին կէտս կը մնայ ինձ դեռեւս ապացուցանել պատեհ առթիւ:

2. «Հայոց Պատմութեան» Ա. Գրքի վերջը, արտաքոյ Գրոց զետեղուած է յաւելուած մը «ի Պարսից առասպելաց յաղագս Բիւրասպեայ Աժդահակայ» (էջ 89—92, տպ. Աբեղեան-Յարութիւնեան): Այս Յաւելուածը նախ-

[3] Յ. Մանանդեան, Խորենացու առեղծուածի լուծումը. Երեւան 1934:

[4] Հ. Վ. Հացունի, Մովսէս Խորենացին կը դառնայ ի Ե. դար. Բանախօսութիւն. Վենետիկ 1935:

[5] Հաւատացած թէ «Մովսէս Կաղանկատուացւոյ» Պատմութիւնն Աղուանից այս թուականին գրուած է: Բայց ունէ՞ր այս Պատմութիւնը այժմեան խմբագրութեամբ Ժ. դարէն յառաջ գոյութիւն: Աղուանից պատմութիւնը 4—5 զանազան հեղինակներէ զանազան ժամանակներու մէջ գրուած հատուածներու համադրութիւն մըն է անծանօթ խմբագրէ մը, որ հաւանօրէն ԺԱ. դարուն ապրած է: Այս մասին ընդարձակ այլուր:

նաբար զետեղուած էր արտաքոյ Գ. Գրոց, «Հայոց Պատմութեան» շրջագծէն դուրս. Մ. Խորենացի կը գրէ. «այլ ծանիր զառելութիւն մեր առ այսպիսի (առասպելական) բան. զի ոչ յառաջինսն մեր տացեալ գիրս եւ ոչ ի վերջին բանս արժանաւորեցաք շարել, այլ զատ եւ որիշ» (90). այսինքն յարմար չդատեցինք այս մասը Ա. (կամ Բ. եւ) կամ Գ. գրոց մէջ զետեղել, այլ «զատ եւ որիշ», ուրոյն յաւելուածով մը զետեղեցինք արտաքոյ «Հայոց Պատմութեան». պէտք է իմանալ անշուշտ Գ. Գրքէն վերջը: Այս միտքը կը յայտնէ հեղինակը նաեւ իր Մեկենասին ուղղած հետեւեալ տողերու մէջ. «զի ի վերայ այլոց անհնարից՝ հնարաւոր վասն քո արարելոց մեր (այսինքն Ա.—Գ. գրոց գրութիւնը)՝ կատարեմք եւ զայս» (90). ուստի Հայոց Պատմութեան գրուելէն վերջը կատարած է Մովսէս իր պաշտպանին այս խնդիրքն ալ:

Յաւելուածիս փոխադրութիւնը Ա. Գրոց վերջը կատարուած է խմբագրչի ձեռքով, որ տեսնելով Ա. Գրքի վերջին գլուխներու մէջ Աժդահակի պատմութիւնը, Բիւրասպի Աժդահակայ զրոյցն ալ զետեղած է անոր մերձաւորութեան:

3. Այս Յաւելուածին առաջին հատուածը կը ներկայացնէ Պարսից Առասպելին կարեւոր գծերը Բիւրասպի Աժդահակայ մասին. Բ. հատուածը, որ «Ստորագրութիւն» խորագիրը կը կրէ, կու տայ «որ ինչ սակս Բիւ-

*րասպեայ հաւատալիք», այս ինքն Առասպելին պատմական ուղեծուծը:*

*Աչքի կը զարնէ հոս այն իրողութիւնն, որ Խորենացւոյ «Մատրագրութեան» մէջ նկատի առնուած «Բիւրասպի Աժդահակը» իւր նկարագրականովը բոլորովին կը խոտորի այն «Բիւրասպի Աժդահակէն», զոր կ՚ենթադրէ «Պարսից Առասպելը»: Կարեւոր կը համարիմ Ա. եւ Բ. հատուածները ուսումնասիրել զատ զատ:*

4. *Մ. Խորենացի խօսքը ուղղելով իւր Մեկենասին՝ Սահակ Բագրատունւոյ կը գրէ. «Բայց զի՞նչ արդեօք տարփանք քեզ եւ Բիւրասպեայ Աժդահակայ փծուն եւ անճոռնի առասպելքն իցեն. եւ կամ է՞ր սակս զմեզ Պարսից անյարմար եւ անոճ բանից, մանաւանդ թէ առաւել վասն անբանութեան՝ առնես աշխատ.*

1. *եւ անբարի առաջնոյ նորա (Բիւրասպի Աժդահակայ) բարերարութեան.*

2. Եւ դիւաց նմա սպասաւորութեան («մանուկ սատանայի, ասեն, սպասաւորելով՝ լինէր կամակատար»).

3. Եւ ոչ վրիպեցուցանել կարելոյ զվրիպեալն եւ զուտն.

4. Եւ ուսոցն համբուրումն («պարգեւ ի նմանէ խնդրեալ՝ համբուրէր զուսն»).

5. Եւ անդուստ վիշապացն ծնունդ.

6. Եւ յայնմհետէ չարութեան յաճախութիւն.

7. ծախել զմարդիկ ի պէտս որովայնի («անբաւ մարդիկ սկսաւ զոհել դիւաց»).

8. *խոհ տապ* եւ Հրուդենայ *ումենն* զնա կապել սարեօք պղնձեօք.

9. եւ ի լեառնն տանել որ կոչի Դըմբաւընդ.

10. *այլ* եւ ի ճանապարհի ննջելն.

11. եւ տանել զնա յայրս ինչ լերինն եւ կապել.

12. եւ զինքն (*Հրուդենայ զպատկեր իւր*) անդրի ընդդէմ նորա հաստատել.

13. յորմէ պակուցեալ՝ հնազանդեալ կայ շղթայիցն.

14. եւ ոչ զօրէ ելանել եւ ապականել զերկիր»:

5. *Արդէն շատ անգամ հաստատուած է, թէ Մ. Խորենացի այս 1—14 կէտերու մէջ ամփոփած է Իրանեան հին աւանդավէպ մը, զոր Ժ. դարուն լսած է նաեւ Ֆիրդուսի նոյն «ի Պարսից առասպելաց» եւ ընդարձակած է իւր բանաստեղծի գրչով Շահնամէի առաջին Գրքի մէջ իբրեւ Զոհակի պատմութիւն:*

*Առասպելս, որ հիմ ունի իրեն Իրանեան ծագումէ աւանդավէպ մը, ընթացք առած է Իրանէն եւ անցած է ժողովուրդէ ժողովուրդ. շատ սիրուած է մանաւանդ Կովկասեան ազգերու քով, որոնք աւանդած են նոյնը այլ եւ այլ զանազանութեամբ: Հայոց Արտաւազդի, Տիգրանի եւ Մհերի, Վրաց Ամիրանի եւ Յունաց Պրոմեթէոսի աւանդավէպերը յէտկանս*

կ՚ընդգրկէն զիրար եւ Իրանեանին հետ կապ ունին :

6· Մովսէս Խորենացի, որ յառաջ կը բերէ դժկամութեամբ այս աւանդավէպը «ի Պարսից առասպելաց», լսած է զայն ոչ թէ ուղղակի Պարսից բերնէն, այլ Հայ ժողովրդեան «առասպելներէն», թէեւ կը լռէ խոստովանիլ այս աղբիւրը: Ինձ կը թուի թէ մենք ունինք հոս «Բիւրասպի Աժդահակ» աւանդավէպը շատ հին Հայերէն թարգմանութեամբ, որ իւր հնութեամբ ժամանակակից է Արշակունեան շրջանի այն Հայերէն անգիր գրականութեան մնացորդներուն, որոնք պահուած են Փաւստոս Բիւզանդի, Մ· Խորենացւոյ եւ Գրիգոր Մագիստրոսի քով:

Երկարմատեան վարդապետութեան ծնունդն է աւանդավէպս· բարւոյ եւ չարի կռիւը կը ներկայացնէ: Զանդիկ գրականութիւնը խօսելով Հրուդէնի (Θraetaona) մասին կ՚ըսէ· «անիկա էր, որ սպաննեց Դահակ Վիշապը, որ երեք երախք, երեք գլուխ, վեց աչք եւ հազար զգայարանք ունէր, այն հզօր, դիւական գազանը, զոր ստեղծած էր չար դեւը ի վնաս երկրաւոր էակներու՝ ապականելու համար արդարներու ժողովուրդը»:

Ֆիրդուսի աւանդավէպին պատմական հանդերձ զգեցնելով՝ այսպէս կը ներկայացնէ· Թեհմուրազ թագաւորի գահին վրայ կը բազմի անոր որդին Ջեմշուդ: Անիկա կը թագաւորէ Իրանի վրայ 700 տարի: Բովանդակ տիեզերքը կը հպատակէր անոր· կը հնազանդէին

անոր հրամաններուն նաեւ դեւերն եւ ոգիները: Անիկա ծաղկեցուց Պարսկաստանի մէջ քաղաքակրթութիւնը. հպարտացաւ, եւ ուզեց որ մարդիկ իրեն ինչպէս Աստուծոյ երկրպագութիւն մատուցանեն:

Նոյն ժամանակները Տաճկաստանին կ'իշխէր բարեպաշտ թագաւոր մը Մերդաս անուն: Անիկա Դահակ (Զոհակ) անուն որդի մ'ունէր, որ նաեւ Բիւրասպ կը կոչուէր, վասն զի տէր էր 10.000 ոսկեսանձ ձիերու: Իբլիս դեւը թելադրեց իրեն, որ սպաննելով հայրը՝ ինքը նստի անոր գահին վրայ: Դահակի համաձայնութիւնն առնելով Իբլիս՝ Մերդաս թագաւորը խոր փոսի մը մէջ կը գլորէ եւ կը սպաննէ: Հայրասպանն Դահակ կը տիրանայ գահին: Իբլիս այս անգամ գեղադէմ երիտասարդի կերպարանքի տակ կը ներկայանայ Դահակի եւ իբրեւ խոհակեր կը մտնէ անոր ծառայութեան: Կը պատրաստէ իր տիրոջ համար անասուններու մսով կերակուր. առաջին անգամն էր, որ միսը իբրեւ սնունդ սեղանի վրայ կը հանուէր: Այս ծառայութեանց փոխարէն կը խնդրէ Իբլիս թագաւորէն, որ թոյլ տայ իրեն համբուրել անոր ուսերը: Դահակ կամակատար կ'ըլլայ: Խաւարի ոգւոյն համբոյրէն Դահակի ուսերուն վրայ սեւ վիշապներ կը բուսնին: Կը հրամայէ թագաւորը, որ կտրեն վիշապներու գլուխները. բայց անօգուտ. անոնք նորէն կ'աճին: Բժիշկները անձեռնհաս կ'ըլլան դարման տանիլ: Իբլիս բժշկի կերպարանքով կը

մերձենայ Դահակին, խորհուրդ կու տայ անոր, որ մարդկային ուղեղով կերակրէ վիշապները. կը յուսար չար դեւը, թէ այս եղանակով պիտի ջնջուին աշխարհէս մարդիկ:

Այս միջոցին Իրանի մէջ ապստամբութիւն մը կը ծագի. ամբոխը կը հալածէ Ջեմշուդը: Անոր տեղ Իրանի թագաւոր կը հրաւիրուի Դահակ: Հազար տարի կը թագաւորէ Դահակ Իրանի գահին վրայ. անթիւ չարիքներ կը գործէ: Իր վիշապները կերակրելու համար օրական երկու մարդ կը զոհէին:

Երբ կը կատարուէին այս չարիքները Իրանի մէջ, Ջեմշուդի ցեղէն կը ծնի Փերիդուն (Հրուդէն): Սա իր հօրը՝ Ջեմշուդի սպաննութենէն ետքը կը թաքչի անտառի մը մէջ. զինքը կը կերակրէր Պերմայէ կոչուած զարմանալի կովը: Երբ այս տեղ ալ կը հետապնդուի Փերիդուն Դահակի ծառաներէն՝ մօրը հետ կը փախչի Հնդկաստան եւ փարս հովուի մը քով ապաստան կը գտնէ: Փերիդուն լսելով մօրմէ թէ Թեհմուրայ թագաւորի ցեղէն է եւ այս պատճառաւ կը հալածուի Դահակէն, կ'երդնու իր հօրը վրէժը լուծել անկէ: Դէպքերը կը նպաստեն իրեն: Կաւէ, Սպահանցի դարբին մը, որուն 17 որդիները կեր եղած էին Դահակի վիշապներուն, տեսնելով որ իր վերջին որդին ալ պիտի զոհուի, կը բարձրացնէ իր դարբնի կաշեայ գոգնոցը նիզակի ծայրը եւ անցած ամբոխի գլուխը կը քալէ չարագործ Դահակի վրայ. ամբոխին կը խառնուի Փերիդուն, զի-

նուած ահագին լախտով մը, որ կովի գլխու մեծութիւնն ունէր: Ապստամբները զէնքը իրենց առաջնորդ կ'ընտրեն: Կ'ընդհարուին անոնք քանիցս Դահակի զօրքին հետ. ի վերջոյ կը յաջողի Փերիդուն իջեցնել իր լախտը Դահակի գլխուն եւ գետին կործանել զանիկա: Բայց Սերոշ հրեշտակը խորհուրդ կու տայ իրեն, որ փոխանակ սպաննելու Դահակը՝ քաշէ տանի զանիկա Դեմաւենդ լեռը եւ հոն խոր այրի մը մէջ բեւեռէ ժայռի մը: Փերիդուն կը հետեւի խորհուրդին: Դահակ բեւեռուած է հոն ժայռի մը. անիկա երբեմն երբեմն կը կատղի եւ յառաջ կը բերէ երկրաշարժներ: Այսպէս Ֆիրդուսի:

Ֆիրդուսիի անծանօթ մնացած է աւանդավէպին այն տեղիքը, ուր կ'ըսուի թէ Հրուդէն «զինքն անդրի ընդդէմ հաստատել, յորմէ պակուցեալ՝ հնազանդեալ կայ շղթայիցն»: Թէ հայ աւանդավէպը «Պարսից տուասապելի» մէկ հարազատ գիծը պահպանած է, կը տեսնուի Իբն ալ-Ֆաքիհ ալ-Համադանի արաբ աշխարհագրին հաղորդած նոյնանման տեղեկութենէն, որուն համաձայն Աֆերիդուն (Հրուդէն) զԲեւարասփ Դարբնաց գիւղ կոչուած լեռան վրայ բանտարկելէն եւ հսկողութեան յանձնելէ ետքը «անոր (Բիւրասպի) առջեւ Աֆերիդունի նմանութիւնը կանգնել տուաւ լերան քարանձաւի մը մէջ եւ զանիկա այս պատկերով կապեց»:

Ինչ որ կը պատմէ Իբն ալ-Ֆաքիհ. լերան

չուրջը գտնուող դարբիններու մասին, նոյն կը հնչէ այն առասպելին հետ, զոր նկատմամբ Արտաւազդի յառաջ կը բերէ Մ. Խորենացի, Բ. 61: Արտաւազդի զրոյցը ունի իր մէջ գծեր, որոնք կապ ունին Աժդահակի զրոյցին հետ. «Զրուցեն զմանէ եւ պառաւունք, եթէ արգելեալ կայ յայրի միում, կապեալ երկաթի շղթայիւք. եւ երկու շունք հանապազ կրծելով զշղթայն՝ ջանայ ելանել եւ առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կռանահարութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն: Վասն որոյ եւ առ մերով իսկ ժամանակաւ բազումք ի դարբնաց զհետ երթալով առասպելին՝ յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ»:

Դըմբաւընդ լեռան ստորոտը անդի ունեցած կռանահարութիւնք փոխադրուած են նաեւ Մասեաց ստորոտը Աժդահակի առասպելին հետ, որ հոս նաեւ Արտաւազդի մերձեցուցած է պառաւներէ ոմանց բերանը:

6. Վկայ են այս հնութեան առասպելին անուններն եւ բառարանը, զորոնք Մ. Խորենացի դժուարաւ թէ Թ. դարուն ինքնին հայացուցած ըլլար պարսիկ գրաւոր կամ անգիր աղբիւրէ մը: Անունները աւանդուած են հին ուղղագրութեամբ եւ բառերու ընտրութիւնը կը կրէ դասական շրջանի կնիքը, այն նկարագիրը, որ յատուկ է հին երգերուն:

## ԱՆՈՒՆՆԵՐ

Աժդահակ աւանդավէպին չար ոգին է. անոր զանդիկ ձեւն է *aži dahāka* (ուղղականն՝ *ažiš dahākō*), այն է «Իժ Դահակ». պազենտի մէջ եղած է *ažidahāk*, նոր պարսկ. *aždahā*, արաբացած՝ *Daḥḥāk (Zohak)*։ Հայ ստուգաբանութեան հնութեան վկայ է Եւսեբեայ Քրոնիկոնի թարգմանիչը Ե. դարու առաջին կէսին, որ Մարաց Ἀστυάγης թագաւորին անունը կը հայացնէ Աժդահակ (Հատոր Ա., էջ 101—102)։ Անունս նոր պարսկերէնէ փոխառութեամբ ունինք նաեւ Աժդահայ ձեւով, որ հսկայ, անձնեայ, անարի իմաստն առած է։ Բառին սկզբնական նշանակութեան մասամբ ծանօթ կը ցուցնէ ինք զինքը Մ. Խորենացի, երբ կը գրէ թէ «Աժդահակդ ի մեր լեզուս վիշապ է» (Ա. 30)։ Անուան մէջ «վիշապ» նշանակող մասն է աժ-, զանդ. *aži-*, «իժ», որ իր կարգին կ՚ենթադրէ սանսկրիտ *áhi-* «օձ, վիշապ», յունարէն ἔχις, ἔχιδνα, հայերէն իժ, հնդեւրոպական *egʷhi- արմատէն զարգացած (Hübschmann, Armenische Grammatik, 450. Աճառեան, Արմատ. Բառարան, ը. բ. իժ)։ Այսպէս հնդեւրոպական ծագումը իժ բառը զանդիկէն փոխառութեամբ եղած է աժ-. մերձաւոր արմատէ զարգացած է նաեւ հայերէն աւձ (հմմտ. Աճառեան, Արմատ. Բառարան, ը. բ.)։

Բիւրասպի յորջորջումը, զոր կը կրէ

Աժդահակ, կը ծագի զանդիկ baevarə + aspa, բիւր (= 10.000) ասպ (= ձի) ունեցող. ասկէ է պահլաւերէն եւ պազենդ. Bēvarāsp. նոր պ. Bēvarasp անունը: Ֆիրդուսի Աժդահակը Իրանեան թագաւոր ենթադրելով, անոր «Բիւրասպ» յորջորջանքը մեկնած է. «վասն զի ունէր բիւր ոսկեսանձ ասպ»: Մ. Խորենացի բառիս ուղղական ձեւը գիտէ Բիւրասպի. նոյն ձեւով կ՚անուանէ նաեւ Գրիգոր Մագիստրոս (Թուղթք, էջ 90): Այսպէս Բիւրասպի կարող ենք հնաձեւ մը նկատել, «Բիւրասպեան» իմաստով: Բայց Խորենացի երբ կը հոլովէ «Բիւրասպեայ», կը մոռնայ բառավերջ -ին եւ նմանութեան կը ձգտի «Վշտասպ, -եայ, Շաւասպ, -այ» հոլովաձեւերին, մինչ ուղղագոյնն պիտի ըլլար «Բիւրասպւոյ»: Կարելի է սակայն մտածել նաեւ, որ անիկա լած ըլլայ ժողովրդեան բերնին մէջ «Բիւրասպեայ» ձեւն ալ, ոչ սեռական հոլովով այլ իբրեւ ածական:

Ասպով կազմուած շատ անուններ ունինք, ամէնն ալ պահլաւերէնէ փոխառութեամբ. կը յիշեմ՝ Համազասպ, Շաւասպ, Վնասպ, Վշնասպ, Վշտասպ:

Բիւրասպի գործածուած է հօս ածականաբար. այսպիսի բարդութեամբ են՝ բիւրազգի, բազմանկիւնի, չորեքկուսի, երկդիմի, միականի, բազմադիմի եւն:

Բիւրասպեայ համազօր է Բիւրասպիի. նոյնպէս Բիւրասպեանը (հմմտ. Համազասպեան): Թէ Բիւրասպ-ի եւ թէ Բիւրասպ-եայ

հին ձեւեր են, որոնք երեւան կու գան նաեւ պատական մատենագրութեան մէջ :

Հրուդէն ծագած է ձայնափոխութեամբ հին զանդիկ *Θraẹtaona-* ձեւէն, որ պահլաւերէնի մէջ եղած է *Frētūn*, պազենդի մէջ *Frēdūn* եւ նոր պարսկ. *Faredūn*, համմտ. յուն. Φούρτων, զօրավարին Սանատրուկ Բ.ի, 114ին, որ գրուած է նաեւ Φουρτουης (Justi, Namenbuch, 331—332) : Թ. դարուն պազենտէ կամ նոր պարսկերէնէ հայացուելով անունս հաւանօրէն Փրեդուն պիտի ստացուէր. մինչ Հրուդէն հին պահլաւական ձեւի մը տառադարձութիւնն է, նոյն օրէնքով ինչպէս հրեշտակ (նաեւ հրշտակ), պհլ. **frēštak*, պրս. *firēšta*, հրամատար, պհլ. *framātar*, հրովարտակ, պհլ. *fravartak* եւն. Խորենացի պարսկերէն *Farraxᵛ* անունը տառադարձած է խոռոհ + բուտ. այսպէս նաեւ Սեբէոս խոռեամ (պ. *Farruhan*), խոռոխազատ = պ. *Farrux-zād*, խոռոխ-Որմիզդ, պ. *Farrux-Hormizd* եւն : Նոյն սկզբունքով նաեւ պ. *Faredūn* պիտի տառադարձէր խարեդուն, խորեդուն: Ըստ այսմ Հրուդէն համաձայն հին տառադարձական օրէնքին ճշգիւ տառադարձուած է, որուն համապատասխան է նաեւ յունարէնը Φούρτων (Φρουτων = Հրուդոն, Հրուդէն) :

Դըմբաւընդ լեռը, որ Մ. Խորենացւոյ ընծայուած Աշխարհացոյցի մէջ (եղական մասով Ե. դարու Բ. կէսէն) Դմբաւանդ ձեւով աւանդուած է (էջ 40, հրտ. Սուքրեան), եւ

Թովմ. Արծրունւոյ քով Դնբաւենդ (38) կը գրուի, պահլ. Damāvand, Dimbhāvand, Dabāvand անունն է, որ նոր պարսկերէնի մէջ Damāvand եղած է. Դարաւանդ գիտէ անունս նաեւ Գրիգոր Մագիստրոս («գիտեմ եւ զԲիւրասպի ի լեառն Դարաւանդ, որ է Կենտաուուն Պոխւղեայ» (էջ 90, 126, 127). Հիւբշման հնագոյն ձեւն կ'ենթադրէ Dumbāvand (Armenische Grammatik, 37). Հմմտ. եւ Marquart, Eranšahr, 127. պահլաւական Dimbhāvand ճշդիւ կը համապատասխանէ Դըմբաւանդ ընթերցուածին: Մ. Խորենացի Թ. դարուն հաւանօրէն Դաբաւանդ լսած պիտի ըլլար Պարսիկ բերնէ:

## ԲԱՌԱՐԱՆԸ

Անդրի արձան իմաստով, ծագած է յուն. ἀνδριάς (սեռ. ἀνδριάντος), արձան նկարէն, մարդկադէմ, ասկէ անդրիանդ (Եւս. Քր. Բ. 268), անդրիանտագործ (Ոսկ., Մատթ. Գ. 26) (ἀνδριαντοποιός), յաճախ կը գործածուի Ե. դարու մատենագրութեան մէջ. «Ոչ եթէ անդրի ձուլել տեսանիցես». Ոսկ. Մատթ. 527: «Անդրի պատկեր կանգնել ումեք». Կոչ. Ընծ. 102: «զԱնդրիդ, ասէ, զամենապարդ... ոչ տաց դիւաց». Ոսկ. Ես. 296: «Զամենայն տեղիս պատկերս եւ անդրիս նմանութեան իւրոյ լնոյր նա». Եւս. Եկեղ. Պատմութեան, 88: «Անդրիագործ պատկեր». Ագաթ. 37:

Բառս կ'երեւայ թէ հին փոխառութիւն է յունարէնէ: Մ. Խորենացի այս նախադասու–

թեան նմանութեամբ յօրինած է տեղիքներս· «Վերստին շինեաց (Մծբին)... եւ զինքն անդրի ի միջին հաստատեաց»· Բ. 36: «Մեհեան շինեալ յԱրմաւիր՝ անդրիս հաստատէ արեգական»· Բ. 8: «Բայց զանդրիսն զոր արար Վաղարշակ»· Բ. 77:

Շատ հաւանական է որ «անդրի հաստատել» հոս Խորենացւոյ գրչէն ըլլայ· հնագոյն շրջանին «անդրի կանգնել» նախասիրուած պիտի ըլլար:

Զօրել, կարել· հմմտ· Զինքն ընդէր ոչ զօրեաց պահել կենդանի· Եզնիկ, 142: Ո՞չ զօրիցեմ ապրեցուցանել· Ոսկ· Ես· 254: Ընդ բռնութեամբ եւ ընդ հարկաւ արկանել զօրիցէ· Ոսկ· Պաւղ· Ա· 10 եւն: Խորենացի ունի անգամ մը· «խլել ոք զօրեսցէ»· Ա· 16:

Ծախել· հմմտ· ի չարութիւնս ծախել զաւուրս· Ոսկ· Մատթ· 128· յանօգուտ զինչսն ծախել· անդ, 330· զամենայն ապաս պաշտաման ի պատարագս ողջակիզացն ծախէր· Բ. Մակ· Գ· 3 եւ այլն:

Յաճախութիւն չարութեան, դասականաց շատ սիրած մէկ բառն է, որ Խոր· քով անգամ մը միայն, եւ այն այս նախադասութեան մէջ, կը գործածուի: Հմմտ· Ոսկ· Ես·, ընչիցն յաճախութիւն, 17· — չարեաց, 29, 337· — թշուառութեանց, 42· — փառաց նորա, 166· — ուղղութեանց, 187· զ— անզգայութեան կռոցն, 310· — կերակրոց, 345· յաճախութեամբ մեղաց, 418· զյաճախութիւնն ցուցցէ զխայթողութեանն, 92:

Պակնում. Հմմտ. Պակնումն եւ պարտասրին, Ոսկ. Պաւղ. Ա. 85: Միթէ ոչ նստէին չուրջ՝ պակուցեալ պահապանքն, Ոսկ. Մատթ. Գ. 139: Քանզի պակուցեալք էին յահէն, Ոսկ. Մատթ. Գ. 117: Պակեաւ սիրտ ժողովրդեանն, Յեսու Է. 5: Զի մի պակիցեն յայնչափ զօրաց բազմութենէ, Բ. Մակ. Ը. 16:

Բառս ծանօթ է նաեւ Խորենացւոյ՝ առնել «զարմանալ» ոչ-պատահական իմաստով, հմմտ. Հիացեալ պակեաւ ինքնին թագաւորն (ընդ իմաստութիւնն Սահակայ), Գ. 65: Ահա պակուցանողս տարապուք յարձակմանց զմիմեամբք արկանեն, Ա. 11: (Զանխուլ գործեալ չարիքն) յայտնին եւ աշխարհի առ ի մեղուցելոց պակուցումն, Գ. 25:

Սարիէ. Հմմտ. Ծաղուհ «կապէր պատէր երկաթի սարեօք» զԱնեատրանն յոր երդուաւ թագաւորն Արշակ, Բուզ. Դ. 16: Արձակեաց (Դրաստամատ) զԱրշակ ի կապանացն երկաթեաց, ի ձեռակապացն եւ յոտիցն երկաթոց եւ յանրոց պարանոցէն չղթայիցն սարեացն, անդ, Ե. 7: Ընչաւէտ կապեալ է ի հողոց որպէս դշուն զի կապեալ է սարեօք (տպ. սարիւք), Վարք Հարանց, Բ. 648 (Ճառք Նեղոսի):

Բնիկ հայերէն բառ է (տե՛ս Աճառեան, Արմ. Բառ., բ. բ.), որ գործածուած է միայն յիշեալ մատեաններու մէջ. եւ անգամ մը միայն Խոր. քով:

Վրիպեցուցանել. Հմմտ. Ոչ վրիպեցոյց զարդարութիւն իւր, Ծնն. ԻԴ. 27: Վրիպե–

ցոյց զքեզ Տէր ի փառաց, Թիւք ԻԴ. 11: Առ ի վրիպեցուցանելոյ եւ արհամարհելոյ, Անդ. ԼԱ, 16: Անօրէնութիւնք մեր վրիպեցուցին զայն, Երեմիա, Ե. 25: Զի վրիպեցուսցէ եւ արկցէ ի թերահաւատութիւն, Ոսկ. Մատթ. Ա. 186: Գուցէ յանմահ բարութեանցն վրիպեցուցանիցեմք զանձինս, Ոսկ. Մատթ. Ա. 236: Զի յայնմ գեղոյ վրիպեցուսցէ զքեզ, Ոսկ. Մատթ. Բ. 708: յԱստուծոյ օգնականութեանցն կարիցէ վրիպեցուցանել, Ոսկ. Ես. 12: Յուղիղ ճանապարհէ վրիպեցուցանել, Ոսկ. Ես. 175: Կարաց վրիպեցուցանել եւ խոտ(որ)ել, Ոսկ. Ես. 126: Միթէ յԱստուծոյ ինչ վրիպեցուցի, Ոսկ. Ես. 352 եւն: Ի բարւոք ակնկալութենէ վրիպեցուսցէ, Եզնիկ, 105: Դիւթութեամբ... վրիպեցուցանէ զմարդիկ յԱստուծոյ ճշմարտութենէն, Եզնիկ, 184 եւն:

Խորենացի այլուր ամենեւին չի գործածեր բառս:

7. Առասպելի վերլուծութեան («ասորագրութեան») մէջ կը գրէ Խորենացի (91).

«Ասացեալն ի նոցանէ Բիւրասպի Աժդահակ <էր> առ Ներրովթաւ նախնի նոցա: Քանզի ի բաժանել լեզուացն ընդ ամենայն երկիր, ոչ խառն ի խուռն եւ ոչ անառաջնորդ այս լինէր, այլ աստուածային իմն ակնարկութեամբ գլխաւորք եւ ցեղապետք որոշեալք զիւրաքանչիւր սահմանս ժառանգեցին կարգաւ եւ զօրութեամբ: Եւ զայս Բիւրասպեայ հաւաստի անուն ճանաչեմ ես Կենտաւ–

րոս Պիւռիդայ, ի քաղդէականի լուեալ մատենի: Սա ոչ քաջութեամբ քան թէ հարստութեամբ եւ ճարտարութեամբ զցեղապետութիւն ազգին իւրոյ ունէր, հնազանդեալ Ներրովթայ»:

Խորենացի Աւանդեալին պատմական գիծ մը տալու համար Բիւրասպի Աժդահակը կը ներկայացնէ իբրեւ Պարսից ցեղապետ, որ լեզուաց խառնակութենէն ետքը «ոչ քաջութեամբ քան թէ հարստութեամբ եւ ճարտարութեամբ» ձեռք բերած է «ցեղապետութիւն ազգին իւրոյ», եւ այն «հնազանդեալ Ներրովթայ»: Մասուդիի համաձայն «Ներովթ կ՚իշխէր Բաբելոնի իբրեւ կուսակալ Աժդահակայ Բիւրասպ կոչեցելոյ» · կը գրէ Մասուդի (Morondj, I. հմմտ. Quatremère, Journal Asiatique, 1835, էջ 103). «Ջրհեղեղէն ետքը մարդիկ այլ եւ այլ երկիրներու մէջ հաստատուեցան. անոնց թուին մէջ էին նաեւ Նաբութեանք, որոնք Բաբելոնը շինեցին. եւ Քամայ ծնունդք, որոնք նոյնպէս բնակեցան նոյն աշխարհին մէջ եւ ունէին իրենց առաջնորդ զՆերրովթ որ էր որդին Քանանի, որդւոյն Սենքարեբի, որդւոյն առաջին Ներրովթի, որդւոյն Քուշի, որդւոյն Քամի, որդւոյն Նոյի: Այս բնակութիւնը տեղի ունեցաւ այն ժամանակ, երբ Ներրովթ կ՚իշխէր Բաբելոնի, իբրեւ կուսակալ Աժդահակայ (Dzahhak) Բիւրասպ կոչեցելոյ»:

Ասկէ յայտնապէս կը տեսնուի թէ Մովսէս ունէր աչքի առաջ մեկնողական գրուածք

մը, որ Աժդահակը որ եւ է կերպով Նեբրովթի հետ կապակցութեան մէջ կը դնէր. նման աղբիւրէ մը ուսած կ'երեւայ նաեւ Մասուդի:

Բայց յայտնապէս Խորենացւոյ երեւակայութեան ծնունդն է Բիւրասպի նոյնացումը Կենտաւրոսի հետ. այս նոյնացման համար աղբիւր մատնանիշ կ'ընէ. «ի քաղդէականի գտեալ մատենի»:

«Կենտաւրոս Պիւռիդեայ» կ'ենթադրէ Κενταῦρος Πυρετός = «Կենտաւրոս Պիւրետոս». Խորենացի «ի քաղդէական մատենի»՝ անուանս պատահած պիտի ըլլայ «Կենտաւրոսի Պիւռիդեայ»՝ այսպէս սեռական հոլովով, որուն ուղղական ձեւը ենթադրած է «Կենտաւրոս Պիւռիդեայ»: Խորենացի այլուր գիտութեամբ կամ անգիտութեամբ Կենտաւրոսը հայացուցած է «Յուշկապարիկ». «Անդ էր տեսանել զՂապիթեայց եւ զՅուշկապարկացն կռիւս ի վերայ Պերիթեայ հարսանեացն» (Բ. 63). բառական փոխ առնուած Սոյն Կալիսթենեայ Աղեքսանդրի վարքէն. «Եւ անդ էր տեսանել զՂապիթեացն եւ զՅուշկապարկացն կռիւսն ի վերայ Պիրեթեայ (ՁՁ. «Պերեթեայ» եւ «Պիրիթեայ») հարսանեացն եղեալ» (տպ. 27): Եւսեբեայ Քրոնիկոնի թարգմանիչը Կենտաւրոսը կը թարգմանէ Իշացուլ. «Իշացուլ եւ Ղապիթայ կռիւ: Իշացուլքն Թեսաղացւոց հեծեալք էին» (Բ. 128): Նոյն գրոց մէջ այլուր (Ա. 22) յուն. ίπποχενταύρος կը թարգմանուի որ «զձիացլուց յուշկա-

սպաթիկ կերպարանս ունիցին» (οἷς ἱπποκενταύρους τὴν ἰδέαν εἶναι). այսպէս նաեւ Ոսկ. Պաւղ. Ա. 602 «գծագրութեան ի քմաց առեղծանեն»։

Պետրէոս Կենտաւրոս մը կը յիշէ Ովիդիոս (Այլակ. 12, 449)։ Խորենացւոյ աղբիւրը անծանօթ է. յամենայն դէպս քաղդէական մատեանք չեն։

8. Խորենացւոյ մեկնութիւնը Բիւրասպի Աժդահակի մասին, թէ «Եւ այս (= դեւ) ափրեալ՝ որ դշխրութիւնն նիւթէր, ուսուցանէր նմա ի տան եւ ի հրապարակի՝ անկակած զգլուխն ի վերայ ուսոյն Բիւրասպեայ դնելով եւ խօսելով յականջսն՝ ուսուցանէր զանօրէն արուեստ. զոր յԱռասպելին մանուկ սատանայի, ասեն, սպասաւորելով լինէր կամակատար. եւ այսպ վասն որոյ զպարգեւ ի նմանէ խնդրեալ՝ համբուրէր զուսսն», ուղղակի աւանդավէպէն վերցուած է այսր. որ Ֆիրդուսիի Իբլիսն է, որ խորհուրդ տուաւ Աժդահակին հայրը սպաննել եւ անոր գահին տիրանալ. «մանուկ սատանայի, ասեն սպասաւորելով՝ լինէր կամակատար», Խորենացւոյ ընդօրինակումն է Առասպելին. սկզբնագրին մէջ ըլլալու էր. «մանուկ այսոյն (կամ դիւի) սպասաւորեալ նմա (Աժդահակայ), լինէր նա կամակատար <կամաց նորա>»։

«Կամակատար» ունի անգամ մը Եզնիկ (91). «որ է հնազանդ եւ կամակատար»։ Նաեւ Ագաթ. 299 խումբ մը ձեռագիրներու մէջ։

Սատանայ, *որ ասորերէնէ փոխառութիւն է քրիստոնէական շրջանին, կարելի չէ հեթանոս հայուն աւանդավէպին մէջ ենթադրել: «Այս» իբրեւ չար ոգի կարող է հին ըլլալ. Խորենացի այլուր յառաջ բերած է Արտաւազդի առասպելէն տեղիքս. «զողացան* զմանուկն *Արտաւազդ եւ* դեւ *փոխանակ եդին»* (Բ. 61):

*Նոյն պարսիկ աւանդավէպէն է նաեւ «եւ ապա՝ վասն որոյ <— ասեն —> պարգեւ ի նմանէ խնդրեալ <դիւին (կամ այսոյն)>՝ համբուրէր <դեւն> զուսսն <Աժդահակայ>»: Այս համբոյրին հետեւութեամբ — վիշապներ կը բուսնին Աժդահակի ուսերուն վրայ: Խորենացի զայս մեկնել ուզելով կը գրէ. «Իսկ* վիշապացն բուսումն *կամ կատարելապէս վիշապանալն Բիւրասպեայ որ ասի, է այս. քանզի անրաւ մարդիկ սկսաւ զոհել դիւաց. մինչեւ տաղտկանալ ի նմանէ բազմութեանն եւ միաբանել ամենեցուն եւ հալածել. եւ փախչել նմա ի նախասացեալ լերինն կողմանս: Եւ ի սաստիկ վարելոյն... ի նմանէ»: Մնացեալը, զոր կը գրէ Խորենացի, Աժդահակի վէպին չի վերաբերիր: Այս տեղ ունինք Առասպելէն հետեւեալ տեղիքներն միայն.*

*Դեւն, որ կը սպասաւորէր Աժդահակի, փոխարէն կը խնդրէ, որ թոյլ տայ իրեն Աժդահակ՝ համբուրել ուսերը եւ նա թոյլ կու տայ. «վասն որոյ պարգեւ ի նմանէ խնդրեալ՝*

համբուրէր զուսն»· այս համբուրած անդերէն վիշապներ[6] կը բունին։ «Վիշապացն բունումն» կը վերաբերի վէպին· Խորենացւոյ գրչէն է «կամ կատարելապէս վիշապանալն Բիւրասպեայ», վասն զի Խորենացւոյ ըմբռնմամբ «Աժդահակդ վիշապ թարգմանի»։ Մինչ բառ ստուգաբանութեան է Վիշապ–Դահակ = Իժ–Դահակ։

«Ամբաւ մարդիկ սկսաւ զոհել (Աժդահակ)» ո՛չ «գիւաց», այլ ուսէն բուսած վիշապներուն ի կերակուր։ Խորենացին Աստապելին միտքը չէ հասկցած։

Վէպին հարազատ մասն է· «մինչեւ ապականեալ ի նմանէ բազմութեանն <մարդկան> եւ միաբանե[ա]լ ամենեցուն (ընդդէմ նորա) եւ հալածել (զԲիւրասպի Աժդահակ) եւ փախչել նմա ի [Նախասացեալ] (Դըմբաւընդ) լերինն կողմանս։ Եւ ի սաստիկ վարելոյն (բազմութեանն) զնա՝ թօթափեցաւ ամբոխ նորա ի նմանէ»։ Կաւէի ապստամբութիւնը կ՚ակնարկուի։ Աժդահակ Հրուդէնի հարուածին տակ կ՚իյնայ կխամեռ· աւանդավէպը գիտէ թէ ի Դմբաւընդ շղթայուած է Աժդահակ։ Ուստի ինչ որ կը պատմէ Խորենացի Աժդահակի սպանման մասին, օտար է վէպին։

---

[6] Հմմտ. Ոսկ. Մատթ., Ա., 446· «փոխանակ երկուց ձեռացն՝ երկու վիշապք յուսոցն արձակեալ կախեցին»։

Բ.

Գ. Մովսէս Խորենացի իւր վերլուծման մէջ յառաջ կը բերէ գծեր, որոնք չեն հայիր Աժդահակի առասպելին. անոնք համայնավար Մազդակի անձին եւ վարդապետութեան մասին են: Այս տեսակէտէ հետաքրքրական են այս գծերը եւ արժանի մանր նկատողութեան:

Կը գրէ Մովսէս, թէ Բիւրասպի Աժդահակ «առ Նեբրովթաւ նախնի նոցա» այս ինքն Պարսից նախապեան եղած է. «առ ոչ քաջութեամբ քան թէ հարստութեամբ եւ ճարտարութեամբ ցեղապետութիւն ազգին իւրոյ ունէր՝ հնազանդեալ Նեբրովթայ. եւ խառնակաց զկենցաղս կամէր ցուցանել ամենեցուն. եւ ասէր ոչինչ իւր առանձին ումեք ունել պարտ է, այլ խառնակաց: Եւ ամենայն ինչ նորա յայտնի էր բան եւ գործ. եւ ի ծածուկ ինչ ոչ խորհէր, այլ զամենայն յանդիման արտաքս բերէր լեզուաւ զծածուկս սրտին: Եւ զել եւ զմուտ բարեկամացն որպէս ի տուընջեան նոյնպէս եւ ի գիշերի սահմանէր: Եւ այս է առաջին նորա ասացեալ անօրէն բարերարութիւնն: — Այլ քանզի աստեղաքանութեամբ հզօր եղեալ՝ յօժարեցաւ ուսանել եւ զկատարեալ չարութիւնն. եւ այսուքիկ անկարելիք նմա. քանզի որպէս վերագոյնն ասացաք՝ ատելութիւն ունէր պատրանաց աղաղակաւ առ բազումս՝ ոչինչ ի ծածուկ գործել. եւ <քանզի> զայնպիսի վեր–

չին եւ կատարեալ չարութիւն յայտնի ստա-
նել կարողութիւն ոչ էր, հնարի այսպիսում
պատմութեան հնարս. ցուս ինչ յորովայնի
ունել բազբաղէր չարաչարս, որ ոչ այլով
իւիք քան թէ բանիւ իմն եւ անուամբ ասկա-
լեալ բժշկիցի, զոր վայրապար լսել ումեք
ոչ է կարողութիւն» (91—92):

Արդէն Շտաքելբերգ WZKM 12 (1905), 237—238. միտ դրած էր որ Մ. Խորենացւոյ այս տողերու տակ համայնավար Մազդակի մասին ակնարկութիւններ կը տեսնուին: Կը գրէ Շտաքելբերգ. «Թէպէտ Տարարի կը պատմէ թէ Ֆերիդուն Դահակին յաղթելէն ետքը հող տարաւ որ այն երկրամասերն ա- այլ տուցուածքները, զորոնք Դահակ կոր- զած էր մարդիկներէն, վերադարձուցին իրենց նախկին տէրերուն, իսկ անտէր մնացած- ները բաշխուեցին աղքատներուն եւ ամիկնե- րուն», բայց եւ այնպէս կարելի չէ, պատմա- գրին այս տողերէն հետեւցնել, թէ համայ- նավարական կարգերը այնպէս վաղ հաստա- տուած ըլլան, ինչպէս Մ. Խորենացի կ'են- թադրէ, որ Աժդահակի կը վերագրէ զանոնք: «Մեզի այնպէս կ'երեւայ թէ Մովսէս Խորե- նացւոյ այս տողերը Մազդակի վարդապետած դարուն համայնավարական աղանդի մասին ակնարկող յուշեր են: Այս անդրադարձու- թիւնները Մովսէսին են քան աւանդութեան. Մովսէս գիտած է ասով իր Մեկենասը ան- հեղեղ աստուածներէ եա կեցներ»:

Թէ ինչ կ'իմանայ Մովսէս «զամենայն

յանդիման արտաքս բերէր զծածուկս սրտին», բացայայտ չէ. յամենայն դէպս Պարսից Աւեստային անծանօթ է այս: Բայց կ'երեւայ թէ համայնավարական սկզբունքէ բղխած վարդապետութիւն մըն է, որ կը խօսէ գիւղագիտական գաղտնի դաշնադրութիւնները, եւ ոչ միայն գիւղագիտական, այլ եւ կենցաղական ամէն գաղտնի յարաբերութիւնները, որ մասամբ բնապետական սկզբունքներու կը յարի: Մութ է նաեւ «կատարեալ չարութեան» գիտութիւնը, որուն հասնիլ կը ձգտէր աղանդապետը:

Աղանդապետը «ցաւս ինչ յորովայնի ունել բարբառէր չարաչարս». Ի՞նչ հիւանդութիւն էր այս, «որ ոչ այլով իւիք քան թէ բանիւ իմն եւ անուամբ սոսկալեաւ բժշկիցի»: Խորենացի անպատշաճ կը համարի այս «սոսկալի բանն եւ անունը» գրի առնել. անոնք առանց տարակուսի դիւահարի անհամեստ եւ ամբարիշտ հայհոյութիւններն էին: Պարսից Աւեստային նաեւ այս «կատարեալ չարութեան» կամ «անբարի բարերարութեան» անծանօթ է:

Ամբողջը Մազդակի վարդապետութեան մերձեցման համար կռուան կ'ընծայէ մեզի Խորենացւոյ հետեւեալ տողերը. «Համարակաց զկենցաղս կամէր ուսուցանել ամենեցուն. եւ ասէր ոչինչ իւր առանձին ումեք ունել պարտ է, այլ համարակաց», ուստի ինչք, ստացուածք, նաեւ կին:

Այս վարդապետութիւնը Պարսկաստանի

մէջ քարոզեց առաջին անգամ Մազդակ, որ յայտնուեցաւ Կաւատի թագաւորութեան (490—527) առաջին տարիներուն: Մազդակի վարդապետութեան մասին համառօտ ակնարկութիւններ ունին յոյն եւ ասորի ժամանակակից մատենագիրք. աւելի ընդարձակ կը խօսին արաբ հեղինակներ եւ Ֆիրդուսի:

Մազդակեան աղանդի հիմնադիրը առ հասարակ կը ներկայացուի Մազդակ որդի Բամդատի: Տաբարի կը գրէ թէ մազդայական աղանդին բուն հիմնադիրն եղած է Զարադուշտ որդի Խորականի ի Պասայ. իսկ Մազդակ անոր առաքեալն եղած է ժողովրդեան քով: Ըստ այսմ ստացուածոց եւ կանանց հասարակաց ըլլալու վարդապետութիւնը կրնար աւելի կանուխ քարոզուած ըլլալ, որչափ ալ անծանօթ մնայ մեզի Խորականի որդւոյն Զարադուշտի ժամանակն եւ անձը: Յամենայն դէպս այս Զարադուշտը պէտք չէ նոյնացնել Զրուանի հետ, որ Պուրուշասպայի որդին էր:

Մազդակի հայրենիքը Դինաւարի կը նշանակէ Ստահր. Տաբարի զայն Մադարիյա կ'անուանէ: Աղանդապետի Մազդակ անուան արտասանութիւնը բոլորովին ստոյգ չէ: Թէպէտ արաբ հեղինակները առ հասարակ Mazdak կը կարդան, բայց Եաքութի գիտէ նաեւ Maždak = Մաժդակ: Կայ Mizdak գրութիւնն ալ (Նէօլդեկէ, 456): Արմատը Մաժդ– կրնայ թերեւս համեմատուիլ Մաժդ–ոցի հետ, որ նաեւ Մաշտոց եւ Մաշթոց կը գրուի: Ար-

գեօք Մ. Խորենացի, որ շփոթած է Մաժդակ եւ Աժդահակ անունները, անոնց նմանաձայնութենէն չէ՞ մոլորած:

Ֆիրդուսիի համաձայն Մազդակ Կաւատի արքունիքին մէջ գանձապահ էր: Իր վարդապետութիւնը այսպէս սկիզբ առաւ. Երան աշխարհի մէջ անյաջող հունձքի հետեւութեամբ սաստիկ սով տեղի կ'ունենայ: Ժողովուրդը անտանելի նեղութեան մէջ կ'իյնայ, մինչդեռ արքունիքն եւ նախարարական տուները մթերած առատ ցորեն իրենց շտեմարաններու մէջ գերծ մնացին սովէ: Ժողովուրդը շատ անգամ ձայն բարձրացուց. հաց կը պահանջէր: Այս ընդհանուր սովը կ'երեւայ թէ յուզած է Մազդակի սիրտը: Գնաց անիկա թագաւորին եւ առակով հարցուց անոր, թէ ի՞նչ ընելու է ժողովրդեան վիշտը թեթեւցնելու համար: Եթէ մարդ մը, ըսաւ, թունաւոր օձէ մը խայթուի եւ դրացին հակաթոյն մ'ունենայ եւ չուզէ տալ եւ մարդը մեռնի, կարելի՞ է անոր մահուան պատճառ դրացին համարել: Ի հարկէ, պատասխանեց թագաւորը. եւ եթէ ամբաստանուի այնպիսին, պէտք է դատապարտուի, որովհետեւ չխափանեց ընկերոջ մահը, զոր կարող էր: Նոյն իմաստով երկրորդ հարցում մ'ալ ուղղեց Մազդակ թագաւորին եւ ընդունեցաւ նման պատասխան մը:

Ասոր վրայ իրաւունք համարեցաւ Մազդակ արքունի շտեմարաններու մէջ պահուած ցորենները բաժնել սովեալներուն: Երբ հա-

մար կը պահանջէ Թադէոսը Մազդակէն որքանի ցուրտններու վաստման մասին, կ'ար-դարացնէ ինքզինքը Մազդակ նոյն ինքն Թա-դէոսին տուած պատասխաններով: Լսելով զայս Թադէոսը՝ կը խնդրէ Մազդակէն, որ իր այս նորայայտ վարդապետութեան մասին իրեն աւելի մանրամասն ճառէ: Այն ատեն կը յայտնէ Մազդակ, թէ ինքը անարդար կը համարի երբ կը տեսնէ թէ մարդիկներէն ոմանք Նազրին յղփութեան մէջ, մինչ ու-րիշներ զուրկ ամէն կարեւորէ՝ կը տառա-պին. պէտք է աշխարհի վրայ ոչ հարուստ եւ ոչ աղքատ ըլլայ. երկրաւոր կենցաղը ապրե-լու համար ամէն մարդ հաւասար իրաւունք ունի: Մարդ հինգ դեւէ պէտք է զգուշանայ. ատոնք են. Նախանձ, ցանկութիւն, ագահու-թիւն, բարկութիւն եւ վրէժխնդրութիւն: Կանայք եւ ստացուածքներն այն առարկաներն են, զորոնք իբրեւ գործի ունին դեւերը իրենց ձեռքը: Եթէ կանայք եւ ստացուածքները հասարակաց ըլլային, պիտի վերնային անոնց պատճառաւ ծագած չարիքները: Կաւատ հա-մոզուեցաւ, թէ ուղիղ են Մազդակի պատ-ճառաբանութիւնները եւ ընդունեցաւ անոր վարդապետութիւնը: Այսպէս ըստ Ֆիրդու-սիի, թէեւ ուրիշներ կ'ըսեն թէ Կաւատ որով-հետեւ կիները կը սիրէր, անոր համար յա-րեցաւ մազդակեան վարդապետութեան: Բայց այն ստոյգ է որ Թադէոսը իր կիներէն եւ ոչ մէկը դրաւ հասարակաց տրամադրու-թեան տակ:

Մազդակի վարդապետութիւնը շատով տարածուեցաւ։ Անոր յարեցան մանաւանդ աղքատներն եւ ժողովրդեան ստորին դասակարգը, որոնք անպաշտպան էին։

Թէ ամուսնութիւնը սկզբունքով վերցուցած է Մազդակ, այս մասին ուղղակի բան մը չեն ըսեր արաբ հեղինակները. բայց բազմակին ընտանիքներէ կանանց բռնութեամբ յափշտակութիւնն եւ ստացուածքներու եւ դասակարգի զանազանութեան բարձումը ի հարկաւորութենէ առ այն կ՚առաջնորդէր։ Թէ ընտանիքի քայքայումը տեղ տեղ արդէն ընթացք առած էր Մազդակեաններէ, կը հաստատեն արաբ մատենագիրները։

Կաւատ օգտագործեց այս շարժումը քայքայելու համար ազնուականներու ոյժը. բայց ինքնին ոչ իր գանձերն եւ ոչ իր կիները տուաւ անոնց։ Յամենայն դէպս Յասուէ Սինակեցի եւ Պրոկոպիոսի խօսքերէն կ՚երեւայ թէ Մազդակէն քարոզուած վարդապետութեան հիմնական բովանդակութիւնն էր կանանց հասարակաց ըլլալը. անկէ տարբեր բան չի գտներ նաեւ Ֆիրդուսի։

Մազդակ իր վարդապետութեան տուած էր կրօնական լրջութիւն։ Անիկա ամէն չարեաց սկիզբը կը դնէր նախանձ, բարկութիւնն եւ ընչաքաղցութիւնը, որոնք կը յառաջացուին դեւերէն եւ կը խանգարեն Աստուծոյ սահմանած հաւասարութիւնը։ Բնականաբար իր մարդասիրական վարդապետութեան — «անբարի բարեբարութեան» բառ

երեւոյթին անհերքելի տրամաբանութիւնը պիտի հաճոյանար ամէնէն աւելի ստորին գաւառակարգին, որոնք անպաշտպան էին: Կրօնական հողի վրայ հիմնուած էր նաեւ մազդակեանց արիւն չթափելու եւ միս չուտելու արգելիչ պատուիրանը:

Ի սկզբան դիմադրութիւն չկրեց Մազդակ. թէպէտ ի ծածուկ հակառակ էին անոր ազատները: Քանի մը տարի ետքը յայտնուեցաւ դժգոհութիւնը: Տժգոհներուն յարեցան մոգերը: Բարձրացուեցաւ ապստամբութեան դրօշը. պարագլուխներն էին մոգպետները: Ապստամբներու ձեռքը ինկան Կաւատ եւ Մազդակ. վերջինս կրցաւ իր հետեւորդներու օժանդակութեամբ փախուստի դիմել: Հաւանօրէն երկիւղ զգալով մազդակեանց մեծ թուէն՝ մեղմ վարուեցան ապստամբները թագաւորին հետ. Կաւատ բանտարկուեցաւ. եւ անոր եղբայրը Ջամասպ թագաւոր հռչակուեցաւ: Բայց յաջողեցաւ Կաւատ փախչիլ բանտէն եւ ապաստանարան գտնել Հեփթաղներու քով. քիչ յետոյ վերադարձաւ Կաւատ եւ ձեռք բերաւ միւսանգամ գահը: Մազդակեանները նորէն հաւաքուեցան իր շուրջը:

Անցան տարիներ: Կաւատ մտահոգուած էր թագին ժառանգի մասին: Մազդակեանց թեկնածուն էր Փթասուարշա, որ Կաւատի ըստ երիցութեան՝ երրորդ որդին էր, կրթուած մազդակեան վարդապետութեամբ: Մոգերը եւ ազնուական կուսակցութեան անդամները կը պաշտպանէին Խոսրովի, Կաւատի

չորրորդ որդւոյն թեկնածութիւնը. անոնց հետ էր նաեւ Կաւատ:

Ջերմ փափագը, որ գահին վրայ իրեն յաջորդ ունենայ զԽոսրով, պատճառ եղաւ Կաւատի, որ իր կեանքի վերջին օրերուն բախում ունենայ Մազդակեանց հետ, որոնց ոյժը ինքն էր աճեցուցած, որոնց վարդապետութեան յարած էր եւ որոնց բարեացակամ վերաբերութիւնն իր հանդէպ այնպէս մեծամեծ ծառայութիւններ մատուցած էր իրեն: Մազդակեանք գիտէին թէ իրենց գոյութեան համար անհրաժեշտ էր արքայական պաշտպանութիւնը. պէտք է ամէն քար շարժէին նոյն պաշտպանութիւնը, եւ կամ գոնէ հանդուրժողութիւնը ապահովելու համար: Իրենք զիրենք կը գտային հզօր եւ համոզուած էին թէ իրենց կուսակցութեան ծրագիրը պիտի կարենան ի հարկին նաեւ բռնութեամբ ի գործ հանել: Իրաց դրութեան վրայ վստահ՝ խնդրեցին Կաւատէն, որ զՓթասուարսա ա կենդանութեան յաջորդ հռչակէ: Բայց խնդիրը ուրիշ ելք ունեցաւ: Կաւատ ինք զինքը Մազդակեանց առաջարկութեան համաձայն ընծայելով՝ հրաման տուաւ, որ անոնք իրենց որդիներով եւ կիներով բառ կարի մեծաթիւ ներկայ ըլլան թագադրութեան հանդէսին: Երբ հաւաքուած էին՝ հրամայեց որ Մազդակեանները այլազգիներէն բաժնուած մէկ կողմը անել առնեն, պատրուակ բերելով թէ ինքը կը փափագի որ թագաւորութեան արարողութեան կարեւոր մասերը Մազդակեան-

ները կոտորեն: Հազիւ թէ անջատումը տեղի ունեցած էր եւ Մազդակեանք միամիտ համախմբուած, պատրաստ կանգնած զօրականը հրաման ընդունեցաւ յարձակիլ անզէն Մազդակեանց վրայ եւ կոտորել զանոնք անխնայ. որեւան ահաւոր նախճիր գործուեցաւ տեղւոյն վրայ: Ի մէջ այլոց սպանուեցաւ Մազդակեանց առաջնորդը՝ Ինդարզար (Ինդարազար). ապա հրաման եղաւ որ փնտռեն նաեւ նահանգներու մէջ գտնուած Մազդակեանները եւ կոտորեն: Այսպէս ըստ յունական աղբերաց:

Քիչ մը տարբեր կը պատմէ Ֆիրդուսի. Մազդակեանք կը կասկածէին Խոսրովէն. Մազդակ անցած 100.000 կուսակիցներու գլուխը ցոյց մը կը սարքէ. ցոյցին նպատակն էր յայտնել իրենց հպատակութիւնը Թագաւորին. միաժամանակ դնել Թագաւորին առջեւ Թագաժառանգ Խոսրովի հանդէպ նոր վարդապետութեան ցոյց տուած անտարբերութիւնն եւ պահանջել, որ Խոսրով գրաւոր յանձն առնէ հին կրօնէն հրաժարիլ եւ յարիլ նորին: Խոսրով ընդդիմացաւ, ըսելով թէ ինքը Մազդակեան վարդապետութիւնը հերձուածողական կը համարի. եւ խնդրեց որ տրուի իրեն մեկամսեայ ժամանակ մը, իր ապացոյցները հրապարակի վրայ դնելու համար, որ եւ շնորհուեցաւ: Խոսրով օգտագործելով ժամանակը՝ մէկ կողմէն հմտագոյն մոգպետները քաղաք հրաւիրեց, միւս կողմէն պատրաստութիւններ տեսաւ: Ժամադիր

*ժամուն տեղի ունեցաւ վիճաբանութիւնը Մազդակեաններու եւ Մազդեզեանց միջեւ: Դժուարին չեղաւ վերջիններուն ապացուցանել, թէ Մազդակի վարդապետութիւնը բովանդակ պետութիւնը քայքայման կը մատնէ, որովհետեւ այն ոչ միայն դասակարգային կարգերը կը քանդայ, այլ եւ ընտանիքի դադափարը կը ջնջէ: Ասոր վրայ հրաման կ՚ընդունի Խոսրով իր հօրմէն կոտորել բնաջնջել Մազդակեանները: Մազդակ կախաղան կը հանուի: Ֆիրդուսիի ուրիշ օրինակ մը, զոր ունեցած է Մոհլ աչքի առաջ, կը պատմէ թէ Մազդակ, որովհետեւ թագաւորէն անոր աղջիկը, գահն ու թագը պահանջած էր, անոր հրամանաւ եռացեալ կուպրի (ձիւթի) մէջ կը նետուի: Այս կը պատահի 528 կամ 529 թուին:*

*Մազդակի մասին Խորենացւոյ լսած աւանդութիւնը բազմօք նման է Յոյն եւ Պարսիկ աղբիւրներու հաղորդած գծերուն: Անշուշտ աւանդութիւնը, լսուած բերնէ բերան դանազան աշխարհներու մէջ, պիտի ունենար իր խոտորող գծերն ալ. եւս առաւել Խորենացւոյ գրչին տակ, որ Աժդահակի եւ Մազդակի զրոյցները ձուլած է ի մի իր սեպհական եւ բանազբօսիկ ըմբռնումներով:*

*Ուշադրութեան արժանի է Խորենացւոյ քով յատկապէս այն տեղիքը, ուր անիկա կը նկարագրէ իր Ստորագրութեան մէջ Աժդահակի կատարածը, որ բոլորովին աննման է առասպելին, նոյն իսկ Հակասութեան մէջ է*

անոր հետ: Առասպելը, իր բոլոր տարբերակներու մէջ, գիտէ թէ Աժդահակ Հրուդէնէն չղթայուած տարուած է Դըմբաւընդ լեռը եւ հոն քարայրի մը մէջ ժայռին բեւեռուած. եւ կենդանի է հոն դեռ այսօր: Այս կէտը անտեսելով Մովսէս իր Ստորագրութեան մէջ կը գրէ թէ «...ի սատակիլ վարելոյն զնա (զԱժդահակ)՝ թօթափեցաւ ամբոխ նորա ի նմանէ. յայս փութահացեալ վարողացն զնա՝ հանդեան առուրս ինչ դաեղեօքն: Եւ Բիւրասպեայ ժողովեալ զգրուեալսն[1] յանկարծօրէն հասանէ ի վերայ նոցա (հալածչացն) վնաս սատակել առնելով. այլ յաղթէ բազմութիւնն (նմա) եւ փախստական լինի Բիւրասպի. եւ հասեալ սպանանեն զնա [մերձ ի լեառնն[2]] եւ ընկենուն ի վիհ մեծ ծծմբոյ»:

Այս տեղ կը տեսնենք մենք Մազդակեանց վրայ առաջին եւ երկրորդ յարձակումներու մասին ակնարկութիւններ. առաջին յարձակումէն ետքը կրցան Մազդակեանք իրենց ույժը նորէն ժողվել. բայց պարտուեցան երկրորդին մէջ. Մազդակ Ֆիրդուսիի համաձայն «ի գուբ եռացեալ ձիթոյ» նետուեցաւ եւ Մ. Խորենացւոյ համաձայն «ընկենուն զնա ի վիհ մեծ ծծմբոյ». պարագայ մը, որ չէր պատշաճէր Բիւրասպի Աժդահակայ առասպելին, ճշդիւ կը համապատասխանէ Մազդակի պատմական վէպին:

---

[1] Բ օրինակը կը կարդայ. ժողովեալ զգրուեալ սակաւ զօրսն:

[2] Բ օրինակը չունի «մերձ ի լեառնն»:

## ԴԱՐՁԵԱԼ ՄԱԶԴԱԿ ԵՒ Մ. ԽՈՐԵՆԱՑԻ

*Մինչեւ այժմ մեր ջանքն եղաւ ապացուցանել, թէ Մովսէս Խորենացի ուզած է իւր «ի Պարսից առասպելաց յաղագս Բիւրասպեայ Աժդահակայ» հատուածին մէջ Աժդահակի աւանդավէպը լուսաբանել Մաժդակ–Մազդակի աւանդավէպով:*

*Մազդակի երեւումը պատմութեան մէջ իր տարօրինակութեամբը շուտով մոռացութեան չմատնուեցաւ: Պարսիկ ժողովուրդը պատմեց որդւոց որդի անոր մասին եւ կազմուեցաւ յընթացս դարուց Մազդակի աւանդավէպը, որ յետոյ գրի ալ առնուեցաւ իբրեւ Մազդակ–նամակ: Այս Մազդակ–նամակի գոյութիւնը ծանօթ էր արաբ հեղինակներու, որոնք կը հաւաստեն նաեւ թէ անոր միջին–պարսկերէն բնագիրն այլ եւ այլ անգամներ արաբերէնի թարգմանուած ըլլայ: Մինչեւ օրս ոչ միջին–պարսկերէն բնագիրն եւ ոչ ալ անոր արաբերէն թարգմանութիւնը յայտնուած է: Բայց հաւանական կ'երեւայ, թէ Նիզամ–էլ–մուլք իւր* Սիասէթնամէհի *մէջ*[1], *զոր յօրինած է* 1092/93*ին*, *Մազդակ–*

---

[1] Siasset Nameh. traité de gouvernement, texte persan éd. par Ch. Schefer, Paris 1891, *էջ* 166 *եւ յջ.*, *թարգմանութիւնն՝* Paris 1893, *էջ* 245 *եւ յջ.:* *Աչքի առաջ ունիմ* Arthur Christensen*ի* Le règne du roi *Kawādh I.* et le communisme mazdakite. København 1925, *էջ* 60—70: *Այս աշխատութեան մէջ խնամով ի մի հաւաքած է հեղինակը Մազդակի մասին յոյն, ասորի, պարսիկ եւ արաբ գրականութեան մէջ*

նամակի որ եւ է խմբագրութիւն մ'աչքի առաջ ունեցած ըլլայ:

Ուշադրաւ են Սիասէթնամէհի յառաջբերութիւնները Մազդակի մասին. անոնք բազմօք կը շեղին յոյն եւ ասորի, ինչպէս նաեւ արաբ հեղինակներու հաղորդած տեղեկութիւններէն. բայց ինչ ինչ կէտերու մէջ կը համաձայնին Մովսէս Խորենացւոյ ի մասին Աժդահակ=Մազդակի պատմածներուն հետ:

1. Մ. Խորենացի կը գրէ, թէ «Սա ոչ քաջութեամբ քան թէ հարստութեամբ եւ ճարտարութեամբ զցեղապետութիւն ազգին իւրոյ ունէր, հնազանդեալ Ներոովթայ: ... Այլ քանզի աստեղաբաշխութեամբ հզօր եղեալ՝ յօժարեցաւ ուս<ուց>անել եւ զկատարեալ չարութիւնն»:

Սիասէթնամէհի համաձայն Մազդակ Բամդատի որդին մովպետան մովպետ էր Կաւատ թագաւորի օրով եւ «fort versé dans l'astrologie». Նա կը տեսնէ աստղերու մէջ, թէ իր ժամանակին երեւան պիտի գայ մարդ մը, որ նոր կրօնի մը հիմնադիրը պիտի ըլլայ: Մազդակ իր «ճարտարութեամբ», այսինքն հնարագիտութեամբը կը շահի Կաւատ թագաւորը: Կաւատ «lui fait faire un siège en or incrusté de pierreries et fait asseoir Mazdak, aux audiences, sur ce siège qui est bien plus élevé que le sien».

---

գտնուած ցիր եւ ցան տեղեկութիւններն եւ ենթարկած զանոնք համեմատական ուսումնասիրութեան:

«Եւ հասարակաց զկենցաղս կամէր ցուցանել ամենեցուն. եւ ասէր. Ոչինչ իւր առանձին ումեք ունել պարտ է, այլ հասարակաց»։ *Սիասէթնամէհ կը գրէ. «Mazdak prêche la mise en commun des biens, de sorte que tous soient égaux et que personne ne soit privé de subsistance.* Puis il fait consentir Kawādh à la communauté des femmes. Le bas peuple surtout accepte avec empressement ces réformes» (p. 61).

«Եւ զել եւ զմուտ քարեկամացն որպէս ի տուրնջեան, նոյնպէս եւ ի գիշերի սահմանէր։ *Եւ այս է առաջին նորա ասացեալ անբարի բարեբարութիւնն»։ Խորենացւոյ այս տեղիքը անիմանալի մնացած էր բանասէրներուն։ Մեկնութիւնը կու տայ Սիասէթմէհ այսպէս. «il est etabli comme règle que si un homme invite des hôtes à un banquet, les invités, après avoir mangé et bu et entendu le divertissement des musiciens, se rendent, l'un après l'autre, auprès de la femme du maître de la maison; celui qui entre chez la femme, place son bonnet sur la porte, alors personne n'y peut entrer avant que celui qui le précède ne soit sorti»* (p. 61—62).

*Իրաւունք ունէր Խորենացի այս սահմանը անուանելու «անբարի բարեբարութիւն». աւելի բացայայտ խօսիլ այս մասին չէր կրնար թոյլ տալ իր գրչին Խորենացի։*

*Մազդակի սպանութեան մասին կը գրէ Սիասէթնամէհ, թէ Խոսրով Թաղաւառանդ*

հրամայեց որ զՄազդակ գլուխն ի վայր նետեն «dans un trou qu'il a fait pratiquer dans une haute estrade dressée au milieu de la place» (65), ուր նման ձեւով փոս նետուած էին նաեւ Մազդակի հետեւողները հազարաւոր թուով։

Խորենացւոյ՝ «ընկենուն (զԲիւրասպի = Մազդակ) ի վիհ մեծ ծծմբոյ» եւ Ֆիրդուսիի «ի գուբ եռացեալ ձիթոյ» ու Սիասէթնամէհի «ի փոս մի» արտայայտութիւնները գեղեցիկ կերպով կը գտնեն զիրար, նկատի առնելով, որ երեքն ալ ունին մի եւ նոյն աւանդավէպի զանազան խմբագրութիւնները զանազան դարերու մէջ։

Նկատմամբ Մ. Խորենացւոյ ժամանակին պիտի հետեւի ասկէ, թէ անիկա Մազդակի աւանդավէպին չէր կրնար Ը. դարէն յառաջ ծանօթ ըլլալ այն իմաստով, որ Մազդակնամակը գրի առնուած է Զ. դարու առաջին կէսէն շատ ուշ, թերեւս Ը. դարուն։

Յամենայն դէպս այս համեմատութիւնները կ'ընձեռեն մեզի փաստ հաստատելու թէ Մ. Խորենացի «ի Պարսից առասպելաց» ծանօթ էր Մազդակի անձին եւ «անբարի բարեբարութեանց» եւ ոչ յոյն, ասորի կամ հայ աղբիւրէ մը։

---

Ի.

# ԱԶԱՐԻԱ Վ. ՍԱՍՆԵՑԻ

## ԱՍՏՂԱԳԷՏ, ՏՕՄԱՐԱԳԷՏ ԵՒ ՏԱՂԱՉԱՓ

(† 1628)

Հայոց Մատենագրութեան Պատմութեան մէջ մինչեւ այսօր չէ յիշուած Ազարիա Վ. Սասնեցի։ Անիկա ունի սակայն գրական եւ գիտական աշխատութիւններ, որոնք, նկատի առնելով դարը, արժէքաւոր են եւ կը հրաւիրեն իրենց վրայ ուշադրութիւն։

Պիտի փորձեմ այս տեղ, առաջին անգամ, ուրուագծել անոր կեանքի պատմութիւնն եւ թուել անոր գրական եւ գիտական վաստակները, որչափ թոյլ կու տան ինձ մատչելի աղբիւրները։

### ԿԵԱՆՔԸ

Ազարիա, ինչպէս կը դնէ ինքը, Սասուն գաւառէն էր, ասկէ կոչուած Սասնեցի[1]։ Քաղաքին կամ գիւղին անունը, ուր ծնած է, յայտնի չէ։ Գրիգոր Դարանաղցի[2] «սա էր,

---

[1] Տե՛ս վարը Կանոնագրոց Յիշատակարանը։

[2] Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ. Հրատարակեց Մեսրոպ Վ. Նշանեան։ Երուսաղէմ 1915. էջ 410—413 «վասն Ազարիա փիլիսոփային»։

կը գրէ, յերկրէն Տարօն, զոր ոմանք Բալուվայ առեն»: Սասունի սահմանակցութիւնը Տարօնի եւ Բալուի, հաւանօրէն, այս ենթադրութեան պատճառ եղած է: Ազարիայի հայրն է Մելքիսէթ, մայրը՝ Նաէֆ. զորոնք «բարեբարոյ» կը ներկայացնէ Ազարիա: Իր եղբայրներն են Սահակ եւ Նատար, եւ քոյրերն՝ Շահկուլ, Մուղալ եւ Հոխիմէ: Կը յիշէ Ազարիա նաեւ իր հօրեղբայրները՝ տէր Ներսէս եւ Կարապետ: Անոնք, ամէնն ալ, զոհ կ'երթան ծէլալիներու ասպատակութեանց. այնպէս որ 1609ին կը գրէր Ազարիա, թէ «ոչ ունիմ ի մարմնաւորայ յազգս իմ». վասն զի «բազումք, մանաւանդ ընաւքն ընդակիցք իմ եւ ազգայինք ի պէսպէս մահս եւ ի գերութիւնս մատնեցան՝ մեծ թշուառութեամբ արտաքս քարշեալք ի մայրենի գրկաց՝ ի ցանկալի գաւառէն Սասնոյ[1]», այն է 1599 եւ յաջորդող տարիներուն: Ազարիայի ծննդեան տարին յայտնի չէ: Կ'երեւայ թէ անիկա հետեւելով իւր հօրեղբօր օրինակին՝ նուիրուած էր եկեղեցական վիճակի: Որովհետեւ Ազարիա իւր Յիշատակարանին մէջ իր կնոջ մասին յիշատակութիւն չ'ըներ, պէտք է ենթադրել, թէ աբեղայ էր: Ուսման սէրը կը վառէր իր մէջ: Ունէր մասնաւոր հետաքրքրութիւն եկեղեցական իրաւագիտութեան: Իր ցանկութիւնն էր ձեռք բերել Կանոնագրքի լաւ օրինակ մը:

Ազարիայի կեանքի մասին հետեւեալ

մանրամասնութիւններն ունինք իր խակ գրչէն, Կանոնագրքի Յիշատակարանին մէջ 1609էն.

«Տասն ամ նախ քան զգրել տառիս (այն է 1609—10 = 1598/99) աւերեալ եղեւ աշխարհս մեր ի ճէլալեաց, յոր եւ ես նուաստս եւ տառապեալ նշդեհս տարաշխարհիկ եղեալ ի հայրենի տեղւոյ իմոյ եւ ի ժառանգութենէ եւ շրջելով իմ տեղաց ի տեղ եւ փոխելով գաւառէ ի գաւառ, եւ ոչ գտի հանգիստ ուրեք իմոց, այլ իբրեւ զոչխարս մոլորեալս եւ կամ թռչուն մի, որ ի բնոյն ստնու եւ յերամէ հեռանայ <եւ> ոչ եւս գտնու զբնակերան, այսպէս եւ ես ոչ գտի տեղի խաղաղ, ուր դիցեմ զգլուխ իմ: Այլ ես անկայ ի ձեռս անօրինաց, որպէս ձագ յորդայթս որսողաց, եւ յետ բազում չարչարանաց եւ դառն կտտանաց՝ մօրէ մերկ եղեալ՝ հազիւ մազապուրծ լինեալ զերծայ ի ձեռաց նոցա ողորմութեամբն Աստուծոյ»:

Այսպէս կը բաժնուի, կը հեռանայ Ազարիա իր «պանծալի» հայրենիքէն եւ իբր քառամեայ աստանդական թափառումներէ ետքը «տեսչութեամբ» Աստուծոյ կը հասնի Կ. Պոլիս, 1603ին:

Սասունէն հեռանալու պատճառը միայն ճէլալիներու ասպատակութիւնն եւ հարստահարութիւնները չէին: Ազարիա հետամուտ էր ձեռք բերել Կանոնագրքի ընտիր եւ ճոխ օրինակ մը. «եւ իմ վասն այսր յուսոյ ըստ բղձից փափագման ողւոյ իմոյ աշխատասիրեալ

յերկար ժամանակս բազում տառապանօք, այսր եւ անդր յածմամբ յուզէի զբաղձալին իմ եւ ոչ գտանէի ըստ իմում կամաց, այլ ցիր եւ ցան եւ ոչ համադումար...: Իսկ իմ ի բաց եդեալ զտկարութիւնս մարմնոյս՝ զբո-լորն լրմամբ խնդրէի. եւ ի յերկրէ յերկիր եւ գաւառէ ի գաւառ շրջեալ որոնէի եւ հար-ցանէի. եւ եկեալ ի հայրենի գաւառէս իմոյ ի Սասնոյ եւ յուղի անկեալ եկի ի յաստուա-ծայաբաց մայրաքաղաքն Կոստանդնուպոլիս, զի լուայ եթէ գտանի ի պատրիարգն Կոս-տանդնուպոլիս Գրիգոր Կեսարացի, քաջ հռետորն եւ անյաղթ փիլիսոփայն... եւ նա ի բազում գրեանց եւ ի բազում տեղեաց ժո-ղովեալ էր ի մի: Զոր եւ ես անարժանս եկեալ յարեցայ ի նա. եւ աշակերտեալ առ նա՝ տեսի... զաւյր ժողովոյն կանոնս»:

Գրիգոր Կեսարացի, աշակերտն Սրապիոն Ուռհայեցւոյ, Կ.Պոլսոյ պատրիարք ընտրուած էր 1602ին: Ազարիա կ՚աշակերտի անոր 1603/4ին, վարդապետական իշխանութիւնը ձեռք բերելու համար: Այս մասին կը գրէ Գրիգոր Դարանաղցի (410). Ազարիա «եկեալ աշակերտեցաւ այս գոող Կեսարացի վարդա-պետին, որ այժմ է տանուտն Սողոմոն ի մեղ»: Բայց Ազարիա «ի գաղանաբարոյ որդնո-թենէն (Գրիգորի) ոչ կարաց կալ մօտն. եւ եկեալ ժամանակ մի առ Մկրտիչ վարդապե-տին, որ Խզմուկ ասեն, կացեալ առ նա» ի Խարբերդ:

Ազարիա Մկրտիչ Խարբերդցւոյ[3] քով աշակերտութեան մտած պէտք է ըլլայ 1605ին, երբ Գրիգոր Կեսարացի ինկաւ պատրիարքական աթոռէն եւ առանձնացաւ Կեսարիա[4]: Այս ուղեւորութեան առթիւ հանդիպած պիտի ըլլայ Ազարիա ի Սեբաստիա, ուր 1607ին գրած է ի խնդրոյ Անտոն քահանայի «Յաղագս գիտութեան երկնից բարձրութեան» աշխատութիւնը:

Բայց չհաճեցաւ Կեսարացին, որ Ազարիա հեռանալով իրմէ՝ աշակերտած է Խարբերդցւոյ: Ստիպուեցաւ Ազարիա միանգամ վերադառնալ Կեսարացւոյն, առանց տարակուսի, 1609ի սկիզբը, երբ Գրիգոր վարդապետ միանգամ ձեռք բերած էր Կ. Պոլսոյ աթոռը:

Դարանաղցի կը գրէ. «Եւ (Ազարիա) յերկիւղէ եւ ի տրտնջմանց Կեսարացւոյ Գրիգորին ելեալ ի նմանէ (Մկրտիչ վարդապետէ) եւ գնացեալ մօտ ի Գրիգորն. կացեալ բազում ժամանակս եւ ուսեալ զամենայն հանճարս

---

[3] Մկրտիչ Վ. Խարբերդցի Ազարիա կաթ. Ջուղայեցւոյ աշակերտն էր (Դարանաղցի, 320). այս Խարբերդի առաջնորդն եղած: 1610ին եկած էր Կ. Պոլիս եւ Սիմէոն դպիր Լեհացւոյ հետ շրջագայութիւն կատարած ծովեզերեայ քաղաքներ (Սիմէոն Լեհացւոյ Ուղեգրութիւն, 33—43): 1611ին Միքայէլ Թոխաթցի Աստուածաշունչ մ'օրինակած է ի Կ. Պոլիս «ի վայելումն Խարբերդցի Մկրտիչ վարդապետի» (Էջմ. 186. թղ. 498): Մկրտիչ վարդապետ Խղճուկ մականուանուած է «վասն առաւել հեզ եւ հնազանդ լինելոյն» (Դարանաղցի, 329):

[4] Ա. Ալպօյաճեան, Գրիգոր Կեսարացի պատրիարքը եւ իր ժամանակը. Սիոն, 1936. էջ 189–190:

իմաստից» : Աւարտելով ուսման ընթացքը կ'ընդունի Ագարիա վարդապետական իշխանութիւնը : Իր առաջին քարոզին վրայ հիացած է Գրիգոր Դարանաղցի, որ իր հիացմունքը այսպէս կ'արտայայտէ. «Եւ այնպէս յաճախապատում խրթնաքարոզ ասաց, որ ոչ ոք ելեալ է այժմոյս, որ մէկ բանից վերայ մէկ ամիս քարոզէր զՅովհաննու Որոտնեցւոյ մեկնեալն» :

Ագարիայի աշակերտակիցն էր Մովսէս Տաթեւացի, որ ճիշդ այս թուականին Կ. Պոլիս կը գեգերէր առ ոտս Գրիգոր Կեսարացւոյ :

1609ին, Սիմէոն Լեհացի, որ Ագարիայի խնդրանքով կ'օրինակէր Կանոնաց հաւաքածոյքն ի Կ. Պոլիս, զինքը կ'անուանէ «տէր Ագարիա բանասէր եւ սպասաւոր բանի», այն է վարդապետ : Կ. Պոլիս կ'երեւայ թէ երկար դադար առաւ Ագարիա : Հոս առիթ ունեցաւ շփման մէջ մտնելու Եւրոպացիներու հետ եւ ուսանելու «Փրանկ», այն է իտալերէն լեզուն : 1616ին Թարգմանեց Պտղոմէոսի Աշխարհացոյցը : Այս թուին յօրինեց կամ թարգմանեց նաեւ Տօմարն, նոր խմբագրութեամբ, հաւանօրէն Կ. Պոլիս բնակող Ջուղայեցի վաճառականներու խնդրանքով : 1619ին Կեսարիա կը գտնուէր Ագարիա. Մեսրոպ Կաֆացի ի խնդիր ելլելով Մխիթար Գոշ վարդապետի յօրինած Երեմիայի Մեկնութեան, «դարձայ, կ'ըսէ, ի Հալապայ ի Կեսարիա (եւ անդ) գտի զոր որոնեաց անձն իմ՝ մի ունն ի բանասիրէն Սասնցի Ագարիա վերակոչելոյ. բայց

խիստ էր եղծեալ օրինակն[5]»։ Հաւանօրէն ի Կեսարիա գրել տուած է Ազարիա Պօղոս գրչին Դիոնեսիոս Արիսպագացւոյ գրութիւնքը, 1621, մարտ 9ին. «Եղեւ գրչութիւն սորա, կը գրէ Պօղոս գրիչ, ի թվականութեանս Հայոց ՌՀ, մարտ ամսոյ Թ. աւուրն ուրբաթ, ի վեհագոյն տիրական իշխանութեան տեառն տէր Ազարիայ վարդապետին, որ զգիրք գրել ետ վասն անձին իւրոյ»։ Գրչութեան տեղը անծանօթ է՝ բուն յիշատակարանին ինկած ըլլալովը[6]։

Ազարիա եկած էր Կեսարիա, որպէս զի ժամանակ մ'եւս աշակերտելով առ ոտս Կեսարացւոյն՝ առնէ անկէ գաւազանի իշխանութիւնը. բայց չկրցաւ ստանալ, որովհետեւ, ինչպէս Դարանաղցւոյ խօսքերէն կը տեսնուի, Գրիգոր Կեսարացի գաւազանի տուչութեան համար ծանր վճարմունք կը պահանջէր։ Ազարիա հրաժարելով գաւազանէն, նուիրեց ինքզինքը քարոզչութեան եւ միանձնական կեանքի։

Ազարիայի քարոզչական գործունէութեան մասին կը գրէ Դարանաղցի.

«Եւ էր (Ազարիա) անձանձիր քարոզող, որ ժամանակ մի լուսաւորեց զՊուրսայու կողմն, զՆիկիոյ եւ զՆիկոմեդացւոց, ուր Հայք կան։ Կու կամէր որ միաբանակեաց վանք

---

5 Տէր-Աւետիսեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Նոր-Ջուղայի, Թ. 207 Ամենափրկիչ վանաց։

6 Տ. եպ. Պալեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Ս. Կարապետի վանաց Նոր Մատենադարանին ի Կեսարիա, Թ. 29։

շինէր ի լերինն Կուռլայու եւ փայտաշէնք մէկ քանի տունք շինեաց եւ աղօթանոց պատարագի տեղի մի յանպատշաճ տեղոջ՝ յանձարակութենէ: Ուր տեղի որ պատշաճաւոր էին, երիցանցք գեղջիցն չկամեցան...: Եւ այս Ազարիային այլ ոչ կամեցան յեղեր գեղջից <ի տեղւոջ> պատշաճաւորի շինել, վասն որոյ գնաց յանտառախիտ անապատի տեղոջ՝ յաղայիցն տափու արար, որ գնեց որ անդ փոխարկէր զվանքն: Եւ մեծ գեղջի տեղրանք վայելուչք պատրաստեաց, որ գեղրանք շինուէր մերձ վանատեղացն եւ հաւանեցուցեր էր զշատ շինական մարդիկ, որ գալոց էին: Նա... այս զազանացեալ Գրիգոր Կեսարացին հանդատութիւն չետուր նմա՝ վարպետ անուն ունկին... եւ առնոյր զժողովեալ ինչս նորա եւ ոչ կամէր տալ զաւաղան, զի մինչ իւր ծառայեսցէ՝ ինչս ժողովեսցէ եւ բերցէ առ ինքն: Եւ յորժամ Ազարէն վանաց շինութեան հոգն լինելով, նա՛ եկաւ բազմակուլ վիշապս (Գրիգոր Կեսարացի) ի յԸստամբօլ վասն ագահութեան եւ հակառակութեան պատճառի»: Կեսարացին Կ. Պոլիս հասաւ 1626/27ին եւ գրաւեց պատրիարքական աթոռն, այս երրորդ անգամ, Յովհաննէս Խուլի ձեռքէն: «Եւ յորժամ լուաւ եղկելին (Ազարիա) զգալուստ սորին եւ խնդրէր հեռագոյն ուրեք երթալ եւ թաքչել ի նմանէն վասն անիրաւ հարկապահանջութեանն զանձս ոսկոյ եւ արծաթոյ, զոր ոչ բաւականայր տալով:

Եւ մեզ պատահեցաւ ի փախչելն Յալով[7] կողմն եւ առ ամօթի ոչ յայտնեաց մեզ. եւ գնաց փախստեայ ի յԱնատոլքու կողմն եւ անտից առ եզր ծովին: Եւ մտեալ ի նաւ եւ կամէր գնալ ի Տիմիաթն եւ անտից յԵգիպտոս: Նա՛ ձմերան եղանակին էր եւ ալէկոծութեան աւուրք. չատ ալէկոծութիւն կրեալ ի նաւին, մինչ յընկղմանէ բազում անգամ հազիւ զերծանեալ: Եւ ցաւ մահու զխպեալ նմա ի խստութենէ ցրտութեան օդոցն, մանաւանդ ի ծարաւութենէ ջրոյ, որպէս ապապակեաց ամենայն ի նաւի եղողացն. Յիսուն դուրուշ տամ մի անգամ յագ ըմպելոյ ջրոյ. նա՛ չեղեւ հնար գտանելոյ: Եւ դարձաւ ասաց առ նաւավարսն, թէ Մի երկնչիք. դուք կու փրկիք անվնաս այլ ես միայն կու մեռնիմ. քանզի Տէր այսպէս եցոյց ինձ: Եւ որպէս ասաց, այնպէս եղեւ: Եւ յառաջագոյն խոստովանեալ եւ հաղորդեալ էր եւ կրկին խոստովանեցաւ միմեանց, որ Թադէոս անուն այրի երէց ընդ իւրն էին եւ սարկաւագացուք երկու. հաղորդեցաւ ամենեքեանս[8]: Եւ յետ միոյ առաւօտին խաղաղութեամբ աւանդեաց զսուրբ հոգին ի ձեռս հրեշտակաց: Եւ զապելով իւրով հանդերձիւն եւ այլս արկին ի ծով եւ այլք ծովլին հանին զնա ի գիւղ մի Ասորոց ի կողմն Տրապօլեաց, որ են Մարոնիք. եւ տեսեալ զնա վարսաւոր բոլոր կուլակա եւ զխոացին

---

[7] Տպ. յԱլով:

[8] Կամախեցի 1628ին էր նուէր դէպի Երուսաղէմ: Ասոքերս հաւանորէն Թադէոս երէցի բերնէն են:

*որ քահանայ էր եւ թաղեցին զնա փառաւորապէս թվ. ՌՀԷ», այն է 1628ի ձմեռը* (411—413):

*Այսպէս ողբալի մահուամբ ելաւ աշխարհէն գիտնական եւ առաքինի Վարդապետ մը, որ կարող էր խօսքով եւ օրինակով լուսաւոր ջահն ըլլալ արեւմտեան Հայոց, եթէ քաջալերութիւն եւ օգնութիւն գտնէր ժամանակակիցներէն:*

ՆԿԱՐԱԳԻՐ

*Ագարիս, զաւակ Սասունի լեռներուն, տակաւին պատանեկան հասակին կը կորսնցնէ իր ծնողքն եւ եղբայրները. եւ հալածական եւ փախստական Թուրք ասպատմբ բանակի բռնազբօսութեանց եւ հարստահարութեանց մէջէն՝ կը հեռանայ հայրենիքէն: Թափառական աշխարհէ աշխարհ կը կրէ բազմադիմի զրկանք եւ տառապանք: Ի վերջոյ Աստուծոյ տեսչութիւնը կ՚առաջնորդէ իր քայլերուն եւ կը բերէ կը հասցնէ զինքը Կ. Պոլիս: Առոյգ լեռնականը հակառակ վշտերու եւ նեղութեանց կը պահէ իր մէջ ոգւոյ կորովն եւ կամքի աննկուն ամրութիւնը: Ոչ հացի ի խնդիր, ոչ հանգստութեան ի տենչ հասած էր անիկա սուլտաններու մայրաքաղաքը. դէպի հոն ձգած էր զինքը ուսման ծարաւը: Անյապաղ կը մտնէ յաշակերտութիւն Գրիգոր Կեսարացւոյ, որ օրուան պատրիարքն էր, համբաւուած իմաստութեամբ: Իր բնաւորութիւնը՝ «խոնարհամիտ, հեզ եւ հլու», հա-*

կապակերն էր Կեսարացւոյ բնաւորութեան. Սամնեցին համբաւուած էր «Հլու», եւ Կեսարացին՝ Գոռոզ: Ի սկզբան չկրցաւ Ազարիա դիմանալ խիստ եւ անողոք ուսուցչին տակ. եւ փորձեց հեզաբարոյ «Խղճուկ» անուանեալ Մկրտիչ Խարբերդցի վարդապետին քով շարունակել ուսումը, բայց դոռոզ Կեսարացւոյ սպառնալիքներու առջեւ ստիպուեցաւ տեղի տալ եւ վերադառնալ: Հազիւ առած վարդապետական իշխանութիւնը՝ նուիրուեցաւ քարոզչական գործունէութեան: Որչափ ալ գունաւորուած ըլլան Դարանաղցւոյ տողերը, հեղինակին հանդէպ Կեսարացւոյ ունեցած անհաշտ թշնամութենէն, բայց եւ այնպէս կան հոն կէտեր, որոնք համապատասխան են իրականութեան: Կեսարացին իր աթոռն ապահովելու համար պէտք ունէր դրամի. այս պատճառաւ ալ ծանր կը սակարկէր վարդապետական եւ գաւազանի իշխանութեան տուչութիւնը: Նա յապաղած էր գաւազանի իշխանութեան տուչութիւնը նոյնպէս Մովսէս Տաթեւացւոյ, որ Ազարիայի աշակերտակիցն էր: Մովսէս ունէր իրեն թիկունք Ջուղայեցի վաճառականները. իսկ Սամնեցին իր պէտքը կը դարմանէր ժողովրդեան բարեացակամ լումաներով: Զզուած ի վերջոյ Կեսարացւոյ ընչաքաղցութենէն հրաժարեցաւ գաւազանէն: Չէր ուզեր լսել անգամ Գրիգորի անունը եւ կը փախչէր անոր շուքէն: Այս փախուստը արժեց իրեն մահ:

Ազարիա առաքինի էր, կը սիրէր աղօթքը,

պահեցողութիւնը եւ կը ձգտէր միանձնութեան։ Կ՚ուզէր ապրիլ հեռու աղմուկէն, նուիրուած ուսման, ուսուցման եւ քարոզութեան։ Փորձեց հիմնել վանական հաստատութիւն, անշուշտ բարենախանձ ջանքով նմանելու Մովսէս Տաթեւացւոյ, դրդուած արեւելեան Հայաստանի մէջ բացուած Մեծ Անապատի համբաւէն։ Նա չունէր սակայն Մովսէս Տաթեւացւոյ կորովը եւ աչալրջութիւնը. «անճարակ» էր, կը պակսէր իրեն վարչական շրջահայեցութիւն եւ աջողաձեռնութիւն. իր ոյժերը տկար կը գտար կռուելու Կեսարացւոյ բռնապետութեան դէմ։ Այս պատճառաւ ալ լքեց ձեռնարկութիւնները եւ դիմեց փախուստի, երբ լսեց թէ Կեսարացին դարձեալ պատրիարքական իշխանութեան բարձրացած է (1626/27)։

Ժամանակակիցները միաբերան կը դրուատեն զինքը. Գր. Դարանաղցի կը գրէ. «Եւ էր յոյժ պահեցող եւ առաքինի, խոնարհամիտ, հեզ եւ հլու, որ առաւել խոնարհ հոգի լինելուն զմականունն Հլու էին եղեալ» (411)։ Դարանաղցի ուրիշ տեղ (90) խօսելով այն սրբակեաց եկեղեցականներու վրայ, որոնք «կու շրջէին իբրեւ գլուսաւորս ի մէջ աշխարհի, անելով եւ ուսուցանելով զպատուիրեալսն ի Տեառնէ, սուրբ եւ առաքինի վարուքն օրինակ բազմաց լինելով», անոնց թուին մէջ կը յիշէ նաեւ Ազարիա անդաստան վարդապետը, որ «Ծովասոյզ» եղաւ։ Իսկ Սիմէոն Լեհացի, որ Ազարիայի համար Կանոնագիրք

կ՚օրինակէր 1609ին, կը գրէ. «Բարի արմատ եւ շառաւեղ հաւատարիմ տէր Ազարիա բանասէր եւ սպասաւոր բանի...: Տէր Ազարիա աշակերտն եւ քաջ եւ արի, հմուտ եւ ճարտար իմաստակ, որ էր լցեալ աստուածաշունչ գրովք Հին եւ Նոր Կտակարանօք, որ ոչ գեգերէր ի զբաղմունս եւ ի ցնորս անցաւորս, այլ միշտ հանապազ պարապէր ընդ աստուածային՝ լինելով օրինակ բարի եւ աղ համեմից անհամացեալ մարդկան սեռիս... որ եւ ոչ ագահէր ժողովել ինչս եւ ստացուածս կամ զարծաթ, այլ միշտ փոյթ եւ սէր ունէր գրոց, զոր Տէր Աստուած նմա արիութիւն, քաջութիւն եւ զօրութիւն տացէ՝ զօրանալ եւ բարձրանալ փառաց ի փառս եւ ի զօրութենէ ի զօրութիւն»: Արդեամբք ալ նուիրուած էր անիկա մեծ թափով ներքին եւ արտաքին ուսմանց: Բացի եկեղեցական-աստուածաբանական ուսումներէ կը հետաքրքրէին զինքը փիլիսոփայական, տոմարական, աշխարհագրական եւ երկնագիտական գիտութիւնները: Օգտուելու համար նաեւ եւրոպական աղբիւրներէ՝ կը սորվէր «Փռանկ» լեզուն եւ թարգմանութիւններ իսկ կը կատարէր: Տաղաչափական արուեստն ալ անսիրելի չէ եղած իրեն: Հետաքրքրուած է նաեւ եկեղեցական եւ քաղաքական իրաւագիտութեամբ. իր բանասիրութեան արդիւնքն է Կանոնագրոց հաւաքածոյքը:

Այսպէս համբաւած էր Ազարիա անբաւ հմտութիւն. զոր կը շահագործէր իր քա-

բոցներու մէջ: Իր քարոզչական կարողութեան վրայ հիացողներէն մին է Գրիգոր Վ. Դարանաղցի. «այնպէս յաճախապատում խրթնաքարոզ ասաց, որ ոչ ոք եղեալ է այժմոյս. որ ի մէկ բանից (բնաբանի) վերայ մէկ ամիս քարոզէր՝ զՅովհաննու Որոտնեցւոյ մեկնեալն [9]»:

Ազարիա թէեւ գաւազանի իշխանութիւնը չունէր, բայց կ՚երեւայ թէ իր համբաւը ձգած էր իրեն ուսումնատենչ պատանիներ: Կարապետ Վ. Ջուղայեցի, որ 1630ին Սաղմոս մ՚օրինակած է ի Համշէն, կը գրէ. «Ես անարժանս եւ անպիտանս Կարապետ Ջուղայեցի, այսինքն աշակերտ Ազարիա վարդապետի, եւ զհոգեւոր հայրն իմ Մկրտիչ վարդապետն Խարբերդոյ, զգաւազանն զոր առեալ եմ ի նմանէ. եւ անկա ի ձեռն քաջ ռիտոր Մովսէս կաթողիկոսի. եւ մերկացուց զիս եւ եդ ի մէջ ճգնաւորայ բազում պատուիրաւք, եթէ նիստ ի մէջ էջմիածնայ... եւ ես ոչ հնազանդեցայ նմա եւ ելայ ի նմանէ [10]»: Թերեւս այս Կարապետի հետ նոյն ըլլայ Ջուղայեցի Ոսկան, «Պուռնսուզ կոչեցեալ», որուն մասին են Գրիգոր Դարանաղցւոյ տողերս. «Եւ էր ինքն յերկրէն Ջուղայեցւոց եւ աշակերտ անուանեալ Ազարիա անգաւազան վարդապետին...: Նա մէկ

---

9 Կ՚ակնարկէ Յովհ. Որոտնեցւոյ ճառն ի բանն մարգարէին Դաւթի որ ասէ. Ի սկզբանէ, Տէր, զերկիր հաստատեցեր...:

10 Սարգիսեան, Ցուց. Մխիթ. Մատ. ի Վենետիկ, Ա., 265:

*երկու տարի զկնի նորա շրջելով ձիապանութիւն առնէր նմա եւ այնպէս աշխարհական գոլով ուղարկել էր ի Կաֆայն ի սպասաւորութիւն պիտոյից իւրեք»* ։ *Հոն ի Կաֆա վարդապետ ներկայացուցած է ինք զինք «եւ ասացեր* (*է*) *թէ Ես այս անյաղթ փիլիսոփայի աշակերտն եմ, որ Ազարիա վարդապետ ասեն»* (432) ։

*Ազարիա ունէր առաւելագոյն չափով հմտութիւն եւ մտաւոր զարգացում քան ժամանակակից հռչակաւոր վարդապետները։ Նա գիտէր խոնարհութեամբ թաքցնել իր անձը։ Իր գրչին տակ հայերէն լեզուն զարգացած էր ընական ոճով եւ գրաբարի քերականական օրէնքներով, գրեթէ զերծ ռամկաբանութենէ։ Յատուկ է մտքի արտայայտութիւնը իր գրուածքներու մէջ եւ յանկուցիչ մաքրուած ոճը։*

ԱԶԱՐԻԱ ՍԱՍՆԵՑԻՈՅ ԳՐԱԿԱՆ ԵՐԿԵՐԸ

*Ազարիայի գրական երկասիրութիւններէն ծանօթ են ինձ հետեւեալները։*

1. Ողբ ի վերայ հարուածոց աշխարհին Հայոց։ *Ազարիա իր Կանոնագրոց հաւաքման Յիշատակարանին մէջ խօսելով ժամանակակից դէպքերու, յատկապէս ճէլալիներու ասպատակութեանց վրայ, այս մասին կը գրէ. «ոչ կամիմ զանց առնել եւ հարեւանցի անցանել, այլ կամիմ եւ ձեզ ծանուցանել զպատմութիւն ժամանակիս եւ բազմագան զանցս աղէտի որ եւ աչօք իմովք տեսի. զորս*

*ի բազմաց զաւկաւն պատմեցից փոքր ի չաւէ տաղիւ չափ ոտանաւոր»: Նոյնը կը կրկնէ նաեւ Սիմէոն Լեհացի, երբ կը գրէ Յիշատակարանին մէջ. «Ի դառն եւ յանբարի ժամանակին, որ գերի եւ ի սուր փարեցաւ ազգս Հայոց եւ բուն հայրենիքն մեր ի կոր կործանեցաւ մինչեւ ի սպառ. զոր ի յառաջդ բանիւ ծանիցես զլխակատար բանս աղէտիս մերայինս սեռիս՝ ասացեալ ի յԱզարիայէ ոտանաւորիւ տաղով»:*

*Ըստ այսմ Ողբիս նիւթն է Ճէլալի կոչուած ապստամբ թուրք բանակներու ասպատակութիւններն ի Փոքր Ասիա, յԱսորիս եւ ի Հայս. կից կը պատմուի համառօտիւ նաեւ Շահաբասի արշաւանքի եւ Հայոց գերեվարութեան մասին, ընդգրկելով* 1591—1609 *տարիներու դէպքերը: Դէպքերս ողբացած են նաեւ Ստեփանոս Թոխաթեցի*[11] *եւ Ղազար Թոխաթեցի*[12]*, որոնք ժամանակակիցներ էին եւ ականատեսներ:*

Ողբ ի վերայ հարուածոց արեւելեան գաւառացն աշխարհին Հայոց ի ձեռաց Ճելալեանց[13]:

*Արդ հայկազեան մեծ տոմարի,*
*Հազար յիսուն ութերորդի,*
*Արքայութեան Տաճկաց ազգի,*
*ԺԴ. ամին սուլթան Ահմատի,*

---

[11] *Հ. Ն. Ակինեան, Հինգ պանդուխտ տաղասացներ: Վիեննա* 1921, *էջ* 131—132:

[12] *Անդ,* 215:

[13] *Գրուածքս Ձեռագրին մէջ վերնագիր չունի, վասն զի իբրեւ Յիշատակարանի շարունակութիւն ներկայացուած է:*

*Ի ժամանակին վերջացեալ,*
*Երկիրս անթիւ չարեօք լցեալ...*
Վ. *Արդ աղաչեմ չմեղադրել,*
*Երկարութեան բանիս ներել,*
*Յայսքան բանէս համել առնել,*
*Եւ զանարժանս բերան մ՚յիշել:*

*Ձեռ. Այսն Վ. Համամճեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Գաղատիոյ, Թ. 11, Թղ. 594ա—600ա: Ասկէ օրինակ մը հանած է Իսահակ Ծ. Վ. եւ կցած ի գիրս Քաղուած ի վահան հաւատոյ անուն գրոցն Հ. Մ. Վ.ի Ջամչեան. որ յետոյ (1914) սեփականութիւնն եղած է Շաւարշ Վ.ի Սահակեան յԵոզկատ եւ կը կրէր 25 թուահամար. ասկէ ընդօրինակութիւն մ՚ուղարկած էր ինձ Սահակեան 1914, Ապր. 16ին: Օրինակութեանս մէջ առ 235 բաղմակէտերով նշանակուած է, յայտնի չէ թէ քանի՞ տող կը պակսի եւ ի՞նչ պատճառաւ ծագած է այս թերոյթը. սկզբնագրէ՞ն թուղթ ինկած էր, թէ ընդօրինակութիւնը, որ եւ է պատճառաւ, անկարեւոր համարուած է: Հաւանօրէն Յակոբ եպ. Կուտինացի, որ Թ. 11ի ամբողջական օրինակն հանել տուած էր 1611ին (տե՛ս վարը), նաեւ Ողբս ստացած էր: Այս պատմական ոտանաւորս կը հրատարակեմ տարբեր ամբողջութեամբ (էջ 288—306):*

2. Յաղագս գիտութեան երկնից բարձրութեան եւ Է. պարունակացն: *Ազարիա*

Սասնեցի գրած է գայս ի խնդրոյ Անտոն քահանայի ի Սեբաստիա, 1607ին:

«Յաղագս գիտութեան երկնից բարձրութեան եւ եւթն պարունակացն. եւ թէ քանի գարէհատ է յերկրէ մինչեւ յերկինս ի խորանն անմատոյց պարգեւալ Ազարիայի աշակերտի ի Հայոց ՌԾԶ թվին[14], զասացեալ(ս) Արիստոտելի եւ Նիկոմարքոս իմաստասիրի, որ եգիտ զարուեստ երկրաչափութեան: Ի թվին Հայոց ՌԾԶ[15] (1607) պարգեւալ եղեւ ի Սեբաստիայ:

Այս է եւթն պարունակն: Ոմանք իմաստնոց այսպէս ասացին զեւթն մոլորական աստեղաց հեռակցութիւն ի միմեանց: Նախ գունտն լուսնին: Ի մերմէ բնակութենէս մինչեւ ցգունդ լուսին ասպարէզք ՂԳ բիւր...:

վերջ. Պարգեւալ <եղեւ> Ազարիայի[16].
Զասացեալն չափից երկնի,
Ոչ իմաստնոց վերծանելի,
Մանկանց տղայոց է խաղալի.
Եւ իմաստից պարսաւելի.
Զի այս գործ չէր ինձ առնելի,
Այլ իմաստից ձեռնարկելի.
Այլ եւ Անտոն քահանայի,

---

[14] Ձեռագրին մէջ քերուած է:

[15] Ձեռագրին մէջ քերուած է ՌԾԶ:

[16] Ձեռագրին մէջ քերուած է «Ազարիայի», բայց նշմարելի են գրերը:

*Խնդրեաց յինէն եւ ես գրեցի։*
*Որ եւ յիշման չեմ արժանի,*
*Որ ընդունի մեղ ողորմի․*
*ՌՅԾ Թուականիս մեծ Հռոմի,*
*ՆՌԼԲ Թվականիս Արարածի,*
*ՉՌ ու ԸՃ ու Է Թվի*
*Ելից մարդուն անուն դրախտի,*
*Թվականի ծննդեան փրկչին*
*Ռ ու Ո եւ Թ ամի»։*

*Ձեռ. Վիեննա, Մխիթ. Մատ. Թ.* 386, *թղ.* 386*ա*—388ա։

3․ Յաղագս որքանութեան եօթնհազար եւ երկերիւրացն։

*«Յաղագս որքանութեան ԷՌ եւ Մացն, որ է յԵլիցն Ադամայ ի դրախտէն մինչեւ ի կատարածն թէ քանի ամիս է կամ քանի շաբաթ, քանի աւր, քանի ժամ, քանի մաս, կամ քանի ական թաւթափելն, որ է լինել ու բանալ[ու] ակին։*

*Զի եւթն դար է կենցաղուս եւ դարն հազար ամ, եւ եւթն աւր է շաբաթն, ամէն աւուր մի դար, որպէս ասէ Եսայի, որչափ տեւէ շաբաթն՝ տեւէ աշխարհս․․․։ Եւ արդ զորքանութիւնք սոցա պարզեալ* Ազարիայի[16] *այսպէս․ ԷՌ ամն ՉԴՌ ամիս է․ ԼԶ բիւր եւ Ս․ շաբաթք են ԻԲ քանքար եւ ԾԲՌ աւուրք են․ աւրն ԻԴ ժամ է ընդ տիւ եւ ընդ գիշեր․ եւ անուանք ժամուցն այս է․*

| ժամք տուընջեանն· | ժամք գիշերոյ· |
| --- | --- |
| 1· Այգն, | Խաւարակն, |
| 2· Ծայգն, | Աղջամուղջն, |
| 3· Զայրացեալն, | Մթացեալն, |
| 4· Ճառագայթեալն, | Շաղաւոտն, |
| 5· Շառաւեղեալն, | Կամօտն, |
| 6· Երկրատեսն, | Բաւականն, |
| 7· Շանդկողն, | Խաւթափեալն, |
| 8· Հրակաթն, | Գիզակն, |
| 9· Հուրփայլեալն, | Լուսաճեմն, |
| 10· Թաւթեալն, | Առաւօտն, |
| 11· Առ(ա)ւաւտն, | Լուսափայլն, |
| 12· Արրողն: | Փայլածուն: |

*Ամխան Զի ժամ է տարին···*

*Ձեռ· Վիեննա, Մխիթ· Մատ· Թ· 386· թղ· 388ա—390ա:*

4· Յաղագս գիտութեան Արեգական թաւալմանցն:

*«Յաղագս գիտութեան Արեգական թաւալմանցն[17] եւ ժամուցն եւ մասանցն եւ աստիճանաց եւ ակին Թարթիցն[18] եւ հինգ աւուրց արարչութեանց եւ նահանջիցն եւ չորից[19] ամսոցն[20], որ է հունձ[21], վերջին կատարածին եւ լրումն ԵՌ եւ Մ[22] ամին եւ կատարածի մասանց լուսին[23] եւ թիւք ամացն*

---

17 T *թաւալման արեգականն:*
18 T *ակնթարթիցն:*
19 M *չորք:*
20 T *ամացն:*
21 M *հունծ:*
22 T *եւ կամ Մ ամին:*
23 T *լուսնկան:*

*կատարածի յուանին[24], պարգեալ Ազարիայի ուսակերտի ի Հայոց ՌԾԶ[25] թվին:*

*Արդ գիտելի է, զի գիշերուան վերջի ժամն որ է փայլածուն՝ յորժամ վճարի, ծագէ զիմբրեաթն, որ է լոյս, որ յառաջէ քան զարեգական յերկնից ծագէ...»:*

= *Ձեռ. Վիեննա, Մխիթ. Մատ. Թ.* 386, *թղ.* 390*ա*—400*ա* (= M): *Տիւբինգէն, Համալսարանի Մատ. Թ.* 85. 47*բ*—58*բ* (*Վերջը պակաս*) = Finck, *Ցուց.* Ma XIII, *էջ* 118 (= T):

5. Վասն գիտութեան հինգ աւուրց Արարչութեան:

*«Այլ պարզ Մեկնութիւն յԱզարիայ աշակերտէ արարեալ ի Հայոց ՌԾԷ թվին վասն գիտութեան հինգ աւուրց արարչութեան եւ նահանջին եւ չորից ամսոյն[26] եւ կատարածի յուանին: Ոչ թէ զխորհուրդ բանին մեկնէ, այլ զթիւ ժամանակացն թէ ուստի սկսանի եւ ուր կատարի:*

*Գիտելի է զի օրն ԻԴ ժամ է...»:*

*Վ. Այս է բաց կարծեաց իմաստասիրաց. բայց ճշմարիտն Աստուծոյ միայն է գիտելի:*

= *Ձեռ. Վիեննա, Մխիթ. Մատ. Թ.* 386, *թղ.* 400*բ*—406*ա*:

*Գրուածքիս խորագիրը նախորդ հատուածին մէջ կրկնուած է. հաւանօրէն ընդօրինակողէն: Կ'երեւայ թէ Ազարիա* 1609*ին*

---

[24] *եւ թիւք — յուանին* չիք T:

[25] T *ՌԾԸ*:

[26] *Զ. չորք ամսոյն*:

միւսանգամ խմբագրած է այս եւ նախորդ գրուածքները միացնելով զանոնք. ուստի Տիւբինգէնի օրինակը վերջին խմբագրութիւնը կը ներկայացնէ, դժբախտաբար վերջը պակաս է հոն: Հ. Տաշեան, Ցուց. 839 խօսելով Թ. 386ի վրայ, կը գրէ. «գործին վերջը կիսատ կ'երեւայ». բայց գոնէ նախորդ հատուածի խորագրին բովանդակութիւնը վերջին հատուածին մէջ լրիւ տրուած է:

6· Յաղագս գիտութեան Հայոց թուականի: *Համառօտ տոմարագիտական գիտելիք է Հայոց Թուականի մասին. խորագիրն է.*

*«Յաղագս գիտութեան Հայոց Թվականի եւ յայտնութեան եւ մեծ նահանջին եւ Հայոց դարնանամտին. նահանջաց նահանջին եւ ամսանահանջին, թէ ուստի՞ են սկսեալ կամ ուր անկանին կամ որպէս վարեն. կամ յետ անկելումն որպէս դարձեալ սկսանին այսոքիկ եւ այլ ամենայն պատճէ(ն)ք տումարին: Այսպէս թուեալ եղեւ ի Թվին Հայոց ՌԿԵ յԱգարիա աշակերտէ:*

*Այսպէս գի յետ ՇԾԳ ամի ծննդեան Քրիստոսի յառաջնոց եղեալք յանկ ելեալ եւ սկսեալ չփոթեցաւ տոմարն Հայոց...»:*

= *Ձեռ. Վիեննա, Մխիթ. Մատ. Թ.* 672, *Թղ.* 103*բ*—105*ա* (*ԺԷ*):

7· Տօմար Արեգական եւ Լուսնի:

*Ագարիայի կ'ընծայուի ուրիշ տոմարագիտական աշխատութիւն մ'ալ: Ասոր ձեռնարկեց Ագարիա հաւանօրէն առթիւ Հայոց նոր շրջանին, որ կը սկսէր* 1616, *Նոյեմբ.* 29*ին:*

*Այս նոր, երրորդ շրջանը սովորութիւն եղաւ այսուհետեւ կոչել Ազարիայի կամ Փոքր Տոմար. որ գործածութիւն գտաւ յատկապէս Պարսկահայոց քով ԺԷ. եւ ԺԸ. դարուն: Այս պարագան առիթ տուած է գիտնոց Ազարիան ծագմամբ Ջուղայեցի ճանչնալու. այսպէս* E. Dulaurier, Recherches sur la chronologie arménienne, Paris 1859, *էջ* 115 *կը գրէ.* «Azaria, surnommé *Ջուղայեցի* ou de Djoulfa, était du nombre de ces Arméniens que Schah-Abbas Ier, dit le Grand, transporta en masse dans la Perse, au commencement du XVIIe siècle». *Ի՞նչ աղբիւր ունի հոս Դիւլորիէ. ինձ ծանօթ չէ: Կայ Ազարիա Ջուղայեցի նոյն դարուն երկրորդ կէսին ծաղկած, հեղինակ զանազան մանր տաղերու: Հաւանական չէ, որ անիկա պարապած ըլլայ տոմարագիտութեամբ: Յամենայն դէպս Ազարիայի տոմարը գոյութիւն ունէր* 1647*էն յառաջ:*

*Յովհաննէս Ջուղայեցի իր հրատարակած «Գիրք Տումարաց որ եւ Պարզատումար կոչի» գործին մէջ, լոյս տեսած* 1647*ին ի Նոր-Ջուղա, կը գրէ (Յառաջաբան, էջ* 5). *«զոր եւ չարադրեցաք բացայայտ եւ պարզ բառիւք, սահմանեալ ի վերայ ամսոց եւ տոմարացն Ազարիայի,* որ է իբր ընտանի մեզ եւ սնընդակից. *յորմէ լինի բազում օժանդակութիւն գործոց ձերոց, այս է տուր եւ առութեան»: Այս իմաստով գրքին խորագրին մէջ ալ կը նշանակուի. «զոր փոխարկեալ եղեւ ի*

յամսոց եւ ի տումարացն Հռոմայեցւոց, ի յամիսս եւ տոմարս Ազարիայի կոչեցելոյ»:

Հաւանօրէն Յովհ. Ջուղայեցւոյ խօսքը· «որ է իբր ընտանի ձեզ եւ սննդակից» առիթ տուած է Դիւլօրիէի Ազարեան Ջուղայեցի համարելու: Ինձ կը թուի, սակայն, թէ խօսքին իմաստն է հոս, թէ Պարզատոմարը ընծայուած ձեւով դիւրամատչելի, «ընտանի եւ սննդակից» պիտի ներկայանայ վաճառականական գործառնութեանց ժամանակ: Ազարիայի տոմարի գրութեան մասին տե՛ս Dulaurier, անդ, էջ 115—117:

Ազարիայի անուամբ, սակայն, բաց ի վերոյիշեալէն, ուրիշ Տոմարական գրութիւն մը չէ հասած մեզի: Հաւանօրէն իրենն է հետեւեալ գրութիւնը·

«Տօմար Արեգական եւ լուսնի, որ ցուցանէ զԿենդանակերպքն եւ զԱստիճանքն եւ զՄասունքն եւ զԾնունդ Լուսնին եւ զԼրումն եւ զայլն ամենայն կարգաւ, զժամն եւ զՄասունքն իւր: ...»

ԶԵԹ. Բեռլին, Պետական Մատենադարան, Հայերէն ձեռագիրք, Թ. 88, թղ. 109բ—125բ (վերջը թերի)· հմմտ. N. Karamianz, Verzeichnis der armenischen Handschriften (der kgl. Bibliothek zu Berlin), Berlin 1888, էջ 71· աչքի առաջ ունիմ Հ. Յ. Տաշեանի կազմած Ցուցակը նոյն Մատենադարանի հայերէն ձեռագրաց. անտիպ: Պետերբուրգ, Պետ. Մատենադարանի օրինակը, թղ. 86—98· հմմտ. M. Brosset, Notice sur un manuscrit armé-

nien nouvellement acquis pour la Bibliothèque Imperiale Publique. Mélanges Asiatiques 8 (1878), 613—621 (= Bulletin, t. 25 [1878], 277—282) ։

*Գրուածքիս հեղինակի անունը չէ նշանակուած։ Յօրինման ժամանակը կ'իյնայ 1615/1616 տարւոյն. Թղ. 109բ կ'ըսուի. Դարձեալ ծանիր զի յամի ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՈԺԵ թվին եւ Հոռոմայեցւոց Թվ. ՌՑԿԷ եւ Հայոց ՌԿԴ. [եւ] Լուսնագիրն Ա եւ Լրման գիրն ԺՁ»։ Ասկէ կրնանք հետեւցնել գրուածքիս յօրինման տարին։ Եւ որովհետեւ այլուստ ծանօթ չէ ինձ այս շրջանին բացի Ազարիայէ ուրիշ տոմարագէտ, կը վերագրեմ ենթադրաբար Ազարիայի։*

*Բրոսէ այսպէս կը ներկայացնէ գրուածքիս բովանդակութիւնը.*

«Un autre calendrier astronomique, avec remarques et prédictions presque pour chaque jour du mois, présidé tour à tour par chacun des douze signes du zodiaque, vient après celui qui précède: les tablettes astrologiques de Ninive et de Babylone n'auraient pas mieux fait.

Table du soleil et de la lune, contenant le signes du zodiaque, leur altitude avec les fractions, les zones des planètes, les mois, la lettre hebdomadaire, l'heure de la naissance de la lune et ses fractions, la pleine lune, etc.

«Dans la 1re colonne se trouve le signe du zodiaque;
«dans la 2e, son altitude;
«dans la 3e, ses fractions;
«dans la 4e, les zones des planètes, etc.;
«dans la 5e, les jours des mois — dates mensuelles;
«dans la 6e, la lettre hebdomadaire;
«dans la 7e, la lettre de la lune;
«dans la 8e, l'heure de la lune;
«dans la 9e, les fractions;
«dans la 10e, tous les événements, sans faute, grâce a Dieu.

*Ի վերջոյ հետեւեալ դիտողութիւնը կ'ընէ* Brosset (p. 617): Toutes les remarques et prédictions, analogues à celles du calendrier de Bruce[27], sont rédigées en arménien vulgaire.

*Բրոսէի կարծիքն այլ է, թէ գրուածքս ժէ. դարէն ըլլայ (էջ 619):*

8. Աշխարհացոյց Պտղոմէոսի:

*«Այս է նոր Աշխարհացոյց լաւ եւ պիտանի, ի Ֆռանկաց ի մերս թարգմանեալ ի թուականին Հայոց ՌԿԵ (1616) յԱզարիայէ աշակերտէ Գրիգորի բաբունապետի Կեսարացու, որ նախ չինեալ էր իմաստասէրն Թոլոմէ:*

*Այս է նոր ճէօկրաֆիայն, այս ինքն աշխարհագիր...:*

---

[27] *Տպագրուած Խարկով 1875ին:*

*վ. Եւ Թէրինէու ծոմն*[28]:

= *Ձեռ. Թօփճեան, Ցուց. Դաղեան Ձեռագրաց, Ա., Թ.* 78, *Թղ.* 94*ա*—104*բ* (*յամէ* 1624, *ի Կամենից. Ցուց., էջ* 95):

9. Բանի յաղագս Աստուծոյ:

*Կը պատմէ Գրիգոր Դարանաղցի, թէ* 1612*ին ի Կ. Պոլիս* (*Ղալաթիա*) *ինքը, Յովհաննէս Խուլ եւ Զաքարիա Վանեցի խորհուրդի նստած էին: Կը խորհէին հնարքով զԳրիգոր Կեսարացի ձգել աթոռէն եւ պատրիարքական իշխանութիւնը բաժնել իրենց մէջ: Այս եռապետութեան համար կը յօրինուի Կանոնագիրք մը. բայց զայն չի հաւնիր Դարանաղցի, որ իր կողմէն նոր կանոնագրութիւն մը կ՚առաջարկէ, որուն մէջ ծանրակշռութիւնը եկեղեցականներու բարեկարգութեան եւ ժողովուրդին մասնաւոր կրթութեան վրայ կը դրուէր: Այս առաջարկութիւնն ալ չի գտներ հաճութիւն: Դարանաղցի կ՚աւելցնէ.* «Որպէս եւ յետ ժամանակի արարաք (*նման Կանոնագիրք մը*) ի հետ ողորմածոգի Ազարիային, որ տակաւին պահեալ եմ պատուով զնորա սուրբ ձեռագիրն, որ յաղագս Աստուծոյ է գրեալ» (176):

---

[28] *Ասոր կից՝ Հասարակ պատմագրութիւն երկրիս ի Լատինացւոց սահմանեալ:*

*սկ. Ծոմն ովկիանոս տարածի...*

*վ. Որ է կղզի ազատու:*

*Անդ, Թղ.* 104*բ*—107*ա*:

10. Կարգ եւ թիւ կաթողիկոսաց Հայոց։

*«Կարգ եւ թիւ կաթողիկոսաց Հայոց նստեալ յաթոռն Ս. Գրիգորի Լուսաւորչին յէջմիածին. զոր հաւաքեալ ի գրոց պատմագրաց, աշխատեալ Ազարիայի բանասիրի ի Կոստանդնուպոլիս ի թվին Հայոց ՌԾԷ։*

*Եւ գիտելի է զի ի Սրբոյն Գրիգորէ մեր Լուսաւորչէն մինչեւ ի Ս. Ներսէս Կլայեցին ԾԴ կաթողիկոս է նստեալ էջմիածին...»։*

*= Ձեռ. Համամճեան, Ցուց. Գաղատիոյ, թ.* 11, *թղ.* 546*բ*—555*ա* (1609)։

11. Հաւաքածոյ կանոնագրոց։ — *Ազարիա արդէն Սասուն գտնուած ժամանակ փափագ կ'ունենայ Կանոնագրքի բնաւոր օրինակ մը ձեռք բերել. իր որոնումները ապարդիւն կ'անցնին։ Կ'իմանայ սակայն, թէ նոյն գրքի լաւ օրինակ մը կը գտնուի Գրիգոր Կեսարացւոյ քով։ Կու գայ Կ. Պոլիս. «տեսի զտիեզերալոյս առաքելոցն եւ զսուրբ ժողովոցն կանոնս եւ յոյժ ուրախացեալ ետու զաղափարել. եւ ես ջանացի այլ եւս աւելուլ եւ հարստացուցանել, զի մի ինչ պակաս գտցի»։ «Ժողովեցի, կ'ըսէ, բազում բանս եւ զանազան կանոնս եւ առանձնական եւ հասարակ ժողովոց, ի մերոց եւ օտարասեռն ազանց բազում աշխատութեամբ հաւաքեցի իբրեւ զծաղիկ ի պսակս բոլորեալ». այս եղած է* 1603—1609 *տարիներուն։*

*Ազարիայի կազմած Կանոնագրոց հաւաքածոյքի սկզբնագիր օրինակը կը գտնուէր Անկիւրիա։ Ունիմ աչքի առաջ անոր ցուցա-*

*կագրութիւնը, կազմուած Աղան Վ. Համամճեանէ : Կարեւոր կը համարիմ զայն համառօտիւ ներկայացնել այս տեղ, առնթեր տալով Ազարիայի Յիշատակարանը :*

*Թուղթք՝* 600 : — *Մեծութիւն՝* 24,5 × 17,5 *հմ.* : — *Գրութիւն՝ երկսիւն* 20 × 6 *հմ.* : — *Տողք՝* 28 : — *Նիւթ՝ ողորկ բամբակեայ թուղթ* : — *Կազմ՝ փայտեայ, կաշեպատ* : — *Համդամանք՝ բաւական լաւ պահուած, թղթերը խոնաւութենէ դեղնցած* : — *Գլխագիրք՝ երկաթագիր կարմիր* : — *Գիր՝ նօտրագիր* : — *Գրիչ՝ Սիմէոն դպիր Զամոսցացի* : — *Ժամանակ՝ ՌԾԸ* = 1609 : — *Տեղի՝ Կ. Պոլիս, Ս. Սարգիս* : — *Ստացիչ՝ Ազարիա Սասնեցի* :

*Մատեանս կը բովանդակէ՝* 1. *Դատաստանագիրք* : 2. *Կանոնագիրք* : 3. *Հաւաքումն կանոնական թղթոց եւ նմանեաց* :

### Ա. Դատաստանագիրք. թղ. 1ա—119բ :

*Թղ.* 1*ա*—2*ա. Այլ ցանգ Գրոց Դատաստանի. գլխաւոր կարմիր լոքով գրեալ, որ անաշխատ գտանես զոր ուզես. գլուխք ԻԹ* : — *Ա. Նախադրութիւն գրոց Դատաստանի..* :

*Թղ.* 2*ա*—68*բ.* 1. *Երանելի վարդապետին Մխիթարայ արարեալ զԳիրս Դատաստանի ի խնդրոյ տեառն Ստեփաննոսի Աղուանից կաթողիկոսի : Պատասխանի այնոցիկ որ բամբասեն զմեզ չունել դատաստան* : — *Հանդերձեալ գրել զԳիրս Դատաստանի...* :

*Ցանկ Դատաստանագրոց։ Այժմ սկսանի ցանկ Դատաստանագրոց (գլ. Ա—ՄԾԲ)։ Ա. Վասն Թագաւորաց Դատաստանի. եւ որոց ընդ ձեռամբ նոցա են։ Բ. Վասն հարանց վանից եւ անապատի...։ (Համառօտ խմբագրութիւն։)*

*Թղ. 68բ—115բ. 2. Թիւք կանոնաց. որքանութիւն գրոցն Նաւմոսի։ — Աւրէնք յաղթող Թագաւորացն Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի։ «Զաւրէնս բարի եւ ճշմարիտ Տէր Աստուած ի սկզբանէ ետ մարդոյն..։*

*Համառօտ ժողովումն աւրինացն վերստին։ — Դարձեալ աւրէնք աստուածադիրք ի ձեռն Մովսիսի յԵլից գրոց։ — Ամենիմաստ Թագաւորացն Հռովմայեցւոց օրէնսդրութիւն։ — Ի կատարածին՝ Վասն զինուորաց սահմանադրութիւն։*

Բ. Կանոնագիրք, թղ. 120ա—355բ։

*Շարագրութիւնք կանոնաց եղեալ այսչափ եւ այսչափ կարգ գլխոցն. եւ այս ցանկովս գտանես զոր խնդրես դու։ Թուով քառասուն է։ — Իսկ այժմ գրեմք զԹիւս վկայութեան համաբարբառաց, Թէ ո՞ւր եւ ոյք զուգին ընդ միմեանս վկայութիւնքն։ Եւ նախ՝ Ընդ արեւելս պարտ է երկիր պագանել...։ — Սկիզբն Առաքելական կանոնիս։ Վարդապետութիւն Առաքելոցն զկնի վերանալոյն Քրիստոսի առ Հայր յերկինս։ — Գլուխք եւ Թիւք համօրէն կանոնական. ասացուած առաքելա–*

կան կանոնիս գլուխք ԼԴ: — Այլ իմն ցանկ գրոց կանոնացս. վասն Թուոց գլխաւոր ցանկի համարոցն. զոր զԹիւ հաշուոցն գտցես ի համարս. որ բոլորեալ է կարմիր լոքով. եւ այսպէս անաշխատ գտցես զգլուխ կանոնաց եւ ցանկից. զի ցանկս զցանկն ցուցանէ:

1. Կանոնք եւ սահմանք զոր եդին աշակերտքն Քրիստոսի ի սուրբ եկեղեցիս:

2. Երկրորդ Առաքելական կանոնք: Գլ. ՁԵ:

3. Սահմանք Կանոնաց Ս. Թադէոսի:

4. Կանոնք տեառն Փիլիպպոսի առաքելոյն:

5. Կանոնք հարանցն հետեւողաց:

6. Անկիւրիոյ կանոնք, գլուխք Ի:

7. Դնի կանոն Նիկիական, գլ. Ի:

8. Կանոնք Բ. Նիկիականք:

9. Կանոնք Ս. Գրիգորի առաջնոյ Հայոց:

10. Կանոնք Աթանասի:

11. [Կանոնք Մակարայ:]

12. Կանոնք Կ. Պոլսի ժողովոյն:

13. Սահմանք կանոնադրութեան Գրիգորի Աստուածաբանի:

14. Կանոնք Բարսղի, գլ. Ծ:

15. Բարսղի Գիր կանոնական առ Դիոդորոս:

16. Բարսղի Գիր կանոնական վասն պէսպէս ախտից:

17. Եփրեմի ի կուսական ճառէն:

18․ Կանոնք Ներսէսի կաթողիկոսի եւ Ներշապհոյ, գլ․ ԼԷ։

19․ Կեսարեայ կանոնք Ժ։

20․ Նէոկեսարեայ կանոնք։

21․ Գանգրայ կանոնք։

22․ Անտիոքայ կանոնք։

23․ Խոստովանութիւն ժողովոյն Անտիոքայ։

24․ Ղաւոդիկեայ կանոնք։

25․ Սարդիկեայ կանոնք։

26․ Կանոնք Եպիփանու։

27․ Կանոնք Եփեսոսի ժողովոյն։

28․ Կանոնք Կիւրղի։

29․ Սահակայ կանոնք։

30․ Կանոնք Շահապիվանի։

31․ Թուղթ Սեւադեայ։

32․ Կանոնք Բ․ Անտիոքայ։

33․ Կանոնք Յովհ․ Մանդակունւոյ։

34․ Նորին Յովհ․ Մանդակունւոյ Բան կանոնական։

35․ Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչագան։

36․ Կանոնք վերջնոյ Սահակայ կաթողիկոսի։

37․ Կանոնք Յովհ․ իմաստասիրի։

38․ Կանոնք Սիոնի։

39․ Սահմանադրութիւն Վաչագանայ Աղուանից արքայի։

40․ Կանոնք Դունայ ժողովոյն։

41․ Սրբոյն Եղիշայի ի կանոնաց գրոց։

42· Յովհաննու Կոստանդնուպոլսի հայրապետի: Քանզի ոչ եթէ ընդ վայր յիշեմք յաստուածային խորհուրդն ջնջեցեալսն...

43· Մեծի Աղաթանգեղոսի ի բանէն, որ զԿայենէ: Արդ տատանոր պաշտօնեանն դադարեցուցուք պատասանութիւն...:

44· Երանելւոյն Մեսրոպայ Հայոց վարդապետին· Բարւոք ողբայր ոմն ի սրբոց:

45· Սահմանք եւ կանոնք կարգի եկեղեցւոյ սրբոյն Ներսէսի Հայոց հայրապետին· գլ· ՂԵ:

46· Կանոնք Յոհաննու Մանդակունւոյ Հայոց կաթողիկոսի· գլուխ է: Քահանայ կ· ամեայ ի պատարագէ լռեցէ...:

47· Նորին Յովհաննու Մանդակունւոյ կոչումն ապաշխարութեան: — Խոստովանութիւն քահանայի:

48· Կանոնք երանելւոյն Եպիփանու Կիպրացւոյ եպիսկոպոսի:

49· Ի հարանց հեռաւորաց է բանս:

50· Կղեմայ Հռոմայ հայրապետին:

51· Սրբոյն Դիոնեսիոսի Աթենացւոյ բան Ա· եւ Բ·:

52· Կանոնք սուրբ ժողովոյն, որ ի Թէոդուպոլիս:

53· Հիպողիտայ սրբոյ բան ի Ծնունդն եւ ի Մկրտութիւն Տեառն· գլուխ Ա:

54· Մելիտոսի եպիսկոպոսի Թուղթ:

55· Մանուէլի· գլուխ Ա:

56· Ի Սոկրատայ:

57. Կանոնք տեառն Սիմէոնի Ապարանից կաթողիկոսի:

58. Նեկտառեայ Հռոմայ եպիսկոպոսի:

59. Հարցումն Թէոդորոսի քահանայի եկեղեցւոյն Կեսարու առ Երանելի Եպիփան:

60. Յոհաննու Երուսաղէմայ եպիսկոպոսի:

61. Սերբերիանոսի ի Ղուկայ Աւետարանին մեկնութենէն:

62. Ներսէսի կաթողիկոսի եղբաւր տէր Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի վասն ապաշխարութեան: Մի ոք արեան մերձաւոր...:

63. Կանոնք զգուշաւոր քահանայիցն համառօտ. Քահանայից պարտ եւ արժան է սրբութեամբ սպասաւորել...:

64. Վասն զգուշութեամբ սպասաւորելոյ սուրբ խորհրդոյն: Եթէ անմաքրութեամբ ճաշակէ...:

65. Եզնկայ Կողբացւոյ Հայոց վարդապետի բան Ա. եւ Բ.:

66. Անանիայի Հայոց վարդապետի ասելի անխանլի հաւորդելոյն Յունաց:

67. Այլուստ ժողոված իմաստախոհ սուրբ արանց:

68. Յաղագս նկարեալ պատկերաց: Ի պատկերս նկարեալս...:

69. Վասն քահանայագործութեան կարգաց պատարագութեան:

70. Սուրբ հայրապետացն անուանք Նիկիոյ սուրբ ժողովոյն այս են...:

*71· Գաւազանագիրք կաթողիկոսաց· քահանայապետաց Հայոց մեծաց մինչեւ Սարգիս կաթողիկոսն:*

*72· Եպիսկոպոսք Կամսարական տան:*

Գ· Հաւաքումն կանոնական թղթոց եւ նմանեաց· թղ· 356ա—600:

*Թղ· 356ա—365ա· 1· Բանք գեղեցիկք եւ յոյժ պիտանի վասն աթոռոյն Ախթամարայ, որ է ի ներքոյ բանադրանաց· ի սրբոյն Գրիգորէ Տաթեւացւոյ տաքեալաշնորհ վարդապետէ:*

*2· Դարձեալ զկնի բանադրանացն զոր յիշեաց եւ մեղադրեաց երիցս երանեալ եւ երկրորդ Լուսաւորիչն այլ եւ նորոգիչ Հայոց ազգիս սուրբն Գրիգոր պարթեւայինն: Յոր խրատէ զղջացեալք յետոյ ոմանք Ախթամարցիք եւ հնազանդեալ սուրբ Աթոռոյն Էջմիածնայ՝ ընկալան արհնութիւն ի Կիրակոսէ կաթողիկոսէն Հայոց, որ է այս. Ես Կիրակոս ծառայ ծառայից Աստուծոյ...:*

*3· Խրատ կանոնական ընդհանուր ամենայն հաւատացելոց ի Քրիստոս· տուեալ Կիրակոսի կաթողիկոսի սուրբ Էջմիածնի: Մի ոք իշխեսցէ զանկեալն ի կարգէ քահանայութեան կաթողիկոս դնել...:*

*Թղ· 376ա—378բ· 4· Տեսիլ սրբոյն Սահակայ Հայոց հայրապետին ի քերթողական գրոց: Ժողովեցան միաբան նախարարքն...:*

*Թղ· 379ա—415ա· 5· Տեսիլ Ս· Գրիգորի Լուսաւորչին, զոր ետես ի Վաղարշապատ*

քաղաքի: Իսկ զփոխանորդն Քրիստոսի ճշմարիտ քահանայապետի...:

6. Հարցումն պէսպէս խոստովանութիւն բանից եւ պատահմանց եկելոց ի զգուշութիւն. զոր հարցեալ համբակ քահանայի որոյ անուն Արքայութիւն կոչի, զԴաւիթ ումն քահանայ գիտուն յոյժ: Հարց. Եթէ զինչ է որ յարարածս Աստուծոյ ոմանք սուրբ կոչեցան...:

Թղ. 416ա—420բ. 7. Կանոնք երանելոյն Օգոստինոսի Հռովմայ (իմա՛ Հիպպոնի) եպիսկոպոսի վասն վարուց կրօնաւորաց: Նախ քան զամենայն, եղբարք սիրելիք, պարտիք սիրել զԱստուած...:

8. Նորին երանելոյն Օգոստինոսի խրատ ոգէշահք վասն տարեփորձացն եւ նորամուտից ի կարգ: Նախ պարտիս ի միտ ածել...:

Թղ. 421ա—462ա. 9. Թուղթ Ներսիսի կաթողիկոսի ընդհանրական առ համօրէն հայաստանու ազինս...:

Թղ. 462ա—483ա. 10. Թուղթ տեառն Գրիգորիսի կաթողիկոսի Հայոց՝ գրեալ եղբօր նորին Ներսէսի եպիսկոպոսի ... ի Միջագետս Ասորւոց...: Թէպէտ եւ տէրունական հրաման...:

Թղ. 483ա—500բ. 11. Թուղթ մխիթարական տեառն Ներսէսի կաթողիկոսի առ ումն իշխան արեւելեան...: Անտես է յոյս աստուածային...:

12. Նորին... առ եղբօրորդին իւր Ապիրատ: Արեգական լուսոյ...:

Թղ· 501ա—515ա· 13· Բան խրատու երանելի սուրբ հօրն եւ քաջ րաբունապետի Եսայի վարդապետին Հայոց ասացեալ վասն մոլորման Զատկի ։ Եւ արդ սուրբ հօրս այսոքիկ բանք· · · ։

14· Յաղագս Քաղկեդոնի ժողովոյն է ։ ժողովն Քաղկեդոնի չարապէս շինելով ի վերայ հիման Նեստորի· · · ։

15· Ընդդէմ այնոցիկ, որ ընդդէմ բաժակին մոլին ։ Բաժակն օրհնութեան, զոր օրհնեմք· · · ։

16· Դարձեալ ընդդիմարանութիւն սակս ջրոյն խառնման ի սուրբ խորհուրդն· ի Թուին Հայոց ՋԾԸ ։

Թղ· 515ա—530բ· 17· Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի եւ իմաստասիրի, պատասխանի թղթոյն Գերմանոսի պատրիարգի Կոստանդնուպոլսի ։ Յոգնապատիւ եւ հռչակելի փառաւորութեամբ· · · ։

Թղ· 530բ—535բ· 18· Մովսէսի վարդապետի Եղնկացւոյ գրեալ պատասխանի ի Տրապիզոն առ հաւատածեալ երէցն Գրիգոր ։ Քանզի մարդ իմաստուն ճշմարտութիւն միշտ աւետարանէ· · · ։

Թղ· 535բ—542ա· 19· Բանք գեղեցիկ եւ պիտանիք երանելւոյն Խոսրովու ։ Տեղի ագօթից գիրք սուրբք գեկեղեցի մեզ ուսուցին· · · ։

Թղ· 542ա—545բ· 20· Թուղթ Հայոց կաթողիկոսի Կոստանդեայ յաստուածապահ գլեկէն Հռոմկլայ առ Թագաւորն Հեթում ի

մայրաքաղաքն Սիս․ պատասխանի թղթին որ ի պապէն բերաւ ի Թվին Հայոց ՈՂԷ․ որ գրեցաւ պատասխանի ի ձեռն արքունական վարդապետի Վարդանայ յարմարեալ։ Քրիստոսապսակեալ սուրբ Թագաւորի․․․։

Թղ․ 548բ—548ա․ 21․ Այլ բան վանականին Վարդանայ գրեալ։ Զի՞նչ է ճրագալուցին լուծանելն․․․։

22․ Այլ բան վասն հաւատոյ ասացեալ սուրբ վարդապետին Վարդանայ։ Կենսաբուղխ սուրբ աւետարանն․․․։

23․ Յաղագս աստիճանաց եկեղեցւոյ թէ ո՞ւր եցոյց Քրիստոս կամ ե՞րբ աստիճանեաց զնոսա։

Թղ․ 548ա—557ա․ 24․ Մովսէսի Խորենացւոյ, զոր կարգեաց վասն թագաւորաց Հայոց։ Մովսէս Խորենացին զշարս թագաւորաց Հայոց այսպէս կարգէ․․․։

Թղ․ 557ա—562ա․ 25․ Յաղագս ժողովոցն որ ի Նիկիա եւ յայլոցն եղեն։

26․ Գիրք հերձուածոց, թէ քանի եղեն հերձուածողք ի սկզբանէ մինչեւ ցայս։ Առաջին հերձուածողքն հեթանոսք եղեն․․․։

Թղ․ 562ա—571բ․ 27․ Պաւղոսի վարդապետի ասացեալ ընդդէմ ժողովոյն Քաղկեդոնի․ եւ պատասխանի թղթոյն զոր գրեաց առ նա Թէոփիստէ։ Աստուածային եւ մեծ առաքեալն Պաւղոս գրէ առ Կորնթացիսն․․․։

Թղ․ 571բ—580ա․ 28․ Կարգ եւ թիւ կաթողիկոսաց Հայոց․ ․․․աշխատեալ յԱզա-

ընդյէ բանասիրէ ի Կոստանդնուպոլիս Թվին Հայոց ՌԾԸ։

Թղ․ 580ա—587բ․ 29․ Բանք գեղեցիկք եւ յոյժ պիտանիք յաղագս պասկի ամուսնութեան եւ աստիճանաց ազգականութեան, հոգեւորն եւ մարմնաւորն, թէ քանի պորան ոչ է ամուսնութեան։ Գիտելի է զի կանոնքն է այնոցիկ․․․։

30․ Դարձեալ յաղագս ազգականութեանց բաժանման այլ խրատ, արարեալ վարդապետին Յակոբայ վասն ազգականութեանց (կիս ագխսակք)։

31․ Այլ խրատ (Յովհ․ Երզնկացւոյ)․

ա․ Վասն պսակի եւ ամուսնութեան։ Եւ արդ որ այսպէս սրբութեամբ անանին եւ լինին կարին ԺԵ․ տարու․․․։

բ․ Յատկութիւն խոստովանութեան այսքան է։

գ․ Յաղագս չնութեան եւ պոռնկութեան բանք։

դ․ Դարձեալ գրեմք վասն գողութեան որ հակառակ է Աստուծոյ։

ե․ Վասն կիւրակէի եւ աղօթից։ Արդ պարտ է քրիստոնէի աւուրն երեք անգամ աղօթել․․․։

Թղ․ 588ա—594ա․ 32․ Յիշատակարանք Սիմէոն Լեհացւոյ եւ Ազարիայի։

Թղ․594ա—600ա․ 33․ Ողբ (անձ ու վարը)։

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՍԱԿԱՒՈՒՔ ԱՐԱՐԵԱԼ ԱՋԱՐԻԱՅԻ ԲԱՆԱՍԻՐԻ

*Գութն արարչական խնամոցն Աստուծոյ եւ անդունդք սեռն եւ յատակ սիրոյ նորա անմեկնելի եւ անորիչ են արարելոցն յիւրմէ լուսավարժ եւ բարերուղխ ստեղծագործելոցն, յառաջնոց մինչեւ ի հուսկ յետին արարածս . . . :*

*Արդ աւարտ առնելով բանիցս, զի բազմութիւն խօսից տաղտկութիւն է լսելեաց: Բայց ոչ կամիմ զանց առնել եւ հարեւանցի անցանել, այլ կամիմ եւ ձեզ ծանուցանել զդառնութիւն ժամանակիս եւ բազմազան զանցս աղէտի, որ ես աչօք իմովք տեսի. զորս ի բազմաց զսակաւն պատմեցից փոքր ի շատէ տաղիւ չափ ոտանաւոր, զի եւ դուք գիտիցէք թէ որպիսի նեղութիւն եւ չարչարանք գտին. եւ յամենայնէ փրկեաց զիս բան Պօղոսի, եթէ Որք կամիցին աստուածպաշտութեամբ կեալ ի Քրիստոս Յիսուս ի հալածանս կացցեն. եւ Չարչարել մարմնով փրկութիւն է հոգւոյ. եւ թէ Չարչարանք որ վասն Քրիստոսի՝ կեանք են յաւիտենական: Եւ Տէրն ասէ թէ Յաշխարհիս աստ նեղութիւն ունիցիք. եւ թէ Նեղ եւ անձուկ է ճանապարհն որ տանի ի կեանսն յաւիտենականս. եւ Վայ ձեզ որ ծիծաղիքդ. եւ թէ Երանի սգաւորաց եւ որ քաղցեալ եւ ծարաւի իցեն: Եւ թէպէտ մեք չարչարեցաք, տանէ եւ ի հայրենեաց զրկեցաք, այլ յոյս ունիմք հոգւով մխիթարել:*

*Եւ արդ ցանկութիւն եւ փափաք, որ զի*

բազմադիմի է օրինակօք տեսանի․ եւ բաժանեալ ի վերայ բնութեանս՝ ումեմն փառաց եւ մեծութեան եւ այլ ումեմն յաղթութեան եւ այլք յայլ իմն հեշտութեան եւ փափկութեան աշխարհիս եւ տիրապէս հասանելոյ ի կամս սրտի: Իսկ ես Նուաստս եւ յետինս ի ծառայից Աստուծոյ, ծառայս մեղապարտ Ազարիայ եւ անարժան եւ տրուպս ի դասս քահանայից, զամենայն ցանկութիւն եւ զխորհուրդ մտաց եւ զյօժարութիւն կամաց երկրորդ եւ յետին համարեցայ առ այս աստուածային զանձիս ստացումն, եւ զսա ստացա յիշատակ անջնջելի եւ մեծութիւն անկողոպտելի: Եւ զի ամենայն գործոց բարեաց թափուր եւ ունայն եմ եւ ոչ ունիմ ի մարմնաւորաց յազգս իմ յիշատակ յետամնաց զկնի մահուան իմոյ եւ ոչ հոգեւոր ըստ մարգարէին, թէ Որ ունիցի զաւակ ի Սիոն եւ ընտանեակ յԵրուսաղէմ: Եւ իմ վասն այսր յուսոյ ըստ ըղձից փափագման ոգւոյ իմոյ աշխատասիրեալ յերկար ժամանակս բազում տառապանօք, այսր եւ անդր յածմամբ յուղէի զբաղձալին իմ եւ ոչ գտանէի ըստ իմում կամաց, այլ ցիր եւ ցան եւ ոչ համագումար, որպէս տեսանէք աստ ժողովեալ ի մի տեղ: Այլ որպէս միոյ մարմնոյ մասունս ի բազումս յօդեալ՝ առ ոմն ձեռք եւ առ ոմն ոտք անջատեալք ի միմեանց երկօրեայ եւ եօրեայ եւ եւս առաւել ճանապարհօք․ իսկ իմ ի բաց եղեալ զտկարութիւնս մարմնոյս, զբոլորն լրմամբ խնդրէի․ եւ ի յերկրէ երկիր

եւ գաւառէ ի գաւառ շրջեալ որոնէր եւ հարցանէր. եւ եկեալ ի հայրենի գաւառէս իմոյ ի Սասնոյ եւ յուղիանկեալ եկի ի աստուածապահ մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս, զի յուսոյ եթէ գտանի ի պատրիարգն Կոստանդնուպօլիս Գրիգոր Կեսարացի քաջ հռետորն եւ անյաղթ փիլիսոփայն, որ էր լցեալ աստուածաշունչ գրովք, ոչ թէ միայն Հին եւ Նոր Կտակարանօք, այլ եւ արտաքին գրոց. եւ նա ի բազում գրեանց եւ ի բազում տեղեաց ժողովեալ էր ի մի: Զոր ես անարժանս եկեալ յարեցայ ի նա. եւ աշակերտեալ առ նա՝ տեսի զտեղեկարանս առաքելոցն եւ զսուրբ ժողովոցն կանոնս եւ յոյժ ուրախացեալ եսու զապաւինարել: Եւ ես ջանացի այլ եւս յաւելուլ եւ հարստացուցանել, զի մի ինչ պակաս գտցի: Եւ էր յոլով գրեանք ի Կոստանդնուպօլիս եւ գտանէր զա՛ եւ խնդրէր ոք. եւ ես գտի զորս ի քահանայս եւ զորս ի աշխարհականս եւ զորս ի այլազգիս. զոր ոմանք բազում աղաչանօք հազիւ տային ինձ վաճառականաւ: Եւ ժողովեցի բազում բանս եւ զանազան կանոնս եւ սահմանական եւ հասարակ ժողովոց ի մերոց եւ օտարական ազանց բազում աշխատութեամբ. հաւաքեցի իբրեւ զծաղիկ ի դաշտս բուրեալս, զի լիցի պատճառ հոգեւոր զբօսանաց ամենախակ անձին իմոյ եւ ի սփոփանս սպասաւոր յոգւոյս, որքան աստուածային կամօք ի մարմնի տաղաւարիմ եւ զկնի հրաժարման աշխարհէս առ երկնաւորն յիշատակս բարեաց մնալոյ ինձ

եւ ծնողաց իմոց, այլ եւ զարմից, կենդանեաց եւ ննջեցելոց, զորս աղաչեմ յիշել ի Տէր Քրիստոս թողութիւն մեղաց:

Արդ ունի գիրքս այս բուն ու բոլոր կանոնս առաքելոց եւ Հայրապետաց եւ առանձնակի ժողովոց սուրբ Վարդապետաց, այլ եւ զբուն Դատաստանագիրն, նաեւ զերկուս երանեալ եւ երկրորդ Լուսաւորչին մերոյ գլխապետին տեառն տէր Ներսէսի զբուն զԸնդհանրականն եւ զայլ գեղեցկաբան վարդապետութիւնս եւ պատասխանիս ընդդէմ այլազգեաց: Այլ եւ զերկար եւ պիտանի խրատս սուրբ վարդապետին Դաւթի կանոնատուս, այլ եւ զանէծս եւ զօրհնութիւնս Աղթամարայ կաթողիկոսին, այլ եւ զհերձուածողացն թէ քանի են եւ որպիսի հերձուածս: Այլ եւ զթիւ Հայրապետացն, թէ որչափ է. այլ եւ բազում բանս եւ խրատս եւ զանազան կանոնս, զոր գտցես լրիւ ի ցանկ մատենիս:

Բայց ժողովեցաւ սա ի չար եւ ի դժուար ժամանակս, որ Հայոց մեծ թվ. ՌԾԲ. որ մինչ ի թվ. ՌԾԸ հազիւ ի մի հաւաքեցի. յորում ազգ Իսմայէլեան առին զաշխարհս յաւար եւ ի գերութիւն ասպատակաւ եւ անխնայ մաշեն ի սուր սուսերի զքրիստոնեայս: Նաեւ Ժ ամ նախ քան զգրել տառիս աւերեալ եղեւ աշխարհս մեր ի Ճելալեաց, յոր եւ ես նուաստս եւ տառապեալս նշդեհս տարաշխարհիկ եղեալ ի հայրենի տեղւոյ իմոյ եւ ի ժառանգութենէ եւ շրջելով իմ տեղեաց ի տեղ, եւ փոխելով գաւառէ ի գաւառ. եւ ոչ գտի հանգիստ ուրեք

իմոց, այլ իբրեւ զոչխարս մոլորեալս եւ կամ թռչուն մի որ ի բունոյն ոստնու եւ յերամէ հեռանայ, ոչ եւս գտանու զընկերսն. այսպէս եւ ես ոչ գտի տեղ խաղաղ, ուր դիցեմ զգլուխ իմ. այլ եւս անկայ ի ձեռս անօրինաց, որպէս ձագ յորոգայթս որսողաց եւ յետ բազում չարչարանաց եւ դառն կտտանաց՝ մօրէ մերկ եղեալ՝ հազիւ մազապուրծ լինեալ զերծայ ի ձեռաց նոցա ողորմութեամբն Աստուծոյ, որպէս եթէ ի ժանեաց առիւծուց: Եւ ով կարէ պատմել կամ ընդ գրով արկանել զանհանդուրժելի նեղութիւն ժամանակին, որոց եւ լուրն պակուցանէ զլսողսն. ուր եւ բազումք, մանաւանդ բնաւքն սննդակիցք իմ եւ ազգայինք, ի պէսպէս մահս եւ ի գերութիւնս մատնեցան, մեծ թշուառութեամբ արտաքս քարշեալք ի մայրենի գրկաց, ի պանծալի գաւառէն Սասնոյ, վասն ըստ մեղաց մերոց եւ բազմաթշուառ բերմանց ժամանակիս, որ աշխատութեամբ լինէաք՝ ուստեք օգնութիւն ոչ ունելով, որպէս արժանն էր ի Թագաւորաց եւ յիշխանաց ի Քրիստոս հաւատացելոց. այլ միայն յԱստուած յուսացաք ըստ խրատու մարգարէին, որ ասէ թէ Ընկեա ի Տէր զհոգս քո. եւ դարձեալ թէ ո յուսայ ի Տէր որպէս ի լեառն Սիոն. յորոյ օգնութեամբ եւ տուչութեամբն եկի ի Կոստանդնուպոլիս եւ ետու գրել ըստ իմում կամաց եւ ախորժանաց զայս տենչալի Կանոնագիրս լիակատար:

Յաղագս որոյ յոտս անկեալ աղաչեմ եւ

իմաստնոցդ, պատահելոցդ սուրբ մասնիս և աստուածատուր բուրաստանիս և օգտելոցդ իսկ ի խաչիս ազատութենէ աստի իմէ, որոյ մասք արժանի անէք յիշման ի մաքուր աղօթս ձեր զծնողն իմ բարերարոյ՝ զհայրն իմ Մելքսեթ և զմայրն իմ զՆուէֆ, զեղբարսն իմ զՍահակ և զՆատայն և զքոյրն իմ Շահկուլն, Մուղայն և զՀեռխիսիմէ և զհօրեղբայրսն իմ զտէր Ներսէս և զԿարապետն և զամենայն եղբայրսս:

Արդ ի սոյն բազմավրդով ժամանակիս կատարեցաւ գիրքս այս ձեռամբ ումեմն Լեհցի Սիմէոնի նոտարի:

Եւ զի այս վերջիշեալ վրէժխնդրութիւնս ի Տեառնէ է յաղագս պէսպէս չար գնացից մերոց, քանզի մեղաք յամենայն գործս մեր և անօրինեցաք ըստ ամենայն գնացից մերոց, և առ հասարակ ամենեքեան խոտորեցաք, յանցեաք և ապստամբեցաք և անզղջացաք ըստ մարգարէին. մանաւանդ որք զաստիճանս ունին զառաջնորդականս, օտարացան միանգամայն ի ճշմարտութենէ և եղեալ ծառայք չար ակերանց, մամոնայի ասեմ և ոսկոյն. որ նմին հետեւին և լեցին լիցուք նոցա ի խրատուէ և յանդիմանութենէ և գրեթէ ամենայն բարի հետեւմունք լեցին յամենեցունց, սիրելով զչարն և ատելով զխաստաթարն, որ չէ հաճոյ Աստուծոյ:

Որով տացէ մեզ Քրիստոս Աստուած զիտել զնա և գնալ ի ճանապարհս նորա և առնել զկամս, զի մի ի սպառ կորիցուք և ի

դժոխս ներքինս մտցուք՝ տանջիլ ընդ դեւսն ի հուրն յաւիտենից. որմէ փրկէ Քրիստոս Աստուած զամենայն հաւատացեալս. եւ նմա փառք յաւիտեանս. ամէն:

Կը յաջորդէ Ագաթիայի պատմական ոտանաւորը, զոր տե՛ս վարը:

Այս կանոնագրէն ապա օրինակ մը հանած է Յակոբ եպիսկոպոս Կուտինացի, 1611ին ի ձեռն Արսլան դպրի, ի Կ. Պոլիս: Յիշատակարանին մէջ կ՚ըսուի.

«Տեսի անդ կանոնս, կատարեալ գիրս Կանոնաց, զոր հաւաքեալ էր զԿանոնս Առաքելոց, Վարդապետաց, Հայրապետաց սրբոց սուրբ վարդապետն Գէորգ Կիլիկեցին, որ է Սսցի. եւ անտի առեալ էր զօրինակն երիցերանեալ քաջ րաբունապետն մեր տէր Գրիգոր վարդապետն: Եւ ի նմանէ առեալ էր զօրինակն աշակերտն նորա տէր Ագաթիա Սասնեցի. զի նա բազում ջանիւ խնդրեալ էր բազում տեղիք ժողովեց ի մի վայր. ի վերայ այն կանոնացն առաւել աւելեաց բազում կանոնս ի բազում օրինակաց այնպէս փարթամ եւ հարուստ, որ ոչ գտանէր ազգիս մերում ի մի տուփ ժողովեալ:

Ձեռ. Կուտինայի. հմմտ. Մ. Վ. Աղաւնունի, Բիւզանդիոն, 1897, Թ. 214: Յիշատակարանիս օրինակը ուղարկած է ինձ Բարգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան:

Հայ կանոնագրքի պատմութեան համար կարեւոր են Յակոբ եպիսկոպոսի այս տո-

գերը։ Անկէ կը տեսնուի թէ Ազարիայի Կանոնագրոց հիմ ծառայած է՝

1. Գէորգ Լամբրոնացւոյ օրինակը, որ հաւանօրէն նոյն էր յէտկանս Վիեննայի Թ. 810 ձեռագրին հետ։

2. Գրիգոր Կեսարացի զայն ճոխացուցած է նոր յաւելուածներով, կամ ինչպէս Ազարիա կը վկայէ «նա ի բազում գրեանց եւ ի բազում տեղեաց ժողովեալ էր ի մի» այլ եւ այլ հատուածներ եւ զանոնք մուծած Գէորգ Լամբրոնացւոյ օրինակին մէջ։ Թէ յորո՞ւմ կը կայանային Կեսարացւոյ օրինակին առաւելութիւնները, այս մասին ակնարկութիւն չ'ըներ Ազարիա։ Ինձ կը թուի թէ Կեսարացւոյ յաւելուածներն են Բ. 41—44, 49, 57, 62—70 եւ 71—72 յօդուածները, ինչպէս նաեւ Ա. 1—2, այն է Մխիթար Գօշի Դատաստանագիրքն եւ Ասորա-Հռոմէական Օրինագիրքը իր յաւելուածոյ մասերով. իրենն է նաեւ կանոններու ժամանակագրական դասաւորութիւնը։ Կեսարացւոյ այս խմբագրութիւնը, որ Կանոնագրոց Բ. խումբը կը կազմէ, ԺԷ. եւ ԺԸ. դարերուն յաճախաթիւ օրինակներով բազմացուեցաւ։ Այս խումբին կը վերաբերին ի մէջ այլոց՝ Վիեննայի Թ. 256, 579 եւ 581 կանոնագիրքները։

3. Ազարիա Սասնեցի կ'օրինակէ Կեսարացւոյ խմբագրութիւնն «եւ ես ջանացի, կ'ըսէ, այլ եւս յաւելուլ եւ հաստատացուցանել, զի մի ինչ պակաս գտցի»։ Ազարիա իր յաւելուածներն ամփոփած է Ձեռագրին Գ.

բաժնին մէջ. այսպէս ենթադրել կու տան էր խօսքերը. «Եւ ժողովեցի բազում բանս եւ զանազան կանոնս ե՛ւ առանձնական ե՛ւ հասարակ ժողովոց՝ ի մերոց եւ օտարասեռն ազանց բազում աշխատութեամբ»: Ակնարկուած «օտարասեռն ազանց» կանոններն են առանց տարակուսի Ս. Օգոստինոսի կանոնք (Գ. 7—8):

Ազարիայի Կանոնագիրքը տարածում չգտաւ. որչափ ինձ ծանօթ է՝ անկէ օրինակ մը միայն հանուած է, եւ այն Յակոբ Կուտինացի եպիսկոպոսի համար, ինչպէս յիշեցինք վերագոյն:

## ԱԶԱՐԻԱՅԻ ՍԱՍՆԵՑԻՈՅ

ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ՀԱՐՈՒԱԾՈՅ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԱՒԱՌԱՅՆ
ԵՒ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ Ի ՁԵՌԱՑ ՃԵԼԱԼԵԱՆՑ

Արդ Հայկազնեան մեծ տօմարի
Հազար յիսուն ութերորդի.
Արքայութեան Տաճկաց ազգի
ԺԴ. ամն սուլթան Ահմատի:
Ի ժամանակըն վերջացեալ,
երկիրս անթիւ չարեօք լըցեալ.
Տէրունականն բան կատարեալ,
զոր կանխագոյն մեզ ծանուցեալ:
Ազգ ի վերայ ազգի շարժեալ,
միմեանց երկրի աւեր ածեալ:
Եւ թագաւորք յոյժ չարացեալ,
միմեանց երդմանց դաշըն սըտեալ:

Դատք 'ւ խրատունք նոցմէ բարձեալ,
  ի դատաստանս կաշառս առեալ:
Զանպարտ զարդարսն եղեն խոտեալ,
  եւ զըռնահակսն յառաջ ածեալ:
Եւ փաչայից սանձախ տրուեալ,
  յորմէ խընդմամբ եղեն գնացեալ:
Եւ յետ սակաւ աւուրց անցեալ,
  կըրկին զայն տեղն այլոց տրուեալ:
Եւ նա գընացեալ զնա հալածեալ,
  եւ ի Թախտէն ըզնա հանեալ:
Իսկ նա եղեւ յոյժ տատանեալ,
  յամենեցունց անարգ Թըւեալ:
Վասն այն եղեւ ապըստամբեալ,
  յիւրմէ մեծէն զըլուխ քարշեալ:
Զզօրս բազումս առ ինքն կուտեալ,
  եւ անձնիշխան զինքն արարեալ:
Եւ զայն համբաւ արքայն լըւեալ,
  զօրըս բազումս առ նա յըղեալ:
Իսկ նա զամէնըն կոտորեալ,
  եւ յարքայէն ոչ երկուցեալ:
Այլ եւ յաճախ նա զօրացեալ,
  եւ իւր հեծելոյն զօրացուցեալ.
Զաւար պարգեւս նոցա տրուեալ,
  եւ զմեծութեան փառս խոստացեալ:
Վասն այն եղեն յոյժ զօրացեալ,
  որ ճէլալիք են անուանեալ:
Զգիւղ եւ զքաղաքըս աւերեալ,
  զառս եւ զկանայս գերի առեալ.

Խորագիր չունի Ձեռագիրը:
20 տուեալ: — 24 Թուեալ: — 29 լուեալ:

Զորքս եւ զայրիս ոչ խընայեալ,
զհարուստ, զաղքատ սրոյ անցուցեալ,
Զծեր եւ զտղայ ոչ ողորմեալ,
զկուրեանց զըրաստ եւ զինչս առեալ:
Եւ որք այսպէս անողորմ լեալ,
անագորոյն սիրտ քարացեալ:
Նոցա մեծին պատիւ տըւեալ,
հազարապետ զնոսա կարգեալ:
Նաեւ զիւան մեծ արարեալ,
ամենեցուն պատուէր տըւեալ․
Եղբա՛րք, պա՛րտ է մեզ քաջանալ,
մինչեւ ի մահ պատերազմեալ:
Յայնժամ զօրացն ի մի եկեալ,
առ իւր իշխան զայս ասացեալ․
Մի՛ երկընչիր զըլուխ մեր լեալ,
մեք քո ծառայք հընազանդեալ․
Զոր ինչ կամիս, եմք պատրաստեալ,
երթալ ի կռիւս պատերազմ տալ․
Թէեւ ի մէնջ մին մընացեալ,
զքեզ ի ձեռաց ոչ եմք թողեալ:
Այսպէս իշխանըն հաստատեալ,
ըզզօրս բազումըս ժողովեալ․
Հազարապետ նոցա եղեալ,
որ Եազըճի էր յորջորջեալ․
Ի Սեւերակն եղեւ սընեալ,
այլ եւ անդէն զինաւորեալ:
Սա ձեւալոց սկիզբըն եղեալ,
եւ աշխարհի աւեր ածեալ:

47 տուեալ: — 50 տուեալ:

Անտի յառաջ յՈւրփա դիմեալ,
քաղաքն հազար զօրօք հեծեալ.
Եւ ըզքաղաքըն պաշարեալ,
ամիսս երկու շրջապատեալ:
Եւ յետ աւուրց ի նա մտեալ,
եւ ըզգերեալքն անդէն առեալ:
Զիւր մեծամեծսըն գըլխատեալ,
եւ ի նոցա տեղըն նըստեալ:
Եւ ըզքաղաքըն աւար առեալ,
զամենեսեանըն կողոպտեալ:
Նաեւ զօրացըն իւր ցըրուեալ,
զերկրաւն ամէն շուրջ տարածեալ.
Զամենեսեան զո՛ եւ գտեալ,
ի չարչարանս, ի մահ մատնեալ:
Զբոլոր զերկիրըն աւերեալ,
բնաջինջ զամէնըն արարեալ:
Զինչ Թագաւորըն ծանուցեալ,
յորմէ եղեւ յոյժ բարկացեալ.
Յայնժամ զփաշայըն մեծ հանեալ,
Հասան փաշայ էր անուանեալ:
Անթիւ զօրօք յուղաւորեալ,
մինչեւ յԱմիթ փութով հասեալ.
Զօրաժողով անդ արարեալ,
բազում իշխանս ժերարերեալ:
Նաեւ զօրացըն թիւ ածեալ,
երկու հարիւր հազար եղեալ:
Մեծամեծ թօփ յԱմթայ հանեալ,
հարիւր զամէշ ի նա լծեալ:

95 Համթայ:

Ելեալ ի դէպ յՈւրֆա դիմեալ,
եւ զՆազըճին ձեռբակալեալ.
Թօփով զբերդերն ի փուլ առեալ,
եւ ըզպարիսպըն քայքայեալ:
Պատերազմունս բազումս տըւեալ,
յերկու կողմանց դիմամարտեալ.
Բայց Ճէլալուն վընաս չեղեալ,
ոչ ի բերդէն ի դուրս հանեալ:
Սարտարն եղեւ ի յետ դարձեալ,
եւ ի յԱմիթ ձմեռնացեալ:
Եւ Նազըճին անդէն կացեալ,
եւ ուր պիտէր՝ անդ աւերեալ:
Սարտարն յԱմթայ ըզտունն հանեալ,
զկին եւ զխազնայ եւ զինչ որ լեալ,
Ի քաղաքն Թոխաթ յղեալ,
եւ ինքն դարձեալ զօրս ժողովեալ:
Եւ Նազըճին դարունն ելեալ,
եւ ի Սեւաստ դիմաւորեալ.
Եւ ըզքաղաքն կոխեալ առեալ,
բազում աւարըս ժողովեալ.
Զբոլոր երկիրն գերեցուցեալ
զինչս եւ զապրանս յափըշտակեալ:
Վասն այն սաստիկ մեծ սով եղեալ,
եւ հաց ուրեք չեղեւ գըտեալ.
Զի լիտր մի հաց տասն ոսկի լեալ,
եւ զայն ոչ ոք եղեւ գըտեալ.
Քանզի արտերն ամէն այրեալ,
եւ զհասկ նոցա հետ իւր տարեալ:

97 յՈւրֆայ: — 116 բազումս: — 117 գերեցեալ:

Ցետոյ Սարատարն յԱմթայ ելեալ,
եւ Եազրճուն վերայ դիմեալ.
Այպատտանու դաշտին հասեալ,
անդէն զբանակին հաստատեալ:
Եւ Եազրճին անդէն հասեալ,
դէմ յանդիման ճակատ եդեալ:
Պատերազմի պատրաստ եղեալ,
եւ ի յիրեարս մարտուցեալ:
Եւ Եազրճին փախուստ առեալ,
դէպ ի Ճանիկ դիմաւորեալ:
Եւ Սարատարին անդէն ելեալ,
եւ ի Թոխաթ ձմեռնացեալ:
Զօրագլուխ մի մեծ հանեալ,
եւ Եազրճուն վերայ յղեալ.
Իսկ Եազրճին զնա կալեալ,
եւ զօրն ամէնըն կոտորեալ:
Զօրագլուխ որ էր կալեալ,
Օսման փաշայ էր անուանեալ.
Զնա պարգեւօք եղեւ թողեալ,
թէ ես ձենէ չեմ երկուցեալ:
Բայց յետ երկուց ամսոց անցեալ,
պիղծ Եազրճին այն սատակեալ:
Ունէր եղբայր մի չար յոյժ լեալ,
որ Հասան պէկ էր կոչեցեալ.
Նա ի տեղին նորա նստեալ,
որում ամէն զօրքն հաւանեալ:
Իսկ Սարատարին տունն որ ելեալ,
եւ ի Թոխաթ դիմաւորեալ,

149 ի տեղն:

Հասան պէկին զայն իմացեալ,
յոյժ խընդալով զառաջն առեալ·
Ձկին եւ գլխագնան ձեռբակալեալ,
եւ զօրս ամէնըն կոտորեալ·
Զանթիւ բարխան աւար առեալ,
եւ յայնմանէ փարթամացեալ:
Ձի տասն հազար ջորի բարձեալ,
անթիւ դըրամս եւ ուղտ լըծեալ·
Ակն եւ ջուհար անգին եղեալ,
որ չէ ոք մարդ այնպէս տեսեալ:
Եւ զանազան չինուածս զուգեալ,
արքայութիւն զը՛ժողք կազմեալ·
Ցըստակ ոսկւոյ պատկերս հանեալ,
զըոլոր ակամբ ընդելուզեալ:
Իսկ ճէլալոցըն զայն տեսեալ,
ուրախութեամբ զըւարճացեալ·
Բազում մասունս կոտրատեալ,
եւ յիւրեանց մէջըն բաժանեալ:
Ձկինն բազում աւուրս պահեալ,
պըղծեալ ըզնա եւ անարգեալ·
Ամօթալի յետ դարձուցեալ,
զի այր նորա այնու խոցեալ:
Եւ նա այնպէս խայտառակեալ,
առ այրըն իւր Թոխաթ հասեալ:
Հասան փաշայն իբրեւ տեսեալ,
երեսին գոյնն այլափոխեալ:
Իսկ Հասան պէկն զարունն ելեալ,
Հասան փաշին վըրայ եկեալ·
Ոչ թէ բազում զօրօք դիմեալ,
միայն հազար արամբ գնացեալ:

Յորժամ եղեւ Թոխաթ մերձեալ,
եւ մեծ Սէրտարըն զայն լըւեալ,
Անթիւ զօրս նա ժողովեալ,
յիսուն հազար արըս կազմեալ:
Իսկ Հասան պէկն կեղծաւորեալ,
եւ ըզՍէրտարըն նենգիւ խաբեալ.
Թէ ես չեկի պատերազմել,
կամիմ հետ քեզ միաբանել:
Եւ նա ի բան նորա պատրեալ,
եղեւ անհոգ ուրախացեալ:
Զհեծեալ այար անդըր թողեալ,
ըզՀասան պէկն ի միտ չածեալ:
Յանկարծակի փողըն գոչեալ,
զօրք ճէլալուն պատրաստ գըտեալ.
Փուլք ի փուլաց ի ներս մըտեալ,
ըզմեծ Սէրտարըն փախուցեալ:
Ըստ Սաղմոսին բանըն լըցեալ,
Թէ մին զհազարըն հալածեալ:
Զոր Հասան պէկն ըզհետ մըտեալ,
Հասան փաշան բերդըն մըտեալ:
Իսկ ճէլալեաց զօրըս գըտեալ,
զամենեսեան ընդ սուր անցեալ:
Զտուն եւ զտեղ քաղքին առեալ,
զինչս եւ զբարիսըն ժողովեալ:
Յաւուր միում Փաշայն ելեալ,
ընդ պատուհանըն նայեցեալ.
Իսկ Թըշնամեաց ըզնա տեսեալ,
հարեալ ըզնոյն եւ սատակեալ:
Եւ Հասան պէկն զայն իմացեալ,
զամէն քաղաքն ի հուր այրեալ.

Զմարդիկ նորա բռնաւ ջրնջեալ,
 երիս ամիսս աւեր ածեալ:
Ի յԱմասիա անտի դիմեալ,
 զբոլոր քաղաք շրջապատեալ,
Վաթսուն հազար ոսկի առեալ,
 ապա զնոցայն զանց արարեալ:
Եւ Թոխաթու չարիքն որ լեալ,
 այլ եւ գայլոցն որ է գործեալ.
Ոչ թէ այս է որ եմ գրեալ,
 զի հազարէն մին չեմ յիշեալ:
Եւ Հասան պէկն անտի ելեալ,
 եւ յԸստամպօլ դիմաւորեալ.
Եւ յինչ երկիր որ պատահեալ,
 քար վրայ քարի չեղեւ թողեալ:
Զինչ ի Պուռսայ եղեւ հասեալ,
 Թագաւորին հնազանդեալ:
Եւ նա սիրով զնա ընկալեալ,
 զՏըմըրշխու սանճախն տուեալ:
Եւ յետ երկու տարու անցեալ,
 Թագաւորին զնա ըսպանեալ.
Եւ զօրք նորա ամէն ցրուեալ,
 յայս կոյս ծովուն եղեն անցեալ:
 . . . . . . . . . . . . . . .
 ի Հայաստան երկիրս լըցեալ:
Իսկ մեծամեծքն սոցա լեալ,
 հարիւրապետ ինքեանց կարգեալ.
Տարըն մասունըս բաժանեալ,
 որ եւ յատուկ անուանս կոչեալ:

215 ի (յԱմասիա) չիք: — 226 վերայ:

Նախ առաջին Թաւուլն եղեալ,
որ զՇապըհին եղեւ անցեալ·
Այնչափ չարիք նա արարեալ,
որ ընդ գըրով չկարեմ ձեզ տալ:
Ապա Ղալանտար Օղլին լեալ,
յԱնկիւրիոյ եղեւ ելեալ·
Նա շատ չարիք երկրի ածեալ,
բազում գաւառս շըրջապատեալ·
Ապա ընդ Պարսս միաբանեալ,
զազգըն Տաճկաց սըրոյ տըւեալ:
Մինչեւ ցայսօր է նա մնացեալ,
բազումք յահէ նորա սարսեալ:
Զկնի նորա Խարախաչն լեալ,
եւ սա բազում չարիս գործեալ·
Ի Մելտինէ յԱմիթ եկեալ,
Նասըր փաշայն զնա բռնանեալ:
Ապա Շապանըն պիղծ ելեալ,
յոլով զողիս նա խողխողեալ·
Ապա յԱմթայ եղեւ հալածեալ,
եւ ի Խարբերդ կործան անկեալ:
Հինգերորդին էր Զիլիֆդար,
անթիւ զօրօք էր նա լըցեալ·
Եւ մինչ զերկիրն աւեր ածեալ,
ի Սարտարէ մի բռնանեալ:
Վեցերորդին Փիլի կոչեալ,
արիւնարբու չուն երեւեալ·
Զղայսար քաղաք նա՛ աւերեալ,
բայց ուրանօր նա՛ սատակեալ:

251 մինչեւ զՄծրին:

Եօթներորդն էր Եօլա–սըղմազ,
խիստ անողորմ զինչ զՅուղաս.
Եւ սա նեղեաց զքրիստոնեայս,
բայց կորեաւ զինչ զՀերովդիաս:
Ութերորդին Շէյթան–չաքուջ,
որ չատ արար զուլում եւ կուճ.
Սա աւերեաց քաղաք եւ պուրճ,
յետոյ ըսպանեաւ ի յառիւծուց:
Իններորդն էր Եօլա–կըրմազ,
զինչ չար արար քան ըզԴեւղաս.
Զբազմաց արիւնս վաթեց զինչ սազ,
ապա կորեաւ ի նոյն յորսայս:
Ապա Քափանաք–օղլին լեալ,
որ Թուրքմանէն յառաջ եկեալ.
Զկեղու երկիրն նա աւերեալ,
ապա զնորայն զըլուխն հատեալ:
Եւ արտաքոյ քան զսոսա լեալ,
վեց ճէլալիք այլ եւս յայտնեալ.
Նախ առաջին էր Ապուսէֆ,
որ զՄնուս քանդեց առանց նըրէֆ:
Այնքան սա խեղճ բաներ արաւ,
մինչ զի ճակատն եղջիւր բուսաւ:
Եւ յԱրզըրում նա սատակեալ,
զի յԱստուծոյ էր ատեցեալ:
Պիղծ անիծած մարմինն առեալ,
ի կոռերուն մէջըն ձըգեալ.
Բայց նա ի չան կերպըն մըտեալ,
եւ ի կոռէն ի դուրս փախեալ.
Ի տունս բազումս նա գընացեալ,
բազում վընաս եւ չար գործեալ.

Քանզի յոգունց նա երեւեալ,
որոց տեսեալ եւ հիացեալ.
Ի գիշերի մենաշրջեալ,
զոր ի բազմաց եղեւ կալեալ.
Տարեալ ի սիւն ընդնա կապեալ,
այգուն տեսին դարձեալ մեռեալ:
Ամէն գիշեր նա շուն եղեալ,
եւ ի տըներն ի շուրջ եկեալ.
Երբ առաւօտըն լուսացեալ,
նա ի կօոն անյայտ եղեալ:
Եւ երկրորդին Իպրիմ պէկ լեալ,
որ ի Ղուլփայ էր նա ելեալ.
Երեք հազար զարըս կալեալ,
եւ զամըռ վեց զՄուշ աւերեալ:
Եւ զայլ երկիրս ապատակեալ,
ի տատանման զնոսա պահեալ.
Ազգի ազգի չարիս ածեալ,
զինչըս նոցա յափըշտակեալ.
Զըրնակիչսըն փախուցեալ,
զապրանք վանացն առ ինքն առեալ:
Իշխան տեղւոյն որ էր տիրեալ,
Շարուֆ անուն էր կոչեցեալ.
Երեք անգամ հեծեալ բերեալ,
եւ ընդ նմա պատերազմեալ.
Եւ ոչ երբեք զնա փախուցեալ,
այլ նա զիշխանն յաղթահարեալ:
Եւ յայլ երկիր եղեւ գնացեալ,
մինչ զԵրեւան Թալան առեալ.
Եւ յաղթութեամբ անտի դարձեալ,
ի Մըշու դաշտն եկեալ նրստեալ:

Զարս անողորմս ի վանս յղեալ,
եւ զառաջնորդն առ նա բերեալ·
Հինգ հազար մամ նորմէ խնդրեալ,
մեծամեծ ու գեղեցիկ լեալ·
Իսկ նա կարող չէր զայնըս տալ,
վասն այն սաստիկ զնա չարչարեալ·
Եւ նա անկեալ երեսս ի վայր,
զսուրբ Կարապետն յիշէր եւ լայր·
Սուրբ Կարապետ փութով հասեալ,
պաղատանաց նորա լսեալ·
Նոյն գիշերին հրաշս ցուցեալ,
չանաստակ այն պիղծըն եղեալ:
Առաւօտուն երբ լուսացեալ,
տեսին զԻպրիմըն գըլխատեալ·
Յայնժամ զօրքն յոյժ երկուցեալ,
եւ զառաջնորդն ի բաց թողեալ:
Յորժամ եղեւ չարըն բարձեալ,
երկիրն ամէն ուրախացեալ·
Եւ զօրքըն իւր եղեն ցրուեալ,
յիւրաքանչիւր տեղիս երթեալ:
Եւ երրորդին Միր Մահմատ լեալ,
ի Մերտինայ էր նա եկեալ·
Որ եւ զՄերտին եւ ըզՄըծըրին,
մինչեւ յԱմիթ նա աւերեալ:
Յետոյ եւ զնա են ըմբռնեալ,
յԱմիթ քաղաքն ըզնա բերեալ·
Զմորթն յիւրմէ իբր զտիկ հանեալ,
եւ զպիղծ մարմինն հրով այրեալ:
Եւ չորրորդն Քոսա Սաֆար:
ի յԱնթափու եղեւ եկեալ,

Քըսան հազար զօրըս կազմեաւ,
եւ զամըս եօթն զերկիրս գերեաւ·
Ի յԱնթափու մինչ Արզըրում,
անթիւ բազում արար զուլում·
Յետոյ եղեւ հընազանդեաւ,
զԱրզըրումու սանձախն առեաւ:
Յորժամ Ճըղալ–օղլին եկեաւ,
եւ ընդ Շահին պատերազմեաւ,
Սա ընդ նըմա եղեւ գնացեաւ,
Պարսից զօրացըն սատակեաւ·
Զօրըս անթիւ նա կոտորեաւ,
եւ այլք զերծեաւ ի յետ փախեաւ·
Բանակն ամէն Շահին եղեաւ,
եւ աւարաւ բազում լըցեաւ:
Ճըղալ–օղլին մազապուրծ լեաւ,
հազիւ զերծեաւ յԱմիթ անկեաւ·
Անդ ամօթոյն զինքն ըսպանեաւ,
փոխան զորդին իւր կացուցեաւ:
Հինգերորդին Միր Ազգին լեաւ,
ի Ճիզիրու երկրէն ելեաւ·
Միր Շարաֆին եղբայր մի լեաւ,
որ յեղբօրէն ապըստամբեաւ·
Անթիւ զօրօք զօրապնդեաւ,
եւ աշխարհի աւեր ածեաւ:
Նախ զՀասանքէֆ նա աւերեաւ,
եւ զՅամետին յոտն կոխեաւ:
ԶՏօրայ երկիրըն թալանեաւ,
մինչեւ Մծբին բընաջինջ լեաւ:
Եւ ըզՃիզիր յոյժ աւերեաւ,
մինչ ի Պօհտան նա խարխարեաւ·

Եւ ի Սղերթ քաղաք մտեալ,
չուրջանակի զնա պաշարեալ․
Զիշխանս նորա անդէն սպանեալ,
եւ ըզքաղաքն առեալ նըստեալ:
Եւ ըզԿուրտլան յոյժ աւերեալ,
եւ զՎրտըկան գերի տարեալ․
Եւ ի Քըփրայ նորա սկըսեալ,
մինչ ի Թըկալըն թալանեալ:
Եւ ըզՄատան նա կողոպտեալ,
մինչ ի Շիրվան աւեր ածեալ․
Եւ ի Տէրզին չէն չըթողեալ,
զԱզու քաղաքն ահացուցեալ:
Եւ Միր Շարաֆըն զայս լըւեալ,
յոյժ տըրտմութեամբ եղեւ լըցեալ․
Շատ ընդ նըմա պատերազմեալ,
երբեք չեղեւ ըզնա յաղթեալ:
Ապա ըզնա առ ինքն կոչեալ,
եւ ընդ նըմա սէր հաստատեալ․
Յորժամ եղեւն առանձնացեալ,
Միր Շարաֆին ըզնա խեխտեալ․
Նաեւ ըզզօրսըն կոտորեալ,
որպէս փոշի սփիւռ եղեալ:
Եւ Միր Ազզին այսպէս կորեալ,
եւ չար մահուամբ յերկրէ բարձեալ․
Զառհաւատչեայն ատէն առեալ,
զյաւիտենին անդ է պահեալ․
Եւ որք սըմին նըման եղեալ,
սոյն սարասիւ բընաջնջեալ:
Իսկ վեցերորդ Քուրտ Ալին լեալ,
ի Խառանու երկրէն ելեալ․

Ուր եւ կային ապըստամբեալ,
մեծաւ սիրով առ ինքն կոչեալ:
Այսպէս անթիւ զօրըս կազմեալ,
արիւնարբուք ամէնն լեալ.
Կրկին անգամ յՈւրֆայ եկեալ,
զամենեսեանըն կողոպտեալ:
Ի Խառանու մինչ ի Մուսուլ,
եւ ըզՇահրազուշ աւերեալ:
Ամթայ փաշայն զօրս գումարեալ,
եկեալ ընդ նմա պատերազմեալ.
Եւ յաղթել զնա ոչ կարացեալ,
այլ ինքն նկուն ի յետ դարձեալ:
Նա զօրացեալ եւ քաջացեալ,
եւ ի Պաղտատն դիմաւորեալ.
Բազում աւուրս զնա պաշարեալ,
եւ ըզշըրջակայն կողոպտեալ:
Բայց ըզքաղաքն չեղեւ առեալ,
զի էր անթիւ զօրօք լըցեալ:
Այլ յետ ի Միջագետս դարձեալ,
եւ զԱսորիս աւեր ածեալ:
Դեռ եւս ինչ գործ նորա չարեալ,
զի ի միջոյ եղեւ բարձեալ:
Եւ այլ բազում վատ մարդ ելեալ,
եւ աւերիչ աշխարհի լեալ.
Զի ի միմեանց ելով ուսեալ,
յայսպիսի չար գործս սովորեալ:
Այս ամենայն չարս որ գըրեալ,
ի մեր մեղացըն գործեցեալ.

427 յԱմթայ:

Հայաստանու հիմըն քակեալ,
մինչեւ ի սպառ զնա կործանեալ:
Հազար քառսուն թուին սկըսեալ
մինչ ի վաթսունըն ժամանեալ·
Եւս առաւել չարիք ցուցեալ,
զաշխարհս Հայոց բընաւ ջընջեալ:
Զայս ամենայն Շահըն լըւեալ,
ուրախութեամբ բազում լըցեալ·
Վըրէժխընդիր նախնեացն եղեալ,
եւ Օսմանցուն վերայ շարժեալ:
Երեքհարիւր հազար զօրօք,
ի Դաւրիժու վերայ եկեալ,
Փութանակի զքաղաքն առեալ,
ուստի Ճղալ-օղլին փախեալ:
Յետոյ եւ զՏեմիր ղաբին առեալ,
որ Աղեքսանդրըն էր դուռն եղեալ·
Եւ յետ նորա ըզՇամախի,
յետոյ զԹիֆլիս եւ զՏումանի:
Այլ եւ զԿէչաուի առեալ,
որ այժմ Կէնճայ է անուանեալ:
Այլ եւ բազում քաղաքս խըլեալ,
զմարդիկ նմա հնազանդեալ:
Ութըն ամիս խսար արարեալ,
սովալըլուկ զնոսա նեղեալ:
Անթիւ հեծեալըս կոտորեալ,
ապա զքաղաքըն իւր առեալ:
Նաեւ զքաղաքն Վաղարշ առեալ,
որ Երեւան էր անուանեալ·
Եօթըն ամիս ըզնա պատեալ,
ապա եղեւ ի նա մըտեալ:

Ապա զՆախչուան առեալ,
եւ ըզՋուղայ աւեր ածեալ.
զՍալմաստ, նաեւ զԱգրակ,
մինչեւ ի Վան ձերբակալեալ:
Նաեւ ի Ղարս նա էր հասեալ,
մինչ յԱրզրում եղեւ տիրեալ:
Զայսչափ երկիրս որ Շահն առեալ,
ամէնն Հայոց էր երկիր լեալ:
Բայց զայն չարիքն որ Հայոց լեալ,
որ մի ի գիրըս չեմ յիշեալ.
Որ ոչ երբեք է այս եղեալ,
ի յԱզգամայ մինչ մեզ հասեալ:
Եւ զայս ամէն երկիրս որ առ,
զիւր բընակիչս ամէն գերեալ.
Մինչ յիւր երկիրն զնոսա վարեալ,
այլ ազատ զնոսա թողեալ:
Զազգըս Հայոց նա մեծարեալ,
գիւղս եւ քաղաքս նոցա տըւեալ.
Եկեղեցի նոցա շինեալ,
բընակութիւն անդ արարեալ:
Բայց Հայաստան այնպէս ջընջեալ,
անշէն բընաւըն մընացեալ.
Ի Թավրիժայ մինչ ի Ստամպօլ,
քար վըայ քարի ոչ մընացեալ.
Այլ ամենայնըն փախուցեալ,
երկրոց երկիր ափեալ ցրուեալ.
Ստամպօլ քաղաքըն յոյժ լըցեալ,
անտի մինչ Լեհ են տարածեալ:

480 ձեռբակալեալ:

Ապա Խանդքարն խորհուրդ առեալ,
 թէ ո՞ր երկիրս է աւերեալ.
Ապա սաստիկ հրաման հանեալ,
 իւրաքանչիւր իւր տեղն երթալ:
Բայց զի՞ տեսեմ այս խեղճ բանի,
 զոր ես աչօք իմովք տեսի.
Որ Հայոց ազգըն քըշեցին,
 յայս բարեկից երկրէս հանին:
Զամանս ի տանեացն դուրս ձըգէին,
 զայլս ի հերացն քարշ ածէին.
Զկէսն փայտիւ հարկանէին,
 զոմանց ապրանսն կողոպտէին.
Հարք ի յորդւոց բաժանէին,
 զմարս ի դստերց զատանէին.
Զհարսն ըզփեսայ ի միմեանց քակէին,
 լալով զնոսա արտաքսէին:
Այս ամենայն մեղքն է արել,
 որ անօրէնքն են մեզ տըրել.
Մեր թագաւորքն են խափանել,
 զմեզ ի յաշխարհս անտէր թողել:
Զի թէ Քրիստոս կամի փրկել,
 յանօրինաց մեզ ազատել.
Թէպէտ մարմնովս ատէն տանջել,
 անդէն հոգւով մխիթարել:
Արդ աղաչեմ չմեղադրել,
 երկարութեան բանիս ներել,
Յայսքան բանէս համել տանել,
 եւ զանարժանս բերան մ՚յիշել:

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

(241—244 տողերուն համար:)

*Սրապիոն սարկաւագ Բաբերթացի* 1608*ին կ'օրինակէ «ի քաղաքն Պոնտոս, որ է Տրապիզոն», ի խնդրոյ Մինաս քաջ բաբունապետի, Գրիգոր Տաթեւացւոյ Յովհաննու Աւետարանին Մեկնութիւնը: Յիշատակարանին մէջ (էջմ.* 1354, *թղ.* 199*բ) խօսելով ժամանակակից քաղաքական անցքերու մասին կը գրէ տողերս, որոնք կը հային* Թաւուլի *ապստամբութիւններուն (տե՛ս էջ* 297, *տ.* 241—244).

*«Որ եւ ազգմանէ չարին բնակարանն բանսարկուին մեծ գազանն եւ չար վիշապն չունն կատաղի եւ երկրորդ Ըռաբսակն պիղծն Ալի փաշան, Ճան Փօլատին որդին, որ ժողովեաց բազում զօրս ԿՌ հետեւակ սակման. եւ քան զայս աւելի եւ ոչ պակաս զինուորս ձիաւոր եւ տիրեաց բռնութեամբ երկրին Տիբերայ որ Հալապ ասի: Եւ բազում քաղաքաց եւ գիւղօրէից աւեր էած, զոր թէ գրէաք մի ըստ միոջէ չէ բաւական տանել թխթոյ: Որ եւ ի սոյն չարէն ապստամբեալն չարն եւ ժանդն տասնապատիկ քան զսա պիղծ Թաւուլն եւ եկեալ ԺՌ հեծելօք ի յերկիրն Կիլիկեցոց եւ առեալ զԱտանայ, զԹարսիս, զՍիս, զՂարս եւ բազում աւեր էած եւ ԵՃ արու մատաղ տղայք գերի տարաւ ի Ատանոյ: Եւ անդի դիմեալ ի վրայ երկրին Մարաշոյ աւերելով եւ եկեալ հասաւ ի Սեփաստիայ եւ անդի եկեալ ի Եկեղեաց գաւառն եւ բազում աւեր էած երկիցս եւ երիցս որ եւ սովորեալ*

էր պիղծ արեան արբուն... ։ Եւ այլ բազում աւեր էած աշխարհի մինչեւ ի մեծ ծովեզերն Եփեսոս, Իզմոլին ։ Եւ անտի դարձեալ եկն ի Կոնիոն, ի Գաղատիա, ի Կաստամոնի, եւ անտի ի մեծն Պոնտոս Տրապէզս եւ այրեաց զքաղաքս զայս եւ գնաց կրկին ի Երզնկան ։ Զոր Տէր Աստուած մեր ոչ կամեցաւ զկորուստ մարդկան, այլ ետուր զօրութիւն ալեւոր Մուրատ փաշային, որ եկեալ բազում զօրօք էառ զմեծ զոստղն զՃան Փաւլատի որդին. եւ անխնայ կոտորեաց. եւ զինքն փախըստական արար. եւ ամենայն տունն բնաջինջ արար ։ Եւ այլ բազում կոտորս արար ի յերկիրն Տիբերայ ։ Եւ անտի եկեալ զխմեաց ի վերայ չարին, որ Թաւուլ ասէին. եւ եկեալ եհաս ի մեծ դաշտն Տարօնոյ եւ կոտորեաց զնոսա անխնայաբար. փախուց զսակաւս մինչեւ ի Ղզըլպաշն ։ Եւ ինքն քաջ ծերն որ Աստուած զօրացուց, նստաւ ի մեծ դաշտն Բաբերդու եւ զօրս արձակեաց այսր եւ անդր. եւ զբազումս զտեալ ի ապստամբ պարոնացն եւ փաշաներուն՝ բերեալ սուր եդ ի վրայ, եսպան. եւ զոր զտանէին՝ բերէին եւ սպանանէին ։ Եւ արար մեծ խաղաղութիւն ի վրայ երկրի ։ Եւ դարձաւ խաղաղութեամբ ի Ստամպօլ առ Թագաւորն իւր. որ զօրացնօղն Քրիստոս երկար ժամանակ տացէ սուլթան Ահմատին եւ իւր մեծ վազիրին Մուրատ փաշային. ամէն» ։

---

## ԻԱ.

# ԿԱՐԱՊԵՏ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ

Կարապետ վարդապետ Բաղիշեցի, ինչպէս յորջորջումը ցոյց կու տայ, ծնած է Բաղէշ, իբր 1475ին: Հօր անունն էր Ստեփանոս, եւ մօրը՝ Ալամշահ[1]: Կը յիշէ նա ինքնին իւր եղբայրն ոսկերիչ Աստուածատուր, որ «անմեղ նահատակեալ եղեւ ի ձեռն հարամկաց ի յանապատն Մշոյ», եւ եղբօրորդին, նոյնպէս ոսկերիչ՝ Շահղուրաթ[2]:

1496ին կը պատահինք իրեն առաջին անգամ, երբ իբրեւ աբեղայ Մշոյ Առաքելոց վանքին՝ կը կազմէ 1325ին օրինակուած եւ կազմալոյծ եղած Աւետարան մը: Յիշատակարանին մէջ կը գրէ Կարապետ աբեղայ. «ի վերջին դարիս եւ յետնում ժամանակիս... յորում է թվականութիւն մեր ՋԽԵ. առաջնորդք սուրբ ուխտիս Ղազարու վանացս տէր Եղիայ արհիեպիսկոպոս եւ տէր Թորոս արհիեպիսկոպոս եւ տէր Ղազար վարդապետն տեսին զսուրբ Աւետարանս զի յոյժ հնացեալ էր կազմն եւ էր առանց արծաթոյ եւ անտես

---

[1] Տե՛ս վարը էջ 313:
[2] Տե՛ս վարը էջ 313:

եւ անվայելուչ գոլով արտաքուստ ի տեսողացն. վասն որոյ ետուն վերստին կազմել զսա եւ արծաթապատ զարդարել որպէս եւ տեսանէք...: Արդ յիշեցէք ի Քրիստոս զՀաւատարիմ եւ զՀամեստ կանայքս զՁիչաքն եւ զՄուոումչէն, որ սակաւ ինչ արծաթով աւգնական եղեն ի զարդ Աւետարանիս...: Նաեւ... զսուտանուն Կարապետ աբեղայս զԲաղիշեցի՝ զվերջին կազմողս յիշեցէք... (եւ) զՄարգարայ քահանայն (եւ) զծնողսն իւր»[3]:

Կարապետ աբեղայ իւր եղբօր հետ Տարօն եկած էր հաւանօրէն քաղաքական հորգոնի պղտորութեան պատճառաւ. ճիշդ այս տարի Զաքարիա գրիչ, որ յԱւելու վանս յառաջնորդութեան Յակոբ եպիսկոպոսին Աւետարան մը կ՚օրինակէր, «ի դանութեան ազգին Նետողաց Ռուստում բէկին», ժամանակն «դառն եւ չար» կը ներկայացնէր, երբ «ազգն Նետողաց», «բռնացեր են ի վերայ Հայոց ազգիս»[4]:

1502ին գործով մը կ՚իջնայ Կարապետ աբեղայ Միջագետք, Բերդաձոր գիւղը, ուր կ՚օրինակէ Մաշտոց մը: Յիշատակարանին մէջ կ՚արձանագրէ. «Արդ գրեցաւ սուրբ գիրքս որ կոչի Մաշտոց, յերկիրս Միջագետաց ի յաստուածապահ եւ յանուանի գեօղս որ կոչի Բերդձոր եւ անուանի Բէրխաջուկ, ձեռամբ անարժան եւ անպիտան մեղաւոր եւ

[3] Յիշատակարան «Ղլիճ Աւետարանի» Առաքելոց վանաց Մշոյ:

[4] Թորոս Աղբար, Բ., 426:

փծուն գրչի Կարապետ սուտանուն աբեղայի Բաղիշեցոյ, որ պատահմամբ հանդիպեցայ սմա եւ սկսեայ կատարեցի կամաւք եւ աջողութեամբ ամենակալին Աստուծոյ: ...Արդ գրեցաւ սուրբ գիրքս ի թվականիս Հայոց ՋԾԱ, ի դառն եւ յանբարի ժամանակիս, որ յամենայն կողմանց նեղիմք յանաւրինաց»: Կը խնդրէ յիշել «նաեւ գիս զանիմաստ գրիչս զԿարապետ եւ զծնաւղսն իմ զՍտեփաննոս եւ զԱյամշայ. եւ զգովելի եւ զհոչակաւոր եղբայրն իմ զուկերիչ Աստուածատուրն, որ անմեղ նահատակեալ եղեւ ի ձեռն հարամկաց ի յանապատն Մրջոյ եւ թողին սուգ անմխիթար. եւ զեղբօրորդեակն իմ զՇահգուրաթ ոսկերիչն ամենայն արեան մերձաւորաւք»[5]:

1511ին ի Վան Զաքարիա աբեղայ կ'օրինակէ Աւետարան մը: Աւետարանիս սկիզբը գտնուած Մատթէի նկարի տակ կը կարդացուի արձանագրութիւնս. «զԿարապետ Բաղիշեցի յիշեա ի Տէր». յիշատակագրութիւնս մանրանկարչէն է: Հանդիպա՞ծ է Կարապետ Բաղիշեցի այս թուին ի Վան եւ նկարազարդած Զաքարիայի օրինակութիւնը: Բոլորովին տարբեր անձ է Կարապետ աբեղայ ի Վարագ, որմէ է Յիշատակագրութիւնս. «Ի ՋԿԲ թվին ||| (Ե՞ս) Կարապետ սուտանուն աբեղայ եւ սիրական եղբայրն մեր տէր Յոհվանէսն եկաք ի գրանէն Վարագա սուրբ Նշանին եւ եկայք ի ծառայութիւնն տիեզե-

[5] Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 456:

բայլոյս վարդապետին Ղուկասի ի սուրբ Էջմիածին. եւ զԱռաքելոց գիրքս զաս հրամեաց: Եւ Աստուած զինքն խաղաղութեամբ պահէ ընդ երկայն աւուրս. ամէն: Եւ ի հայրապետութեան տեառն Սարգսի որ բազում երախտիս ունի ի վերայ մեր քան զչափն առաւել. արարիչն Աստուած խաղաղական կենաւք պահէ. ամէն»[6]: Այս Վարագեցի Կարապետէն է նաեւ հետեւեալ յիշատակագրութիւնս. «ի Թվականիս Հայոց ի ՋՀ ես Կարապետ սպասաւոր սուրբ ուխտիս Վարագայ եկի ի Բաղէշ քաղաք եւ տեսայ զգիրքս քաղուածու երգոյն Սաղմոսի առ խաւձա Միքայէլին եւ խնդրեցի ի նմանէ» եւն[7]:

Տարբեր անձ է նաեւ Կարապետ Վ. Ջամալ Վարագեցի, որ ծաղկեցաւ ԺԶ. դարու երկրորդ կէսին:

1513ին կ'օրինակէ Կարապետ Բաղիշեցի Սաղմոսարան մը Մշոյ արեւմտեան կողմը, չորս ժամու հեռաւորութեան վրայ կառուցուած Եղրդուտի վանքը[8] եւ կ'աւարտէ նոյն տարւոյն Յունիս 30ին[9]:

1526ին դարձեալ կը գտնենք զինքը Տարօն, Առաքելոց վանքը, ուր Յայսմաւուրք մը կ'օրինակէ ի խնդրոյ Սիոն տանուտիրոջ եւ

---

[6] Էջմ. 2603, 1ա (Ն. Լամբրոնացւոյ Մեկն. Առակաց):

[7] Յ. Թոփճեան, Ցուցակ Դաղեան Խաչիկ վարդապետի հաւաքման, էջ 62:

[8] Սարգիսեան, անդ, էջ 236:

[9] Յիշատակարանս պիտի հրատարակեմ վարը ամբողջութեամբ:

ի վայելումն սպասաւորաց Ս. Առաքելոցն։ Այս ձեռագիրը ապա Մարտիրոս աբեղայ, «որ եւ եմ ես ի գաւառէն Տարօնոյ վարժեալ ի դուռն Ս. Կարապետին», կը ծաղկէ եւ կը գրէ յիշատակարանը, ուր կ'ըսուի, թէ գրուած է բնագիրը «ձեռամբ գրչի Կարապետ կրօնաւորի»։ Կը խնդրուի «յիշել ի Տէր զառաջնորդ սուրբ ուխտին զԹադէոս եպիսկոպոսն եւ զերջանիկ րաբունապետն մեր զԹորոս, զտէր Հայրապետն եւ զայլքն ամենայն, որք օժանդակ եղեն ի ծաղկելն եւ ի կազմելն», եւ մասնաւորապէս «զգծող սորա զտէր Կարապետ Բաղիշեցի, որ բազում աշխատութեամբ գրեաց»[10]։

Տարօնոյ Առաքելոց վանքի աբեղան եւ գրիչը այս թուականէն ետքը մինչեւ 1540 կը լռէ։ Բայց ունինք իրմէ ընդարձակ տաղ մը գրուած 1540 տարւոյն, ուր կը ներկայանէ ինք զինք «Կարապետ Վարդապետ»։ Ասկէ կը տեսնուի թէ Կարապետ աբեղան բարձրացած է վարդապետական աստիճանին։ Նոյն տարւոյն Աստուածատուր աբեղայ կը յայտէ մեզ թէ Կարապետ ձեռնադրուած էր արքեպիսկոպոս եւ կարգուած Առաքելոց վանքին առաջնորդ, ի կենդանութեան ծերունի Թադէոս արքեպիսկոպոսին։ Աստուածատուր աբեղայ ՋՂԹ (1540) թուին կ'օրինակէ Սաղմոսարան մը «ի խնդրոյ բարեմիտ քահանային Դաւթի» (յԱմիդ)։ «Գրեցաւ սա ի մեծ եւ

---

[10] Յայսմաւուրք Առաքելոց վանքի ի Մուշ։

հոչակաւոր եւ յաստուածաբնակ սուրբ ուխտս Ղազարու, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս եւ սուրբ տիրամայր Աստուածածնին եւ սուրբ Գրիգոր Լուսաւորչին, ի հայրապետութեան տեառն Գրիգորի եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Թադէոս արհեպիսկոպոսին եւ տէր Կարապետին․ եւ այլ միաբան եղբարց․․։ Եւ արդ գրեցաւ Բ․ կանոն ի մայրաքաղաքն յԱմիթ ընդ հովանեաւ սուրբ Սարգսի։ Մեծ եւ արհիեպիսկոպոսն Թադէոս․․․ գիս երեր ի վանքս Ղազարի․ ինքն ձեռնարկեաց մեծ գումբեթին եւ ես Նստայ ի գիր Սաղմոսիս․ եւ բազում վիշտս կրեաց․ ողորմութեամբն Աստուծոյ վերստին նորոգեաց զգումբէթն սուրբ Առաքելոցն եւ զայլ բազում խախտեալ տեղիս․․․[11]»։ Այս Թադէոս արքեպիսկոպոս[12] որդէգրած էր զինքը եւ յետ մահուն իր կտակակատարը կարգած։ Կը գրէ Աստուածատուր գրիչ ուրիշ տեղ մը․ «գրեցաւ ի խնդրոյ բազմերջանիկ․․․ տէր Թադէոսին (որդւոյ Շարաֆին եւ Մինա խաթունին)․․․ ի թվին Հայոց ՋՂԶ․․․ յաստուածաբնակ ուխտս Ղազարու, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս եւ Տիրամայր սուրբ Աստուածածնին եւ Գրիգոր սուրբ Լուսաւորչին․․․ յառաջնորդութեան սուրբ ուխտիս արքեպիսկոպո-

---

[11] Սաղմոսարան Տիգրանակերտի Ս․ Սարգիս եկեղեցւոյ․ Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ․, 421—422։

[12] Կը յիշուի արդէն 1521ին իբրեւ առաջնորդ եւ եպիսկոպոս Առաքելոց վանքի․ Հ․ Ն․ Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 326։

սացն տեառն Կարապետի (որ էր որդեգիր եւ կտակակատար տէր Թադէոս արքեպիսկոպոսին) եւ տեառն Սարգսին, տեառն Հայրապետին եւ տեառն Առաքելին եւ այլ միաբան եղբարցն»[13]:

Թէպէտ Աստուածատուր գրիչ չի չեշտեր, թէ Կարապետ արքեպիսկոպոսն եւ առաջնորդն Բաղիշեցին ըլլայ, բայց ամէն պարագայ կը մղէ զմեզ նոյնացնելու Կ. Բաղիշեցին Առաքելոց վանքի համանուն առաջնորդին հետ:

1555ին կը շինէ Առաքելոց վանքի ժամատունը, որուն աջակողմեան միջին սիւնի վրայ կը կարդացուի արձանագրութիւնս[14].

Ի ԹՎԿ. Հ. ՌԴ: ՇԻՆԵՑԱՒ ԺԱՄԱՏՈՒՆՍ ՁԵՌԱՄԲ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏ ԱՐՀԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ՅԻՇԱՏԱԿ ԻՒՐ ԵՒ ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ

Կարապետ Վ. Բաղիշեցի ներկայացու մեզի նախ աբեղայ գրիչ, որ իր գործունէութեան ասպարէզն ունէր Մշոյ Առաքելոց վանքին մէջ. վանքս մտած էր իբրեւ որդեգիր Թադէոս արքեպիսկոպոսի եւ առաջնորդի. եւ անոր կենդանութեան ընտրուած փոխանորդ առաջնորդութեան:

Բացի գրչութեան արուեստէ հմուտ էր անիկա մանրանկարչական արուեստի եւ կազմարարութեան: Իր պատմական յիշատակա-

---

13 Սաղմոսարան ի ձեռագիրս Տարօնոյ:

14 Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 231—232:

րանը, գրուած 1513ին, ցոյց կու տայ, թէ անիկա վարժ էր նաեւ հիւսելու չափական գրութիւններ․ այս պարագան կը դրդէ զմեզ նոյնացնելու զինքը տաղասաց Բաղիշեցի Կարապետին հետ, եւ իրեն վերագրելու այն ամէն տաղերն ու գանձերը, որոնք հասած են մեզի յանուն Կարապետ Բաղիշեցւոյ: Պէտք չէ շփոթել սակայն այս Կարապետ Բաղիշեցին այն Կարապետին հետ, որ թէպէտ հայրենեօք Փարխնդցի էր, բայց սովոր էր կոչել ինք զինքը Բաղիշեցի († 1623): Անշուշտ եղած են Բաղէշէն ուրիշ Կարապետներ ալ, բայց խնդրական կը մնայ, թէ օժտուած ըլլան անոնք ալ տաղաչափելու շնորհքով:

Կը թուեմ այս տեղ Կարապետ Բաղիշեցւոյ ինձ ծանօթ գանձերն ու տաղերը, որոնք կ'երեւցնեն շնորհք արտայայտելու մտքեր եւ զգածումներ եւ գրի առնելու զանոնք հաճելի ոճով, գողտրիկ չէնքով:

1․ Տաղ Արարածոց ասացեալ ի Կարապետէ:

Եկայք Ադամայ որդիք,
  արարածք ամէն միաբան,
Օրհնեմք զարարիչն Աստուած
  որ ստեղծեաց զէակս ամենայն...:

Ձեռագիրք՝ Էջմ․ 33, 131ա (ԺԷ): 527, 148բ (1664): 1428, 178ա (1642․ սկ․ պակաս): 1677, 52բ: Երեւան, Պետ․ Թանգա-

րան, 618, 29բ (1640. պակասաւոր)։ 855, 94ա (ԺԷ. պակասաւոր)։ Վիեննա, Մխիթ. Մատ. 684, 64բ (ԺԶ)։ 745, 94բ—101բ (ԺԷ.)։ Վենետիկ Մխիթ. Մատ. 243, 69բ (ԺԷ. Ցուցակ՝ 634)։ Ուրիշ մը Բազմավէպ, 1897, էջ 425։

Հրատարակուած՝ Բազմավէպ, 1880, էջ 97—100 (Թ. 243էն)։

Կարապետ վարդապետ տաղս գրած է Հայոց ՋՂԹ (1540) թուին։ Վենետիկի Մխիթ. Թ. 243ի ընթերցուածը՝ ՌԺԴ (1565) առանց տարակուսի ձեռագրին գրչութեան տարին է[15]։ Հեղինակին ծննդավայրը չէ յիշուած. ինձ կը թուի, սակայն, թէ անիկա այս շրջանին մեզի ծանօթ Բաղիշեցի Կարապետն է, որ գործած է Տարօնի Առաքելոց վանքը։ Տարօնեցի մը կը մատնէ տող 159.

Ո՞ւր են առաջին իշխանքն,
Քաջ Մուշեղ եւ Գայլըն Վահան։

Տաղիս մէջ կը գծէ երգիչը «աշխարհացոյց» մը, եւ կը պարզէ իւր ունկնդիրներուն առջեւ աշխարհի երեք մասերու մէջ բնակող ազգերն ու անոնց նշանաւոր քաղաքները։ Այս բովանդակութիւնը գեղեցիկ կերպով վեր հանած է գրչագիր մը, որ այսպէս խորագրած է տաղս. «Ի Կարապետ վարդապետէ արա-

---

[15] էջ 332 կը յիշէ Կարապետ Գաղղիոյ «Ֆրանցա» թագաւորը, որ Փրանկիսկոս Ա. է, թագաւորած 1515—1547։

բեալ ոտանաւոր ի վերայ ամենայն աշխարհի, զոր եւ Նոյ յետ ջրհեղեղին արար երեք մասունս եւ բաժանեաց ի վերայ երից որդւոցն իւրոց»[16]: Այս իմաստով ալ ուրիշներ կոչած են «աշխարհացոյց համառօտ բանիւք»:

Ինչ ինչ ձեռագիրներու մէջ դուրս ինկած է տաղիս սկզբնաւորութիւնը. այսպիսի ձեռագրէ ծագած են էջմիածնի Թ. 527 եւ 1677, ուր կը պակսին առաջին 1—14 տողերը: Իսկ տող 53—164 իբրեւ առանձին տաղ, առանց հեղինակի անուան, մուտ գտած է Տաղարաններու մէջ. այսպէս՝ «Ողբ ի վերայ Հայոց թագաւորաց եւ իշխանաց» խորագրով եւ սկզբնաւորութեամբս՝

Սուտ եւ անցաւոր աշխարհ,
ո՞ւր են մեր իշխանքն ամենայն...

էջմ. Գէորգեան բաժին, Թ. 281, Թղ. 134ա—բ = Աճառեան, Տաղարան, 131ա, 424: Քէչիշեան, Ցուց. Զմմառի, 22, 326ա: Պարիս, Ազգ. Մատ. 283, Թղ. 169ա: Վենետիկ, Մխիթ. Մատ. 1371: Ասկէ հրատարակած Ա. Զօպանեան, Հայ էջեր, էջ 13:

Տաղիս 47—88 տողերը, Գաբրիէլ դրչէն ընդլայնուած, ունինք Վիեննայի Ազգային Մատենադարանի Թ. 22 հայերէն ձեռագրին մէջ, ամբողջութեամբ հրատարակուած Հ. Յ. Տաշեանէ, Ցուցակ, էջ 32—33:

---

16 Տեսած է ձեռագիրս Ղ. Վ. Փիրղալէմեան. Դիւան Հայոց Պատմութեան. գիրք Ժ., էջ 500:

Կարապետ վարդապետի այս տաղը պիտի հրատարակեմ վարը ամբողջութեամբ։

2. Ողբ ի վերայ արշաւանաց Իսմայէլ շահին։ Գրուածքս իբրեւ յիշատակարան կցած է Կարապետ Բաղիշեցի իր 1513ին օրինակած Սաղմոսարանին մէջ, գրուած Եղրդուտի վանքին մէջ։ Ձեռագիրը կը գտնուի այժմ յէսկորիալ (Մադրիդ)։ Յիշատակարանիս արտագրութիւնը կը պարտինք հայագէտ F. Maclerի, որ հրատարակեց զայն ի թերթին Revue des Etudes Arméniennes, 1 (1920), 94—101։ Նոյնը կ'արտատպենք տարբեր, ինչ ինչ ուղղումներով։

3. Գանձ Գրիգորի Աստուածաբանին ի Կարապետ Բաղիշեցւոյ։

Կենդանարար որդիդ միածին,
Առեր մարմին յարգանդի Կուսին,
Վասն Ադամայ քո նախաստեղծին,
Որ մերկացաւ զփառս առաջին...։
վ. Եկեղեցւոյս եւ ժողովրդեան
Լեր օգնական յաւուր նեղութեան։

Տնակապ գրերը՝ ԿԱՐԱՊԵՏ (վերջին տառ՝) ԲԱՂԻՇԵՑԻ։

Ձեռագիրք՝ Թաւրիզի Թ. 43, թղ. 122բ—124բ (ԺԶ։ Աճառեան, Ցուցակ, էջ 36)։ Առկէ Աճառեան, Գանձարան, թղ. 168։ Վենետիկ, Մխիթ. Մատ. Ա. Գանձարան, էջ 209։

Ըստ Հ. Մ. Պոտուրեանի (Բազմավէպ, 1907, էջ 61) թէ Վենետիկի Մխիթ. Մատե-

նաւարանի Ա․ Գանձարանին եւ թէ 1899ին Պարսկաստանէն ի Ս․ Ղազար հասած ուրիշ Գանձարանի մը գրիչները Կարապետ Բաղիշեցի անունը կը կրեն․ վերջնոյս մէջ ի Ս․ Պետրոս եւ Պաւղոս առաքեալսն երգուած Գանձին ետեւը գրուած է․ «զԿարապետ գրչակս յիշեա ըզԲաղիշեցի անմիտս»․ իսկ առաջնոյն մէջ Գրիգոր Աստուածաբանին նուիրուած գանձին վերջը կ՚ըսուի․ «ի գծողէս այսմ Գանձարանիս յանմիտ Կարապետէ Բաղիշեցւոյ»[17]: Դժբախտաբար երկու ձեռագիրներս ալ անթուական են: Պոտուրեան գրէն դատելով երկուքին գրիչն ալ մի եւ նոյն անձը կը համարի: «Մեր Ա․ Գանձարանէն գիտեմ, կը գրէ Պոտուրեան, որ ինքը Կարապետ Բաղիշեցին տաղասաց է եւ գանձասաց․ եւ սա Առաքել Բաղիշեցւոյն բոլոր գանձերը հաւաքած եւ օրինակած ըլլալով կասկած կու տայ անոր աշակերտած ըլլալուն․ որով ըստ ինքեան այս գրիչը ԺԶ․ դարուն սկիզբը <ապրած> պէտք ենք համարիլ: Ս․ Ղազարու Ա․ Գանձարանին մէջ Կարապետ Բաղիշեցի ունի յիշեալ գանձն միայն եւ յաջորդ տաղը:

4․ Տաղ վասն Վարդին:

Պուլպուլն է հաւեր ի յոտըն կօշիկ,
Զվարդն կու փնտռէ սիրով անուշիկ․
Զայն է արձակեր, կու կանչէ վարդ, վարդ,
Վարդ, վարդ, դու գուարթ,
Ես պուլպուլ, դու վարդ:

17 Նոր հայկազեան Բառգիրք, ընդ բառիւ Գանձարան:

*Վ. Կարապետ ծառայ, բնակարան մեղաց,*
*Ձպուլպուլն ընդ վարդին սակաւ մի գո-*
*վեաց:*

*Ձեռագիրք՝ Վիեննա, Մխիթ. Մատ.* 405, 29*ա*—30*ա*: 514, 144*բ*: *Թաւրիզ, Լիլաւա-թաղի Մատ. Թ.* 3, 34*բ* (*ԺԹ., Ցուց.* 63 = *Աճառեան, Տաղարան*, 258*ա*):

*Հրատարակուած՝ Գամառ–Քաթիպա, Եր-գարան: Քնար Հայկական*, 246: *Գիրք Դպրու-թեան եւ Տաղարան*, 213—214: *Կոստանեանց, Նոր Ժողովածու, Բ.*, 14—15 (1695*ի Տաղա-րանէ*): *Հայերգ*, 72—73:

*Վիեննայի* 405 *կը կարդայ. «Կարապետ դպիր որ ծառայն մեղաց». Քնար Հայկական եւ Հայերգ ունին «Աւետիս տայիր ծառայն իմ մեղաց»: Հ. Ղ. Ալիշան, Հայբուսակ, էջ* 589 *կը վերագրէ «Բաղիշեցի Կարապետի»*:

5. Ողբ ի վերայ մեղաց եւ պաղատանք առ Աստուած ի Կարապետ վարդապետէ (Բա-ղիշեցւոյ):

*Աստուած իմ Յիսուս Քրիստոս,*
*կենդանի եւ կենդանարար,*
*Զիս կենդանացու Հոգւով մեռեալ*
*իմ մեղօք չարաչար...*
*Վ. Քեզ փառք Աստուծոյ բանին,*
*պատիւ տամ քեզ յօժարաբար.*
*Տուր ինձ ընուժիւն բարի,*
*զի օրհնեմք զքեզ մեղմաբար:*

Տունք՝ Ա—Բ։

Ձեռագիրք՝ Երեւան, Պետ. Թանգարան, 359, 445բ (1623)։ 361։ 364։ 365։ 385, 40բ (ԺԷ)։ Էջմ. 282, Հ. 68ա (1627. Թերի. Հմմտ. Արարատ, 1895, էջ 124)։ Պարիս, Bibl. nat. 283, 102բ։ Վիեննա, Մխիթ. Մատ. 63, 16ա (Թերի)։ Ձեռ. Կերլայի, Թղ. 453ա = Վիեննա, Մխիթ. Մատ. 745, 293ա։

Ձորագիրը Պարիսի 283ի համեմատ է. Վիեննայի Թ. 63 ունի «Ողբ ի վերայ մեղաց եւ նախատինք անձին եւ ապաշխարանք առ Աստուած». իսկ Էջմ. 282 պարզապէս՝ Տաղ Կարապետ վարդապետի Բաղիշեցւոյ։

6. (Արատ գանձ երգելոյ) ի տէր Կարապետ վարդապետէ Բաղիշեցւոյ։

Թէ ձայն ունիս քաղցր եւ բարակ,
Զգանձերս սաս դու համարձակ.
Ապա թէ հաստ է եւ խառնակ,
Յայսկից ի զատ կացիր յերակ...

Ընդ ամէնը 13 տուն։

Ձեռագիր՝ Էջմ. 282 Հ., 72ա—73ա (1627) (Հմմտ. Արարատ, էջ 126)։ Երեւան, Պետ. Թանգարան 359, 3բ—4ա (1623), անանուն։

Հրատարակեց՝ Ն. Քարամեանց, Արարատ, 1895, էջ 130։

Ն. Քարամեանց կը գրէ. «Այս ոտանաւորը յայտնապէս երկու մասից է բաղկացած. մի մասը, որ վերաբերում է գանձերն երգելուն եւ աւարտում է վեցերորդ տնով, երեւի

*պատկանում է Կարապետ վարդապետին. իսկ վերջին մասը, որ վերաբերում է Գանձարանի գրքի գործածութեան, հեղինակութիւն է Մարտիրոս գրչի: Երեւի Ղուկաս աբեղան (գրիչը) այս մասը իր օրինակում իբրեւ շարունակութիւն է դրել Կարապետ վարդապետի ստանաւորի ու նրա անուան տակ էլ արտագրել է»* (Արարատ, 1895, էջ 126):

1.

## ՏԱՂ ԱՐԱՐԱԾՈՑ

ԿԱՐԱՊԵՏ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՍԱՑԵԱԼ

Որ գովի բաժինն է Քամայ:

*Եկայք Ադամայ որդիք,*
*արարածք ամէն միաբան,*
*Օրհնեմք զարարիչն Աստուած,*
*որ ստեղծեաց զէակս ամենայն.*
*Որ ինքն է անեղ բնութիւնն,*
*սուրբ Երրորդութիւն միական,*

ՁԵՌԱԳԻՐՔ՝
A = Վիեննայի Մխիթ. Մատենադարանի թ. 684, թղ. 64բ—74բ:
B = Վիեննայի Մխիթ. Մատենադարանի թ. 745, թղ. 94բ—102ա (արտագրուած Կերլայի թ. 43 Տաղարանէն):
Հրատարակութիւն՝ V = Բազմավէպ, 1880, էջ 97—100:

ԽՈՐԱԳԻՐ՝ *Տաղ Արարածոց* A. *տաղ արարածոց.* < *երգի ի գոյն* > *Երազ է սուտ, եղբարք* < *տաղին* > B. *Կարապետ վարդապետի* (1565) *տաղ աշխարհացոյց գեղեցիկ.* V:

Ենթախորագիրը ունի միայն B:

3 *որ է ինքն* V: *բնութիւն* BV:

Զարդարեաց իմաստութեամբ
 զբոլոր բնութիւնս ամենայն.
Ստեղծեաց զԱդամ նախնին
 թագաւոր՝ եւ եդ պատուիրան,
Թէ յամէն ծառոց դու կեր,
 'ւ ի պտղոյն չունիս հրաման:
Օձն էր կորըստեան պատճառ,
 բանսարկուն էր առիթ մահուան.
Խաբեցին ըզձեռագործն
 եւ արին մահու գրաւական:
Հրաման առին յարարչէն,
 եւ զըրին պատճառ չինութեան.
Եւթանասուն ուստր եւ դուստր
 ծընան զնահապետքն զամենայն:
Եւ հրաման ի յարարչէն,
 բաժանել զլեզուքն ամենայն.
Եւ ամէն լեզուաց բաժին
 ի յաշխարհս չորեքանկեան:
Եւ բաժին Քամայ ազգին,
 վիճակաւ գաւառք բազմական.
Յայտնի 'ւ անծանօթ աշխարհք,
 որ գիտակ է իմաստութեան:
Նախ ըսկիզբն առնեմք նորա,
 որ քաղաքն է հիւսիսական.

5 եա V. պատուիրան B: — 6 ծառէ B. դու չիք V. պտղոյն] միոյն V: — 7 զալստեան A էր չիք A: — 9 չինութեանն A: — 10 հ. (= եւթանասուն) AB չիք V. ուստերս եւ դստերս V: զնահապետսն BV. զամենեսեան ABV դրինք զամենայն չափին համար: — 11 ելեալ V ի չիք V: — 12 լեզուաց A: — 14 անծանօթք B զոր] զի B է] են իմաստութեանն A: — 15 նորա B:

Բուխար ասեն նըմա,
որ ելնէ սամուրք աննըման:
Եւ այլ ի կարգի նորա,
որ անկնի կողմ արեւելեան.
Խաթայ ու Խութայ ասեն,
որ է թախտ ազգին Լակըլատեան:
Եւ այլ է ընտիր աշխարհք,
մեծամեծ քաղքունեայք որ կան.
Բալխ ու Բաղաշխան ասեն,
զոր բերեն գլաջուարդն ամենայն:
Ելանք ընդդէմ դըրախտին,
զոր մարդիկ անդ դըժար մըտան,
Որ Չին ու Մաչին կոչի,
որ կազմեն դեղթափ, չինխատան:
Եւ այլ ի ներքին կողման,
որ ասի Զորով Հընդուստան,
Քաբուլ, Ղանդահար ասեն,
որ տիրեալ ազգըն Հազարան:
Ի յայնկոյս ծովուն միջին
են բնակեալ լեգուք զանազան.

16 կու ասեն V սամուրքըն B: — 17 անկանի V իմացիր անկ(ա)նի ի. յարեւելեան A: — 18 խըթայ V. թաղխթ A. լակըստան B լակզստան V: — 19 այլն V. չիք է V ընդիր B աշխարհք] քաղաք B. քաղքունայք BV: — 20 բաշխ BV պատաշխ V գլաճուարդքն B լաճուարդ V աննման V: — 21 ելնեմք V ելաք B. ի դէմ B մարդիք B մարդիկք V անդ չիք V մտանեն V: — 22 եւ կազմեն գդեղդափ V չիննեստան A: — 23 այք B չորրորդ V հինդխստան B հինդուստան V: — 24 ղանտահար V որ չիք V տիրեալ է V ազգ B հազարեան V: — 25 ծովին B բնակեալք B:

Թախտ ունին զՊեճանակալն,
որ ասի Խորու Հընդուստան։
Լալ ու գոհարն անդ լինի,
եւ քարինք անգին պատուական·
Զոր բերեն մարդիկ յաշխարհս,
Թագաւորքն ի վերայ խնդան։
Են այնիւ նախնեաց նոցին
վիճակաւ ազգն Եթովպական·
Եւ Աստուած պարգեւք նոցա,
ըզոսկին այնիւ բուսական։
Հաւատովն են քրիստոնեայք,
եւ գործովք ուղղափառութեան·
Ի Փիլիպպոսէ շնորհաց,
որ ընտրեալ են ուղղադաւան։
Եկայք որ մըտնունք յաշխարհն,
որ է կողմն ի հարաւեան·
Թախտ ունին նոքա զԹոնողն,
ի յաշխարհն Մըղըրիպխստան։
Յառաջն էին ձըկնակերք,
եւ անկուշտ մարդադէմ գազան·
Այժմ են խիստ քաջ ըռամալք,
եւ ազգաւ են մահմետական։

26 թախթ A զպէճանակալն V հընդաստան B: — 27 գաֆարն A կոհար B գոհար V պատվական B: — 28 մարդիկք BV թագաւորք BV վրան V: — 29 ազգ V եթովբական B: — 30 պարգեւ V: — 31 հաւատով BV քրիստոնեայք A: — 32 Փիլիպոսէ A Փիլիփոսէ B Փիլիպպոսի V շնորհացն BV: — 33 հարաւայեան BV: — 34 Թաղխթ A Թաւնօզ BV· աշխարհաւ են մաղրիպաստան V: — 36 ըռամալ V:

Ի գըլխի նոցին բընակեալ
են Մաշրիպք, որ են Խուժաստան.
Թախտ ունին ըզԿըրաւնաստայ,
վիճակաւ են Ամազոհեան:
Կինն է նոցա թագաւոր,
զոր առեաց Մակեդոն արքայն:
Խարաճ տան Փուռթուկալին,
որ բնակեալ անդ Լեւխաթան:
Նաւավարք խիստ քաջ գիտուն,
որ առնեն զՀըրմուզ կըղզին այն:
Հըրաման առնէ նա ծովուն,
որ բնակեալ է Լեւխաթան:
Յայտնեցին զոսկի քաներն,
ի սինօրըն Հապաշըստան:
Մըտան ի Փէքրով քաղաք,
տիրեցին բոլոր Հընդուստան:
Ի ներքոյ հըքմի նոցին
են բնակեալ սեւերք անթուական:
Նապիք եւ Սիահք ասեն,
Քաւթաքոյք աշխարհ հեռաստան:

37 ի գլուխ BV մաշրիպք A մազրիպք B մաշրիպք V. որ է V: — 38 թախթ A զկըրաօնայ V ամազուհեան V: — 39 կին BV: — 40 փորթուկալին V. է անդրանդլական V: — 41 BV ունին նախ տող 42 ապա 41: ն. են քաջ V առին V զհուրմուզ B կղզինն A: — 42 առնեն այն ծ. V նայ A: — 43 զոսկոյն V սինուռն V հապաշիստան B: — 44 փեքովր B փէքով V քաղաքն V հինտիստան B: — 45 հոքմի B հըղմի V բնակեալ են V սեւք B անթըւական A եթովպական BV: — 46 քաւթայքայք V քաւթագոյ B աշխարհք B:

վճարեցաւ վիճակն Քամայ: Ցայսմհետէ վիճակն է Սեմայ:

*Անեղ անըսկիզբն Աստուած,*
*որ միշտ է ինքըն անսահման.*
*Ետ վիճակ Սեմայ ազգին,*
*եւ բաժին ըզՓռանկըստան:*
*Անդէն բընակեալ լեզուք,*
*Թագաւորք արեւմըտական.*
*Անթիւ 'ւ անհամար զօրօք,*
*ըսկիզբն են արիական:*
*Արժանաժառանգ ունին*
*Թագաւորըն ըՍպանիական.*
*Արքայից մեծաց Թագուոր,*
*զոր կազմեաց Սողոմոն արքայն:*
*Այժմ ինփառատուր է նա,*
*ինրունիդ աշխարհն ամենայն:*
*Հնազանդեցան Թագաւորքն*
*ի Լատին եւ մեծ Ալամեան:*
*Հարկատու զնա արարին,*
*ըզՎընէժ, ըզՃենուայ եւ զԱնքունիայ.*

Ենթախորագիր՝ *վիճակեցաւ* A *քամայ աշխարհն* B պարզապէս *վիճակ քամայ* V *տուր վիճակս ս.* A:

47 *անեղական* AB: — 48 *բաժին* B *եւ* չիք BV *ըզվիճակըն* BV *Փըռանգիստան* BV: — 49 *անդ են* V *յարեւմըտական* B: — 50 *են ըսկ.* B *'ւ ըսկիզբնէ են* V: — 51 *ունի* B *Թագաւոր* V *ըսպանիական* A: — 53 *այժմին փառաւոր էին* V *ինրունէդ* B *ի բունէդ* V: — 54 *հնազանդ եղեալ նմա* V *Թագաւորք* B *ի* չիք V *ալաման* V: — 55 *զնա* չիք V *ճէնէա* B *ճէնեայ* V *զանքունիայն* V:

Աւրն ըղՊոլոնիայ ,
եւ հասին ի մեծըն Միլան ։
ԸղՓարէզ քաղաք Թախտ ունին ,
մեծ կըղզին եւ Ցիցիլայն ։
Ինքըն փըրկէ զքրիստոնեայքն ,
ի յազգէ այս մահմետական ։
Եւ այլ ի կարգի նոցա
է բնակեալ ազգ Կատալիայն ․
Թախտ ունին ըղՖըլանտրայ ,
որ ելնէ խաղինջայ չուխայն ։
Ի կարգի նոցա անկնի
Սամարդին եւ ազգն Իմգացան ,
Զոր Փուլիացիք ասեն ,
որ յայտնի է Պանփիւլայն ։
Գըլուխ քըրիստոնէից ,
քաղաքաց մայրն բատուզական ,
Զոր Հըռոմ ասեն նըմա ,
է աթոռ հայրապետական ։
Անդ են բընակեալ գըլուխք ,
'ւ առաքեալքն որ վէմ կոչեցան ։
Անթիւ քահանայք բազումք ,
սպասաւորք եկեղեցական ։

56 ըղպօլոնիայ A ըղպոլոննեայ այն է Bologna B միլայ B ։ — 57 թախթ A ունի V եւ զմեծ V ցիցիլան BV ։ — 58 յազգէս V ։ — 59 կատալիան B կատալեան V ։ — 60 թախթ A ըղՖըլատըրայ A զՖըլանատրայ BV ելնէ B ելնայ V ղարինճայ BV չուխան B ։ — 61 անղնի A անկանի V իմըրգյան B Նիցման V ։ — 62 փիլիացիք BV պանփուլիան V ։ — 63 որ է մայր նա B սըտուզական A ։ — 64 նմայ A ։ — 65 անդէն A անտ են B գլուխ BV 'ի չիf BV ։ — 66 բազում V ։

*Եւ պապն ի նոցա միջին,*
*որ է գլուխ Թագաւորական:*
*Եպիսկոպոսունք ընտրեալք,*
*եւ երկոտասան կարտինայն*
*Կարգաւորք առաքինիք,*
*սուլտանայքն են խորհըրդական:*
*Տիրեն մեծամեծ կըղզեաց,*
*որ Ֆըռանքն են նոցա պահապան:*
*Ամուր կըղզիք մեծամեծք,*
*Կըրիտէս 'ւ Ակրականդիայն:*
*ըՌօտոս, մեծըդ Կիպրոս,*
*ձեզ գըլուխ է Տաւպրոնիքայն:*
*Ի յԱթենացւոց աշխարհն,*
*որ ասի Թեսաղոնիկայն,*
*Ֆըլարէնցաւն մեծ,*
*ի քաղաքն Անապօլիսն այն:*
*Թագաւորէ աշխարհիս*
*հըզօր Ֆըրանցայ արքայն.*
*Է սա ի Թոռանց մեծաց,*
*Կոստանդեայ Կոստանդին արքայն:*
*Ի մուտս արեւու այլ կան*
*Ընկլուզու Ընկըլթեռ արքայն.*

67 *թագաւորութեան* V: — 68 *կարտինայք* B: — 69 *սուլթաննայքն* B *սուլթանայք* V: — 70 չիք *որ ֆըռանք* B *են*] *է* V չիք B: — 71 *կըղզինք* A *մեծամեծ* B *ու* B *ակրականտիան* V: — 72 *ըռօտաւս* B *տօպրօնիայն* B *տօպրոնիքան* V: — 73 *թեսաղոնիկէ* B *թեսաղոնիկանն* V: — 74 *ֆըլարէնցաւօւն* A *ֆըլարէնցօւըն* B *Ֆրարենցօ Աւլոնիան* V *մեծ քաղաք* V *անապօլիս* B: — 75 *թագաւոր է* V *մեծ հզօր ֆըրանցան* B *ֆըրանցա* V *արքայն* չիք B: — 76 *է սա* չիք V յաւելում (*մեծաց*) *թագաւոր* B *թագւոր* V *արքայ* B: — 77 *անկլեզու* V:

Բընակեալ է ի յայն ծովին,
որ հանեն ըղձըկան ակուայն:
Ի Բութանացւոց աշխարհն
են բնակեալ լեզուք զանազան.
Մաճարք եւ Բուլղարք ամեն,
Լէհն ու Սէրփն, Խրուաթն եւ Բուսնայն:
Իլախն եւ Ֆըլախն կան
ի Գրագոմն աշխարհն ամենայն.
Զաշխարհքն ունին սեփհական,
որ հասնի մինչեւ յԱղքըրման:
Ի սառնամանիք հիւսիս
է Ըռուց ազգըն բընական:
Աշխարհն է նոցա Մոսկով,
մինչ ի ծովըն Կազբիական:
Եւ ազգըն նոցա գերող
է Թաթարըն նետողական.
Լայն 'ւ արձակ անկեալ է նա,
որ հասնի մինչեւ ի Կաֆայն:
Գուրճըն ու Մէկրէլն յայանին,
Ապազայն եւ մեծ Դաղիայն:
Պաչաչուխն ի հետ նոցա,
որ ի կողմն է ի Վրաց տան:

78 է յայն B ծովուն V: — 79 բութանացոց A բնակեալ] անկեալ V: — 80 պուլղարք BV սանէրփ V խրրվաթն BV պօսնայն BV: — 81 ի Փըլախն կայ A Փլախրնկան V գրագով BV: — 82 զաշխարհն BV սեփական V հասնինի A մինչ ի յԱքիրման V ախքիրման B: — 83 սառնամանիք B հիւսիսն V ռուսաց B ռուսու V: — 84 աշխարհքն V կասպիական V: — 85 ազգին V: — 86 եւ V անձակ B է ա. V չիք է նա V նայ A Կաֆան V: — 87 գուէլն BV մկրէլն BV յայանի B ապազայն B ապազան V լաւագոյնս՝ Ապխազիա: ու V մեծ չիք V դաղիայն B դաղանիան V: — 88 պաչաջուխն V որ ի կողմէն ի Վրրաստան V:

Այս գլուխս բոլորովին ազգ եւ ազինք, լեզուք եւ գաւառք, թագաւորք եւ իշխանք, զոր յայտնի եղեւ ի Սեմայ անեցեալք․ հաւատովք քրիստոնեայք․ այսպէս միջին է Թաթար < որ հաւատով > է մահմետական։ Ցայսմհետէ ի վերայ Աքեթայ վիճակին է այս։

*Երկնի եւ երկրի ստեղծող,*
*մարդասէր Աստուած ինքնական․*
*Արեթայ շնորհեաց վիճակ,*
*զմէջաւրեայ աշխարհս ամենայն։*
*Ըսկիզբն յԱսիայ առնեմք,*
*զոր շինեաց Կոստանդին արքայն,*
*Որ ինքն է օծեալ քաղաք,*
*եւ տեղիք սրբոց բընակարան։*
*Այժմ է նա կոխան եղեալ*
*այլազգեաց, որ յայտնի մեզ կան․*
*Զոր անուամբ Օսման կոչեն,*
*եւ տիրեն մինչեւ ի Մաքայն։*
*Տիրեն բոլոր աշխարհիս,*
*եւ ունին բուրըն հըրաման։*
*Խըրոխտ են եւ քաջ գիտուն,*
*մինչ լինի ի տըւողէն վախճան։*

Ենթախորագիրն՝ *գլուխ* B *ազգին* B *այսպէս*] *այսպարս* B *որ հաւատով* աւելցուցինք․ *յօրինակին մէ* |||||| (ջնջուած) *է․ թաթարխտան մահմետական* B։ *Ցայսմհետէ վիճակ է Արեթայ վրայ է այս* A․ *օրհնեալ է Աստուած․ <ի գոյն> Դաւիթ արքային որդին* B․ իսկ V ունի պարզապէս *վճարեցաւ Սեմայ եւ մտանէ Ցարեթայ* V։

89 *ստեղծօղ* AB։ — 91 *ըսկիզըն* A *ասիայ* B *յասիոյ* V։ — 93 *նա* չիք A *այլազգայ* B *այլազգացն* V *որ մեզ յ․ կ․* V։ — 94 *մաքան* B։ — 96 *խըրոհտ* A *ի* չիք B *վաղճան* A *վաղճան* BV։

Երաժիշտ Թագւորացիք,
զոր յայտնի այս է Ղարաման.
Եւ ի հետ Գաղատիոյ,
զԿիլիկէ եւ ըզԲերիոյն:
Փինիկեցիք, Ասորիք,
որ ազգաւ էք վաճառական:
Օրհնեալ է իմաստութիւնն,
որ շնորհեաց ըզթըւականըն.
Գայիրացիք հընարագէտք,
քաղաքաւ Եգիպտոսական.
Գըտեալ էք դուք զայն արուեստն,
որ կոչի երկրաչափական:
Ի յԱրաբիա մըտաք,
որ հասնի մինչեւ ի Ջիտայն,
Ունին Թախտ զԵգիպտոս,
զԴամասկոս եւ զըՍքանդարիոյն:
Ազգն Եբրայեցւոց անդ են,
՚ւ Իսրայէլ անուն կոչեցան:
Աբրահամ եւ Իսահակ,
նահապետքըն երկոտասան:
Յայտնեցան ազգի նոցա
մարգարէքըն վըկայական.

97 Թագվորացիք B Թրակացիք V այս է] անէ B այժմ V: — 98 զաղատիոյն V ըզբերիոն B: — 99 եւ ասորիք V են V: — 100 իմաստութեանն A իմաստու-թիւն B ըզայս թվական BV: — 101 գահիրացիք V էք իպտոսական A բ. են եգիպտական: — 102 զ. են նոքա զարուեստն V: — 103 յարաբիոյ AB մըտնուք BV ձիտտան BV: — 104 թախթ A զԹախտ Եգիպ-տոս V ըզյեգիպտոս B Սկանտարիան B զԿանտարեայն V: — 105 անդէն A անտ B: — 107 ի յազգէ V:

Նոյանէ Աստուած ծընաւ,
ազատեաց զհոգիքն ամենայն:
Ով Բաբելացիք գիտունք,
արուեստիւ աստղաբաշխական.
Գըտեալ էք զմոլորականքն,
եւ զընթացըս արեգական:
Աշխարհաւ էք դուք երաժշտական,
որ յայտնեաց Թարայ եւ Խառան.
Աբրահամ հայրն առաջին,
որ ըսկիզբն աստուածպաշտութեան:
Ի Բաբելոնի կողմանցն
է Թայուխըն այն մեծ արքայն,
Ի աշխարհք եւ գաւառք բաղում,
որ անի մինչեւ ի Քալբալան:
Ի Մըծբին եւ ի Միջագետն
աշխարհն է Ասորեստան:
Եւ այլ ի կարգի նորա
զոր յայտնի ասեն Քուրդիստան:
Մեզ յայտնի է այն քաղաքն
որ շինեաց դըշխոյն Հեղինեայ.
Անուամբ կոչի նա Պուռսայ.
որ ինքն է ազնիւ շահրիստան:

108 ի նոյանէ V 'ւ (ազատեաց) B: — 109 աստղաբաշական A աստխայբաշխական B: — 111 դուք էք BV երաշտական A որ] զոր V: — 112 (ըսկիզբն) է B որ է ս. V աստուածպաշտութեանն A: — 113 ի բաբելի A բաբելոնի V է եւ պարս եւ Թայուխ արքայն V այն մեծ չիք A: — 114 'ւ] եւ A բաղում B 'ւ այլ ա. V եւ այլ գ. V բաղում չիք ABV քալպալան BV: — 115 'ւ B Միջագետս V որ աշխարհս V: — 116 յ. է նայ B քըրդաստան B քրթաստան V: — 117—118 չունի A 117 որ] զոր V հեղինան V: — 118 շահրըստան V:

Եւ անտի յառաջ գոլով,
 է Յունաց աշխարհն ամենայն.
Զոր այժմ Հոռոմք ասեն,
 եւ սինօռն է Սեբաստիայն:
Ի յորդանխաղաց աշխարհք,
 որ ասի Շիրւան եւ Գիլան.
Խըռատումտան կըղզի միջին,
 աշխարհ է Զանգալըստան:
Անդ լինի պարգեւք մարդկան,
 պատուական 'ւ անգին մանանայն.
Զանունն ապըրշում ասեն,
 որ գործեն մահմուռ եւ չաթմայն:
Ըզազգըն Պարսից յայտնեմք,
 իմաստուն եւ քաջ գիտնականք.
Ճարտար եւ հընարագէտք,
 աշխարհաւ են Հատըրբէջան.
Ի միջի նոցա շինեալ,
 է գաւառք 'ւ աշխարհք զանազան.
Անդ լինի պողպատ սուսերք,
 որ ասի Շիրազ եւ Քըրման:
Արուեստիւ լըցեալ քաղքունեայք,
 որ մըտնին ի քեզ բազըրկան.

119 Եւ] է A: — 120 կոչին B կոչեն V սընօռն B սինուռն V սեբաստիան V: — 121 ի չիք V յորդախաղաց V աշխարհն B աշխարհքն V շըրվան B շիրվան V Թիլան BV: — 122 միջինս A աշխարհն B աշխարհքն V չարըն (չարին V) գալստեան BV: — 123 պատվական B մանայնայն A: — 124 ապրիշում V մախմուր B զմախմուրն V չաքմայն A զչազման V: — 125 ըզյազգըն B գիտնական V: — 126 հնարագէտ V են չիք B հատրպըճան V հատըրբէջական B: — 128 անտ A պօղպատ AB շըրազ B քիրման BV: — 129 շինեալ քաղաք BV մըտնան B մտնան V ի ձեզ BV պազիրկեան B պազրկանք V:

Յանուանէ կոչեալ լինիք,
զոր յայտնի էք Ղում եւ Բաչան։
Պայծառ եւ ընտիր քաղքունեայք,
որ կոչիք Էզա ու Ասպահան·
Պարարտ եւ խիստ վայելուչ,
աշխարհաւ էք երաժըշտական։
Ադնիւ եւ անգին ղումաշ,
որ լինի ի ձեզ գովական·
Զարդարանք եւ պաճուճանք
աշխարհիս մարդկան մեծութեան։
Արշակունիք գովելիք,
եւ արեւելեան եւ ընտիրք·
Պալհաւ Հընդիկք էք կոչեցեալք,
աշխարհաւ էք դուք Խորասան։
Տիրել ես բազում քաղաք,
Թիլան մինչ ի Լարըստան,
Երկրորդ ես 'ւ ընկերակից,
Թորգոմայ ազգիս հայկազան։
Ունիս դու բազում հեծել,
կըռուարար եւ քաջ փահլաւան·
Սըմըրղանդ է քո սինօռն,
որ է գլուխ քաղաք պատուական։

131 եազդ BV սապահանք V։ — 132 աշխար-հաւըք B երաչտական BV։ — 133 ղումաչքն V։ — 134 եւ գ. A զոր հագնին իշխանք ամենայն V։ — 135 դուք մաքուր պայծառ եւ ընդիրք B եւ ընտիր ի յարեւելեան V։ — 136 պահլաւն B հընդիք A հնդիկ V էք չիf BV կոչեցեալն B կոչեցեալ V դուք էք B ես դու V։ — 137 տիրեալ BV ըղթիլան BV մինչեւ Լարիստան B։ — 138 Թորգով A ազգին V։ — 139 կըռվըրար B քաջ] յոժ V փալհաւան V։ — 140 սըմըրղանտն է քեզ B սմրղանդն V սինուռն V գըլուխ A պատվական B։

Արշակ է շինեալ ըզքեզ,
Թագաւորըն հրապաշտ արքայն·
Եւ է նա Քետուրացի,
զոր յայտնի է ձեզ յանդիման։
Քըննեցուք զհայկական որդիքն,
մէջ ամէն ազգի ցիր եւ ցան։
Ազգաւ մեք Արմէն կոչիմք,
վիճակաւ եմք Թորգոմական։
Քաջն Արշակ եւ Վաղարշակ,
հարազատ եղբարք միական·
Երկոքեանն սիրուն եղբարք,
կըռուարար եւ քաջ փահլաւան·
Եւ էին դայեակ որդիք
արքային այն Մակեդոնեան։
Դեղաւ զնա մահացուցին,
եւ առին զտունն արեւելեան։
Վաղարշակ շինեաց գաւառ,
որ ասի նա Այրարատեան·

141 է չիք A արշակն V Թագաւոր V։ — 142 քէտուրացի V է մեզ անդիման V։ — 143 որդիքն չիք B զհայկայ ո. V որ ամէն ազգի են A յամէն ազգէն V ազգաց B ցիր ու ցան V։ — 144 մեք չիք A արամ B որ ազգաւ արմէն կոչեն V են V։ — 145 հարազատք A։ — 146 եղբայրք A։ Այս տողը չունին BV. իսկ V փոխարէն ունի.

Են Աբրահամու որդիք,
ի ծնընդոցըն քետորական։

148 դեղով B զնայ A։ Ընդ մէջ 147 եւ 148 տողերու ունի B.

Բազմացան անթիւ զօրօք
եւ սփռեցան աշխարհ ամենայն։

149 գաւառն V նայ AB։

*Բազում աշխարհք եւ գաւառք,*
*եւ Թաւրէզըն մեծ շահաստան.*
*Գովելիք եւ անուանիք,*
*ըսկիզբնէ մինչ ի յաւիտեան.*
*Ով ոք ձեզ նըման չեղաւ,*
*ոչ յառաջն եւ ոչ յապագայն:*
*Սուտ եւ անցաւոր աշխարհ,*
*ո՞ւր են մեր իշխանքն ամենայն,*
*Տըրդատըն հզօր արքայն,*
*պարոնայքն ընդ քեզ գովական:*
*Զարթիք եւ տեսէք ձեզ խեղճ,*
*եւ ողորմըն կըսկըծական.*
*Ամէն ազգ յիւրեանց վիճակն,*
*եւ եղեալ եմք մեք ցիր եւ ցան:*
*Գերի եմք ողորմելի,*
*եւ ամէն ազգաց եմք կոխան.*
*Ոչ ունիմք մեք թագաւոր,*
*ոչ հզօր գինուոր զօրական:*
*Ո՞ւր են առաջին իշխանքն,*
*Քաջ Մուշեղ եւ Գայլըն Վահան,*
*Պատերազմին մեզ համար,*
*'ւ ազատեն զգերեալքն ամենայն:*

150 *մեծ*] *ձեր* B *եւ զԹաւրէզ մեծըն շ.* V: — 151—152 ունի V 154էն *վերջը*: — 151 *ի սկզբանէ* V: — 152 *ով*] *ոչ* V *եղաւ* V *ապագայն* V: — 153—164 իբրեւ առանձին տող հրատարակուած է *Հայ էջեր* էջ 13 = T: — 154 *հզօր մեծ Տըրդատ արքայն* BT *ընդ քեզ*] *հետ իւր* V *եւ իւր* T: — 155 *զձեզ* B *զմեզ* T *զմեր* V *խեղճն* V *ողորմ* AV *կըսկըծայգին* A: — 156 *իւրեանց* BT *իւր* V *ցիրուցան* T: — 157 *'ւ ողորմելիք* V: — 158 *թագաւորք* V *գինւոր* A *գին-վորք* BV: — 160 *զգերեյս* V: Ընդ մէջ 160 եւ 161ի T չորս տող յաւելուած ունի:

*Վըկայեալք են հայրապետք,*
*եւ ուխտիւք մխիթարական.*
*Լինի ձեզ ազատութիւն*
*ի յազգէն այն արիական:*
*Փառք քեզ Թագաւոր փառաց,*
*որ քննող ես գաղտնեաց մարդկան.*
*Տըւեալ ես իմաստութիւն,*
*եւ դատես զազգս որդւոց մարդկան:*
*Ի Թըւին Հայոց ազգիս,*
*Տէր քննէ մինչեւ յաւիտեան.*
*Ինընհարիւր եւ ութսուն*
*ինն Թիւ այլ ի հետ նորայն:*
*Ով ողորմելի Կարապետ*
*Վարդապետ եւ խիստ անպիտան.*
*Հըպարտ ես եւ անամօթ,*
*Բանիս ով ետ քեզ հըրաման:*
*Աղաչեմք զձեզ եղբարք,*
*որ երգէք կարդաւը զայս բան.*
*Յիշեցէք ըզանարժանս,*
*ողորմի ձեզ Տէրն յաւիտեան:*

161 *վըկայեալք* A *հայրապետքն* BVT *մխիթարութեան* V: — 162 *Թէ լինի* V *ազատութիւնն* A: — 163—164 T ունի հոս տող մը յաւելուած. իսկ Tի C օրինակը՝ տ. 164: — 164 *որդոց* A *որ քննեն* (*քննէն* V) *զէակս ամենայն* BVC: — 165 *ազգի* V *մինչ ի* V: — 166 *եւ* չիք A *հազար եւ* BԴ, *ի ապրիլի ԻԵ լման* V: — 167 *ով* չիք BV: — 169 *աղաչեմ* B *եղբայրք* A *դուք զայս* V: Հոս կ'ընդհատի A թուղթ ինկած ըլլալով: — 170 Այս տողով կ'աւարտի V:

B կը շարունակէ այսպէս, յայտնապէս Փանոս եւ Յակոբ գրիչներու յաւելուած.

*Գերի 'ւ անպիտան Փանոս*
*դիպեցայ բանիս պատվական.*
*Գրեցի ի քարտի իմում,*
*Թէ լինի ինձ աւուրն յիշման:*

Եղանակեցէք զայս բան,
  կարգաւ է եւ յոյժ պատուական·
Տունըս համարով նըսուն,
  եւ է սա բան իմաստութեան:

2.

## ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ԱՐՇԱՒԱՆԱՑ ՇԱՀ ԻՍՄԱՅԵԼԻ

Փառք անեղին աստուածութեան,
  որ անսկիզբն եւ անվախճան,
էր միշտ եւ է առանց թուական,
  չունի սպառումըն կատարման:
Զգեաց զերկինս որպէս վըրան,
  եւ հաստատեաց առանց հիման,
Եւ զլուսաւորսըն բազմազան,
  առանց ուրուք միշտ ընթանան:
Զհրեշտակս յերկինս եդ փառաբան,
  զմարդիկ յերկիրըս գործական·
Պատճառ լինին աստ շինութեան,
  մինչեւ մահուամբ ի հող դառնան:
Յորոց եւ մինն եւ անպիտան,
  Բաղիշեցիս տեղեաւ բնական,
Եւ Կարապետ կոչն իմ անուան,
  ի սուրբ գործոց զիրկ եւ ունայն:

Եւ ես անարժան Յակոբս,
  ցանկացայ տաղիս գովական.
Եւ կրծագրեցի ըդսայ,
  թէ ասեն ինձ ըդհայր մեղան.
Կարդացողք լըսաւղք սորայ,
  դուք աւրհնեալ աջոյն հայրական.
Աստուած ողորմի հայցեմք,
  մեզ համար ասէք միաբան:

ԽՈՐԱԳԻՐԸ մեղմէ է:

*Քանզի գործովս եմ անարժան,*
*եւ զձեւն ունիմ աբեղութեան.*
*Դարձայ մեղաց ըշտեմարան,*
*Աստուծոյ ի՞նչ տամ պատասխան:*
*Զերգըս Դաւթի յոյժ գովական,*
*որ եւ կոչի Սաղմոսարան,*
*Զհանուրց մանկանց սա վարժարան,*
*յաստուածային բա՛նս գիտութեան:*
*Այլ եւ զաղաւթըս խորհրդեան,*
*փրկչին մերոյ մարմնոյ 'ւ արեան,*
*Պատարագին մեր փրկութեան,*
*որ ի խաչին ըզմեղս եսպան:*
*Եւ զաղաւթիցըն հանրական,*
*եւ զքարոզից ժամագրական,*
*Զոր հայրապետք մեր սրրբազան*
*վասն աղաւթից եդին սահման:*
*Եղեւ սա գիծ խմում մատան,*
*եւ անարւեստ գոլ գըրչութեան.*
*Հռչակաւոր վանս գովական,*
*որ Եղըրդուտ կոչն իւր անուան:*
*Որ ի սահմանս է Տարանեան,*
*զԵփրատ ունի իւր յանդիման.*
*Դիմահայեաց արեւելեան,*
*եւ յահեկէ ըզՄուշն աւան:*
*Ի ժԹ թւին յոբելեան,*
*եւ աւելորդն երկոտասան.*
*Յունիս ամսոյն ի յաւարտման,*
*եղեւ գըրաւըս գըրչական:*
*Ի ժամանակըս չարութեան,*
*որպէս պատմէ Աւետարան,*

Քանզի բազում անձըն մարդկան,
որ մեռելոցըն ցանկանան:
Քանզի բաժակըն բարկութեան,
Բաբելացոց ժանդըն նըման,
Նա մին ազգին Իսրայելեան,
սա ընդհանուր սեռից մարդկան:
Շահ Իսմայիլ այժմոյս իշխան,
յԱրտաւելու քաղքէն եկան.
Եւ տիրեցին երկրի լըման,
Միջագետաց եւ Խորասան:
Որ եւ յայտնի եղ իւր նըշան,
գլխոյըն կարմիր, սուր եւ երկայն,
Եւ Թարկս ունի երկոտասան,
եւ Ղըզըլպաշ կոչի ազգն այն:
Որք ընդ յոնեյն ի մարտ մըտան,
զԱլւանդն արին փախըստական.
Զօրքն ամենայն անդ ջընջեցան,
Ալւանդն յԱմիթ առ ըզվաղձան:
Երբ յաղթեցին եւ զաւրացան,
եւ բռնութեամբ զԹաղթըն կալան,
Եւ արձակեալ յայժ լայնացան,
եւ բարձրացան լերանց նըման:
Եւ արեւելք Խուժաստան,
ազգըն Պարսից եւ Քրդաստան,
Սեոք եւ Ծընունդքըն Թորգոմեան,
միահամուռ մահմետական:
Որք որ կամայ եւ յակամայ,
զօրէնան իւրեանց զհինն ուրացան.

28 ի խորասան:

Եւ նորագոյն աւրէնս ուսան,
Իսմայելին հնազանդեցան:
Եւ յամենայն կողմանսն որ կան,
որք ի մաւտ 'ւ ի հեռաստան,
Աւրն գնորայն եղեալ նըշան,
եւ ի յանձինս իւրեանց զգեցան:
Եւ այս են ամք երկոտասան,
որ միջոցիս այս տիրացան.
Եւ կարգ առեալ բդհեա գընան,
Ջընջեն զներհակսն եւ տիրանան:
Եւ որք ներհակ կացին եւ կան,
յիշխանական փառացն անկան.
Բազումք ի սուրըս մաշեցան,
եւ այլք անգիտ վըտարեցան:
Ոչ խընայեն յազգըս մարդկան,
եւ ոչ նիրեն եւ թուլանան.
Ոչ ողորմին տըղայ մանկան,
եւ ոչ յալիս ծերոց գըթան:
Այլ են ընութեամբ որպէս գազան,
եւ ծարաւիք գոյով արեան.
Զբոլոր աշխարհըս զամենայն,
առին յաւար եւ ի թալան:
Եւ այժմ իջին ի Քրդաստան,
պատեալ զԲաղէշ բերին յաւման.
Եւ զայլ դըղեակսն որ ի շուրջ կան,
յԻսմայելի զաւրացն առան:
Նախ քան ըզգալ զաւրաց շահին՝
ազգըն Մարաց ամբարտաւան,

48 աշխարհքս:

Զերկիրս բոլոր հըրդեհեցին,
ոչ չէն թողին եւ ոչ աւան:
Եւ զկողոպուտ երկրիս առին,
զառ եւ զաւար եւ ըզթալան,
Զչորքոտանիս ժողովեցին,
զիւղ եւ ըզմեղր եւ ըզցորեան:
Լըցին զամբոցս իւրեանց ի լի,
ամբարեցին որպէս մառան.
Ի ի գալ գաւրացըն թըշնամեաց՝
ելեալ ի բերդքն եւ ամրացան:
Ոչ նայելով զկամսն Աստուծոյ՝
գործոց իւրեանց եղեն հաւան.
Զբանըն Դաւթի մարգարէին
առ ի յոչինչ համարեցան.
Որ նախատէ միշտ զայնպիսին
եւ համարի որպէս զանբան.
Եթէ ոչ Տէր պահէ զքաղաք,
մատնին պահողքն ի դատաստան:
Եւ յորժամ եկ զօրքըն չահին,
եւ ժամանակն էր ձըմըռան,
Կրկին պատիժ էհաս Հայոց,
բազումք ի ձիւնըն մըրսեցան:
Ես ոչ կարեմ գըրել ի գիրս,
ըզպատուհասս որ գիպեցան,
Զի ամենայն անձըն խընդրէր
մահու տապան եւ գերեզման:
Պիտէր այժմոյս Երեմիայ,
շատ ողբասացք եւ լալական.

54 ցորէան:

Զի ողբային զազգըս Հայոց,
որ յայսպիսի դըրունս հասան։
Զգեցին զերկիրս ի պահանջման,
եւ հարկս առնուն առանց սահման.
Երկիրս եղեւ որպէս խոպան,
եւ ամենայն անձն ի դողման։
Այսպէս եւ մեք եմք ի տանջման,
ընդ ազգիս Հայոց Թըշուառական.
Զի յամէն աւր որ լուսանան,
միշտ պահանջողքըն կան եւ գան։
Ոմանք առեալ յետս ընթանան,
ոմանք նըստեալ առնուն յաման.
Եւ ոմանք նոր բերեն նըշան,
խնդրեն ցորեան եւ դահեկան։
Աշխարհս եղեւ յոյժ ցիր եւ ցան,
ի ստացուածոց աղքատացան.
Ինչըք բազմաց գընաց Թալան,
եւ են բազումք որ գերեցան։
Ի յայսմ ամի Թըշւառութեան
կամք որպէս նաւ ի յէրերման.
Բընաւ չունիմք հանդըստարան,
այլ հողմահար եմք ի դողման։
Կամք իբր ալի ծովու շարժման,
տարաբերիմք անկայական.
Իբրեւ ըղձուր գետոց հոսման,
որ վըտարեալ յետս ոչ դառնան։
Համբաւ չահին տարածեցան,
ի չորս անկիւնս երկրի հասան,
Ի յարեւմուտս ի Ֆռանգըստան,
եւ յարեւելս ի Հընդուստան։

Եւ թագաւորք երկրի դողան,
կան ի յերկիւղ եւ ի սասան.
Ընծայաբերք լինին եւ գան,
զի ազատման արժանանան:
Ոմանք պատիւ առեալ դառնան,
՚ւ օր ըստ օրէ յոյժ մեծանան.
Ոմանք յերկաթ ՚ւ ի բանտս եղան,
կան ի կապան եւ ի զընդան:
Բազմաց գըլուխն յանձանց բարձան,
տունքն ի հիմանց տապալեցան.
Եւ ըստացուածքըն մարմնական,
ի թըշնամեաց զօրացն առան:
Աղեկսանդրու եղեւ նըման,
բախտի ծընունդ յաջողաբան,
Զոր իմաստունն եգիպտացի
գիտեաց ըղժամըն ծընընդեան:
Եւ ես ըզսա նոյնպէս կարծեմ,
բարի ժամու գոլ ի ծնընդեան.
Որով յաղթէ միշտ թըշնամեացն,
եւ զհակառակսն առնէ խափան:
Զոր անաւրինիչն ամենայնի,
ստեղծաւղ գոյիցս Աստուածըն բան,
Զինչ որ կամի այնպէս առնէ,
եւ մեք լինիմք ի հիացման:
Կամ ըստ մեղաց մերոց յարոյց,
որով դատէ զամենեսեան,
Սերմանողին պարտ է հընձել,
զոր սերմանեացն առնուլ զփոխան:
Որպէս ի հնումն Իսրայէլի
դատէր զաշխարհըն Հրէաստան,

Երբ յաւրինաց ելանէին,
  մատնէր ի սուր 'ւ ի գերութեան:
Նոյնպէս եւ այս մեզ հանդիպեցաւ,
  վասըն գործոց մեր չարութեան,
Որով ունիմք եւ ոչ պահեմք,
  վասն այն եւ մեզ պատահեցան:
Զի քրիստոնեայ եմք անուանեալ,
  'ւ յայլ վեհագոյն գերաստիճան,
Ի աշխարհական գործով շրջիմք,
  որպէս զԿայէն եղբայրասպան:
Այս յիրաւի մեզ պատահի.
  արդար է Տէր ի դատաստան,
Որ մերձակայն է իմանայ,
  մըտօքն խուովք լինի հաւան:
Զի որ ի մէնջ է ի ծածուկ,
  նըմա յայտնի է եւ այեան.
Տայ ըզպատիժ պատուհասին,
  առ հասարակ որդւոց մարդկան:
Ոչ որոշէ զչարսն ի բարեաց,
  'ւ յանցաւորացըն տայ միայն.
Ամենեցուն արբուցանէ
  մեզ ըզբաժակըն բարկութեան:
Որպէս զանձրեւ եւ ըզզարեւ,
  առ հասարակ ծագէ մարդկան,
Եւ պիտանի բոյսք եւ անպէտք,
  արբցեն ըզջուրըն յառոգման:
Կամ որպէս խանձ դիցեն մայրեաց,
  հըրդեհ ի չամբըս եղեգան.

108 անպետք:

Չորք եւ դալարք ի միասին
վառին ի հուր մինչ ի վաղճան։
Այժմիկ աւարտ առնեմ բանիս,
զի ընթերցողքն ոչ նեղանան,
Կամ անպատեհ բանըս խօսին
խոժոռ սըրտիւ եւ ձանձրանան։
Յինըն հարիւր Հայոց թվական,
վաթսուն երկու թիւն յաւելեան,
Աստ գըրեցի սակաւ զայս բան,
ապագայիցըդ ծանուցման։
Ես Կարապետ աձն անարժան,
ոտից ձեր հող եմ եւ կոխան.
Որք ընթեռնուք եւ որք լըսէք,
ըզմեզ յիշման առնէք արժան.
Եւ դուք գըրւիք ի գիրն անջինջ,
'ւ արժան լինիք արքայութեան.
Եւ մեք ընդ ձեզ մասն ընկալցուք,
յորժամ զայ Տէրն ի դատաստան։

110 հաւր։

## ԻԲ.

# ԴԱՒԻԹ ԵՐԷՑ ՍԱԼԱՁՈՐԵՑԻ
## ՏԱՂԱՍԱՑ

---

# ԻԲ.

## ԴԱՒԻԹ ԵՐԷՑ ՍԱԼԱՁՈՐԵՑԻ
### ՏԱՂԱՍԱՑ

*Դաւիթ Սալաձորեցի ԺԷ. դարու հայ շնորհալի տաղասացներէն է: Անիկա Հայաստանի ծաղիկներու երգիչն է:*

1. Կեանքը: *Իր Տաղկանց գովասանքի մէջ կը գրէ Դաւիթ*[1].

*Երկիրըս Արզրում կ՚ասեն,*
*Սալաձոր գեղս իմ օթեւան:*

*Ծնած է ուրեմն Կարնոյ շրջակայքի Սալաձոր գիւղին մէջ, ուսկից առեալ կ՚անուանէ ինք զինքը Սալաձորեցի:*

*Սալաձոր կ՚իյնայ Նորշէնի արեւմտակողմը. «սոյն գիւղ ասեն լինել ի նախնումն բազմամարդ, զորմէ վկայեն դերբուկք աւերակաց», կը գրէ Յովհաննէս Վաղարշակերտցի*[2]*: Իր օրով կային այս գիւղը* 8 *հայ եւ* 30 *տաճիկ տուն. իսկ* 1883*ին, ըստ Միրախորեանի*[3], 8 *հայ եւ* 28 *տաճիկ տուն:*

---

[1] *Բանասէր*, 1901, *էջ* 97:

[2] *Ճանապարհ.*, 17:

[3] *Նկարագրական ուղեւորութիւն ի հայաբնակ գաւառս Արեւելեան Տաճկաստանի: Մասն Գ. Կ. Պոլիս* 1885, *էջ* 169:

*ժամանակը, երբ ծաղկած է Դաւիթ, Հ. Ղ. Ալիշան կը համարի «հաւանօրէն ժէ. դար»[4]. իսկ Նորայր Բիւզանդացի[5] կը գրէ, «Թուի թէ ապրած է յժէ. կամ յժԸ. դարու»:*

*Դաւթի ծնողաց անունները ծանօթ չեն մեզի: Կ'երեւայ թէ մանուկ հասակին կորսընցուց զանոնք. անիկա իր տաղերու մէջ կը ներկայանայ «որբիկ»: Իր խնամակալները կը յանձնեն զինքը տեղւոյն քահանայի խնամքին, որպէս զի ծանօթանայ գրագիտութեան եւ պատրաստուի քահանայութեան: Իր «Հայր արարիչ» տաղին վերջը կը գրէ Դաւիթ.*

*Սալաձորի որբիկ Դաւիթ...*
*դու կարդացող քահանացու:*

*Իսկ «Քեզ համարով օր էր տըված» տաղին մէջ կը կարդանք.*

*Ես Դաւիթն եմ իրիցացու*
*ըստեղծող Տէր, զիս կարդացու:*

*Դարձեալ «Պարծանքզաստուց» տաղին մէջ խօսքը Աստուածածնի ուղղելով կը գրէ.*

*Որբիկ Դաւիթ Սալաձորցի,*
*տուիր ուրար, գիրս կարդցի:*

*Ստանալով ուրար նա եղած էր սարկաւագ. այսպէս Ծաղկանց գովասանքի մէջ (տող 127) կը գրէ.*

---

[4] *Ցուցիկք հայրենեաց, Բ.,* 126:
[5] *Բանասէր,* 1901, *էջ* 87:

Մօ՛, Սալաձորցի սարկաւագ,
  դաստան արիր ծաղկըներուն:

Թէ հասա՞ւ երիցութեան, չունինք իր երգերու մէջ որ եւ է ակնարկութիւն: Բայց գիտենք որ անիկա ամուսնացած էր եւ ունէր դստրիկ մը, որ տարաժամ մահուամբ վախճանած է, թողլով իւր հայրը սուգի մէջ: Կ'երեւայ թէ կինն ալ վախճանած էր վաղամեռիկ: Իր կսկիծը դստեր մահուան պատճառաւ արտայայտած է Դաւիթ «Փառք քեզ Թագաւոր փառաց» տաղին մէջ, որ նուիրուած է դստեր յիշատակին. կը գրէ.

Ես խիստ բարձրամիտ էի,
  նա ումեկ դըրի Նուանայն.
Այնոր բարկացաւ Տէր ինձ
  ու ձեռացս առաւ իմ տղան.
Ա՛յ իմ Նուանայ դստրիկ
  Նուանայ սուրաթդ աններման.
Աւախ քո կանանչ արեւդ,
  որ մըտաւ ի հողն ի զնտան...
Քեզ անճարն ճար անի,
  մէկ ու ճար դուստր իմ Նուանայ,
Դու զիս բընաւերք արիր,
  զինչ պայղուշքն աւերքըն կենան:...

Կ'երեւայ թէ Դաւիթ իւր ամուսնոյն եւ դստեր մահէն ետքը վարդապետ եղած է: «Փառք քեզ Թագաւոր փառաց» տաղին խորագրին մէջ կ'ըսուի. «Տաղս այս... Դաւիթ վարդապետի է, գեղջիւ Սալաձորեցի»:

Անշուշտ միշտ Սալաձոր գիւղին մէջ չմնաց Դաւիթ։ Թերեւս ինքն է այն Դաւիթ երէցն, որ Կարնոյ մէջ կատարած է օրինակութիւններ 1681 թուին։ Իրմէ ծանօթ են ինձ հետեւեալ յիշատակարանները.

Երեւանի Պետ. Թանգարանի Յայսմաւուրքը (Թ. 29 Բ) կ'ըսուի թէ «գրեցաւ... յաստուածապահ եւ ի գեղեցկաշէն մայրաքաղաքս Արզըրում, ի դուռն Մխարան սուրբ Աստուածածնի, ի թուին ՌՃԼ. եւ ի յամսեանն յունիսի Ժ. ի խնդրոյ... Շինոցի Ալեքսանոսին... յիշեսջիք... նաեւ զանարժան Դաւիթ գրիչս եւ զծնողսն իմ՝ զհայրն իմ զՆըրրիանոսն եւ զմայրն իմ զԱննայն»։

Դարձեալ Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 587 Պատարագամատոյցն «գրեցաւ.... ձեռամբ Դաւիթ իրիցի ի մայրաքաղաքս Արզըրում ի թուին ՌՃԼ, յունիսի ԺԲ»։

Եթէ հաստատուի Դաւիթ երէցին նոյնութիւնը Դաւիթ Սալաձորեցւոյ հետ, ոչ միայն կռուան մը կ'ունենանք ժամանակի մասին, այլ եւ ծանօթացած կ'ըլլան Դաւթի ծնողաց անունները։

Դաւիթ Սալաձորեցի երգած է տաղեր։ Անոնց մեծագոյն մասը ստեղծագործութիւնն է իր պատանեկութեան տարիներու, երբ տակաւին դպիր կամ սարկաւագ էր։ Ունինք Սալաձորեցւոյ քնարէն հետեւեալ տաղերը.

1. Անխորագիր. տաղ մը հայերէն եւ տաղ մը տաճկերէն.

Հայր արարիչ, Տէր կենդանի․
Հարաւէ մէմուռ սին վարդարա…
Վերջ՝ Սալաձորցի որբիկ Դաւիթ
յուղի զարայ սէն կունահքար,
Դու կարդացող քահանացու,
տայիմ չազր, զանի սաթար…։

Ձեռագիր՝ Վիեննա, Մխիթ. Մատեն., թ. 369, թղ. 1ա—7ա։

2. Երգ Աստուածածնայ։

Պարծանք դասուցըն վերնական
Կոյս Մարիամ Աստուածածին․
Դու յԱննայէ ընծայեցար,
արժանացար Հոգւոյն շնորհաց…
Վերջ՝ Որբիկ Դաւիթ Սալաձորցի,
տըւիր ուրար՝ գիրս կարդացի,
Փոքր ի շատէ զքեզ գովեցի,
Կոյս Մարիամ Աստուածածին…։

Ձեռագիր՝ Վիեննա, Մխիթ. Մատեն., թ. 369, թղ. 9ա—11բ։

3. Տաղս այս համեղագոյն է ի երերումն Դաւիթ վարդապետի է, գեղջիւ Սալաձորցի (ի մահն զատեր իւրոյ)։

Փառք քեզ Թագաւոր փառաց,
քեզ փառք տան աշխարհս ամենայն․

Ձեռագիր՝ Վիեննա, Մխիթ. Մատեն., թ. 156, թղ. 54բ—56բ։ Պարիս, Ազգային Մատ., թ. 290, թղ. 202բ—203բ (ա՞յս)։

Հրատարակուած վարը՝ էջ 359—362։

4· Անխորագիր (տաղ ի վերայ մահուան)։

Քեզի համրով օր էր տրված,
Կարմիր ու սեւ գիր էր գըրած·
Աշխարհս քեզի մուլք չէր տըւած,
Փուճ աստնվորիս ի՛նչ կու գատիս...
Վերջ՝ Ես Դաւիթն եմ իրիցացու,
Ըստեղծող Տէր, գիս կարդացու...։

Ձեռագիր՝ Վիեննա, Մխիթ· Մատեն·, Թ· 369, Թղ· 22ա—23բ։

5· Գովասանք ծաղկանց։

Օրհնեալ ես դու, Հայր երկնաւոր,
անքննելի աստուածութիւն·
Կամիմ գովել սակաւ մի բան,
միտքըս տըկար, խելքս է ի քուն...
Վերջ՝ Ւեւ Դաւիթն եմ, չատ գատեցայ,
գըլուխն առնում ծաղկըներուն·
Սակաւ ծաղկունքն ես եմ գովել,
բազում մընաց վարպետներուն·
Երկիրըս Արգըրում կ'ասեն,
Սալաձոր գեղս իմ օթեւան...։

Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ· Մատեն·[6]։ Ասկէ օրինակութիւն մը առ Նորայր Բիւզանդացւոյ։

Հրատարակուած՝ 1· Մեղու Հայաստանի, 1858, էջ 21—23։ — 2· Սրուանձտեանց՝ Արեւելեան Մամուլ, 1884, էջ 137—139,

---

[6] Կը սկսի 17րորդ տողէն՝ «Անքակտելի սիրելիք են...»։

177—179 [7]: — 3. *Սրուանձտեանց՝ Համով հոտով*, էջ 278—285 [7]: — 4. *Կոստանեանց՝ Նոր ժողովածու, Բ.*, էջ 66—75: — 5. *Նորայր Բիւզանդացի, Բանասէր*, 1901, էջ 87—129 (էջ 89—97 *բնագիր*, էջ 97—129 *մեկնութիւն ծաղիկներու անուններու*): 6. *Հմմտ. Զիթունի, Ծաղիկներու չարական. Պայքար հանդէս*, 1930, էջ 73—80:

### ԴԱՒԻԹ ՍԱԼԱՁՈՐԵՑԻՈՅ ՈՂԲ Ի ՄԱՀՆ ԴՍՏԵՐ ԻՒՐՈՅ

Տաղս այս համեղագոյն է ի յերերումն Դաւիթ վարդապետի է, գեղջիւ Սալաձորցի:

*Փառք քեզ Թագաւոր փառաց,*
*քեզ փառք տան յաշխարհս ամենայն.*
*Ես եմ մեղաւոր անդարձ,*
*փառք չասի ես օր մ'ի մեղաց:*
*Ես խիստ չար հպարտ էի,*
*որ չափ չըկար իմ հպարտութեանս,*
*Ոչ հացըմ աղքատի տվի,*
*ոչ գնացի ի ժամատեղի:*
*Ես խիստ բարձրամիտ էի,*
*նայ ումեկ դըրի Նռանայն,*
*Այնոր բարկացաւ Տէր ինձ,*
*ու ձեռացս առաւ իմ որդան:*

ԽՈՐԱԳԻՐ՝ *համեղայգոյն է ի երերումն:*
6 *ո չափ չըքար:* — 7 *ախքատի:* — 8 *ժամայտեղի:*

[7] *Կը սկսի* 18*րորդ տողէն՝ «Հուր որոտաց, քամին հնչեաց...»:*

Գոչեմ հառաչեմ լալով,
  պաղատիմ փառք քեզ տիրական.
Սիրով քաղցրացիր Նորա,
  մի ձըգեր զիս ոտից կոխան։
Ա՜յ իմ Նռանայ զատրիկ,
  Նռանայ սուրաթդ աննման.
Աւա՜ղ քո կանանչ արեւդ,
  որ մըտաւ ի հողն ի զընտան։
Վախեմ, իմ մեղաց մեռար, Նռանայ,
  կամ սըրբունաքն ինձ բարկացան։
Ուր էր, Աստուծով լինէր,
  քեզ դասէր ի յաջակողման։
Քեզ անճառն ճար արի
  մէկ ու ճար դուստր իմ Նռանայ.
Դու զիս բընաւերք արիր,
  զինչ պայղուշքն աւերքըն կենան։
Թէ ի տանէն դուրս յէլնեմ, Նռանայ,
  դուրսըն լոյս, աչերս է մըթան.
Սեւ լաթ զօլպանտով սըրբեմ,
  արտասունքս առեր, լոյս չըկայ։
Դառնամ դուռն ի ներս մտնում, Նռանայ,
  տունըն սուգ առեր կու տըքայ.
Մարդըկին չիվան առեր,
  դերըննին ամէն փոշիման։
Գնացեր տանըտ չնորհքն, Նռանայ,
  թունտ առեր, տունն է աւեր խան.
Աւելդ ալ աւազ կ՚առէ,
  թէ բերէք իմ նոր բուրաստան։

15 նորայ։ — 16 մի մի ձըքեր։ — 19 աւախ քոյ։ — 25 անճարն։ — 32 չըքայ։ — 37 չնորքն։ — 38 տունէ։ — 39 աւախ։ — 40 բէրէք։

Թէ յէլնեմ ի քունձղ էրդամ, Նունայ,
  քունձրդ խոր գերդ մութն ու գրնտան.
Դառնամ եւ սրնտուկդ հայիմ,
  դուռն փակ կողպանքն ի վրայ:
Թէ յէլնեմ թախտդ գնամ, Նունայ,
  փոշտել սարքն վար կու գայ.
Դառնամ ի ծալքն հայիմ,
  ծալքն ծալ, գավագն ի վրան:
Թէ յէլնեմ մառանդ գնամ, Նունայ,
  կարասնիդ ամէն ի չուրջ կան,
Աւազ եւ բորբոք կ'ասեն,
  քունձ պուճախն ինձի կու տան:
Թէ յէլնեմ ի գոմն գրնամ, Նունայ,
  անասունքն ամէն ի սուգ կան.
Կովերն ալ կըթող կ'ուզեն,
  թէ բերէք մեր նոր թուրվանդան:
Թէ յէլնեմ ի դուրս էրդամ, Նունայ,
  նայ քարերն ինձի վայ կու տան.
Կ'ասեն. Ծօ անգութ ծընող,
  դու կարօտ թողիր քո տըղան:
Թէ յէլնեմ յաղբիւրն գնամ, Նունայ,
  ջուրն գնացքն առնէ մանէման.
Կանգնի ու վըտակ դընէ,
  թէ ե՞րբ գայ իմ խասխորան:
Թէ յէլնեմ հանդաստան գնամ, Նունայ,
  բոյս առեր գետնէն վեր կու գան.

41 էդամ: — 44 կողպաքն: — 46 գու գայ: — 51 աւախ: — 54 ի սուք: 55 կօվերն ալ կըթօղ գուզեն: — 56 բէրէք: — 57 էրդամ: — 59 անգոյթ ծնօղ: — 60 քոյ: — 61 յախբիւրն: — 63 կանքնի: — 66 բուս... գու գան:

Բոյսեր սեւ հողին միջին,
  գոյնըզգոյն ծաղկունքն կու ցընծան։
Արտասունքս ծով էր, Նուանայ,
  տատանիմ զինչ նաւն ի ծովայն.
Ես եմ ղարղ էղեր ի մէջ,
  որպէս նաւ յալեաց երերման։
Փակվել ճըռվընոյս ոլորն, Նուանայ,
  չարժ ընկել զօղվածս թնդընդման.
Հառաչանք ի սըրտիս միջին,
  զինչ ծովու ալիք կու հեծան։
Բազկունքըս անզօր դարձեր, Նուանայ,
  եւ մատունքս ամէն կու դողան։
Փաղուել է գոյն երեսիս,
  սիրտս ճըմլեալ, աչերըս կու լան։
Թէ յէլնեմ ձորերն էրգամ, Նուանայ,
  յորդահոս ջըրեր կու բըխան,
Վայրիքնին երամ կապեր,
  արեքնուն տակն կու կենան։
Ամէն կենդանիքս որ կան,
  տեսանեմ ձագով չուրջ կու գան,
Իմ ձագն արծըվլին տըվլի,
  ես աւեր բունըն կու կենամ։
Ես եմ քո տեսուտ կարօտ,
  մէկ ու ճար դուստր իմ սիրական։

Վիեննա, Մխիթ․ Մատ․, Թ․ 156, Թղ․ 54բ—56բ։

67 բուսեր։ — 68 գու նըրգուն։ — 71 ի մէնջ։ — 75 հառաչան։ — 76 յալիք։ — 80 ճմեալ․․․ գու լան։ — 81 երգամ։

# ՅԱՒԵԼՈՒՔ ԵՒ ՈՒՂՂԵԼՈՒՔ

*էջ* 27, *տ.* 10· *Յ. Ոսկեբերանի Եսայեայ Մեկնութեան Ը.—ԿԴ. գլուխներու հարազատութեան հարցին նուիրուած է* L. Dieu, Le commentaire arménien de S. Jean Chrysostome sur Isaïe (ch. VIII—LXIV) est-il authentique? *ի թերթին* Revue d'Histoire ecclesiastique, 17 (1921), 7—30. *Հեղինակը կ'ապացուցանէ, թէ այս գլուխները Յովհաննէս Ոսկեբերանի հարազատ գրչէն են։ — Յառաջաբանութիւնը ամբողջութեամբ տուաւ Յուսիկ արք. Աւետիսեան, Յովհաննու Ոսկեբերանի Եսայեայ Մեկնութեան հայ թարգմանութեան նորագիւտ մասը (Յառաջաբանութիւնն եւ Գլ. Ա.—Բ.* 2) *եւ բաղդատութիւնը ընդ յոյն բնագրի։ Սիոն* 9 (1935) 21—24։ *Շարունակութիւնը լոյս չտեսաւ ցայսօր։*

*էջ* 111, *տ.* 9· *Այս հատուածը Պիտոյից Գրքի մէջ* (*էջ* 341) *այսպէս ներկայացուած է· «Պիթագորաս որչափ իցէ կենցաղոյս չափ՝ հարցեալ յումեմնէ, սուղ ինչ երեւեալ ծածկեցաւ»։*

*էջ* 116, *տ.* 6· *Երեւանէն կը հաղորդեն ինձ, թէ Ուսուցչապետ Յակոբ Մանանդեան ձեռնարկած է Թէոնէի Նախակրթութեանց հայերէն թարգմանութեան քննական հրատարակութիւն մը պատրաստել։*

*էջ* 126, *տ.* 1—2· *«Ներսէս հայրապետ» պէտք է իմանալ* Ներսէս կաթողիկոս էջմիածնի, *մին* Սարգիս Երզնկացւոյ՝ *էջմիածնի կաթողիկոսի աթոռակիցներէն, որ կը յիշուի ինձ ծանօթ* 1501—1504 *տարինե-*

րուն գրուած յիշատակարաններու մէջ. Առաքել Դաւրիժեցի կը զետեղէ գներուն 1506—1507 տարիներու մէջ։ Այս մասին ընդարձակ պիտի խօսիմ Էջմիածնի կաթողիկոսներու Գաւազանագրքին մէջ, զոր կը պատրաստեմ։

էջ 144, ծ. 2. Տե՛ս նաեւ Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի, հատոր Բ., էջ 87, ուր կը յիշուի, թէ Թ. 28, թղ. 399 կը պարունակէ «Պատմութիւն Նուշրաւան Թագաւորին»։

Նուշիրվան Թագաւորի այս խրատները լոյս տեսած են քանիցս «Գիրք պատմութեան որ կոչի Պընձէ քաղաք եւ այլ բանք. խրատականք եւ օգտակարք Խիկարայ իմաստնոյ եւ այլ բանք պիտանիք» հաւաքման մէջ, տպուած Կ. Պոլիս 1708, 1731, 1749 եւն տարիներուն։ Աչքի առաջ ունիմ 1731 (էջ 107—116) եւ 1749 (էջ 77—89) տարիներու հրատարակութիւնները. ուր խորագիր կը կրեն «Խրատք եւ Նասիհէթք օգտակարք. արարեալ զարմանազան Թագաւորին որ Նուշրաւան ասեն»։

Բովանդակութիւնը նոյն է յէականս մեր հրատարակած բնագրին հետ։ Հրատարակիչները խրատները ժողովրդեան դիւրընկալ ընծայելու համար տեղ տեղ պարզած են լեզուն, նաեւ դուրս ձգած խրատներ եւ փոխարէն ուրիշներ մուծած։ Մուտքն ունին այսպէս.

«Սա ասեն Թագ մի ունէր, ոսկի եւ պատուական ակներով. եւ շինած էր ԻԲ անկիւնով. եւ ամէն անկիւն՝ այս Նասիհէթներս գրած էր։ Եւ յորժամ ելնէր ի դուրս՝ կարդայր առաջի զօրացն եւ ասէր թէ՝ ի միտ առէ՛ք. եւ ապա դնէր ի գլուխն։ Եւ Թագն էր եախութ եւ զմրուխտ ակամբ եւ ալմաստով եւ լաճիվարդ քարով յօրինեալ»։

Մուծուած բնագրական փոփոխութիւններու եւ յաւելուածներու մասին փոքրիկ գաղափար մը տալու համար յառաջ կը բերեմ հատուածներս.

| | |
|---|---|
| *Դ. 8. Զոտներդ քան զձեր* չափն *մի մեկնէք:* | Զձեր *ոտն քան զձեր* անկողինն աւելի *մի մեկնէք:* |
| *Ե. 1. Զկռիւն միջակ արարէք:* | *Կռիւ թէ հանդիպի ի ձեր մէջն, միջակ արարէք. բայց շուտ հաշտեցարուք:* |
| Կը պակսի: | *Ի սրտներդ նախանձ մի պահէք:* |
| *Ե. 2. Զբաներն համբերութեամբ արարէք:* | *Զամէն բան համբերելով արարէք:* |
| *Ե. 3. Զծախն...:* | Կը պակսի: |
| *Ը. 2. Արլահ մարդուն եւ խումարին ու հարբածին խրատ մի տաք:* | *Անշահ մարդոյն եւ խելառին հարբածին խրատ մի տայք:* |
| *Ը. 7. Ձեր հնազանդելոցն ուժ մի առնէք:* | *Ձեր հնազանդելոցն՝ կիւճ մի անէք:* |
| Զունի: | *Զձեզ սիրողն՝ մի ատէք:* |
| Զունի: | *Ով որ ի ձեր հետ սէր ունի՝ զնա անտես մի առնէք:* |
| *Թ. 3. Ի տղայոց թըղթիր մի առնուք:* | *Տղայոց եւ ճահիլից հետ՝ թէպտիր եւ մուշավերէ մի անէք:* |

*ԻԲ. Թարկէն ունի միայն* 1, 4, 6, 7, 11:

*Անպատակ է յառաջ տանիլ համեմատութիւնները:*

*էջ* 279. *Սիմէոն դպրի Ցիշատակարանը ամբողջութեամբ հրատարակած եմ անոր Ուղեգրութեան հետ, տե՛ս Սիմէոն դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն, տարեգրութիւն եւ յիշատակարանք, Վիեննա* 1936, *էջ* 387—391:

*էջ* 299, *տ.* 320 *կարդա՛ Ծարաֆ:*

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

# Anhang:

## UNTERSUCHUNGEN ZUR GESCHICHTE DER ARMENISCHEN LITERATUR

VON

P. NERSES AKINIAN.

BAND IV.

ZUSAMMENFASSUNG DES ARMENISCHEN TEXTES.

### 11. Des Jakob von Tokat Klagelied über das Moldauer Land.

(S. 3—21.)

Der Verfasser hatte in Handes Amsorya 1921, S. 273—285, 374—385, 472—485, Jakobs Biographie und Schriften ausführlich behandelt. Anläßlich des von ihm in der Lemberger Universitäts-Bibliothek, Cod. arm. 63, neu entdeckten Klageliedes gibt er zunächst neue Materialien zu des Dichters Biographie und Schriften als Zusatz zu seiner oben erwähnten Abhandlung.

Im hohen Alter von ungefähr 107 Jahren (1573 bis 1680) starb Jakob als Priester der armenischen Gemeinde in Zamość (Polen), wo er sich um 1602 angesiedelt hatte. Geboren zu Tokat, mußte er schon in zartem Alter die Heimat verlassen. Im Jahre

1593 (bis 1595) befand er sich in Jassy, wo ihm der dortige Bischof Johann aus Kaffa die niederen Weihen verlieh. Wahrscheinlich kurz darauf bekam er von demselben Bischof auch die Priesterweihe. Um 1635 machte er eine Wallfahrt nach Jerusalem.

Das Klagelied dichtete er auf Geheiß des Bischofs Johann in Jassy um 1595. Der historische Inhalt des Klageliedes ist folgender:

Der Woiwod von Moldau, namens Aharon, vereinbart mit dem Kosakenführer Lopota, gemeinsam gegen die Türken zu ziehen (1593 = Arm. Ära 1043, lese 1042!). Die Kosaken geben ihre Zustimmung, und zeigen sich unter Führung ihres Hetmans im Dorfe Coçora (am Pruth). Der Woiwod aber verzichtet auf seinen Plan, zieht gegen die Kosaken vor, um ihren Übergang zu verhindern. Nach einer langen Auseinandersetzung gehen die beiden Parteien zu Feindseligkeiten über. Die Moldauer, ohnmächtig, die Kosaken zurückzudrängen, laufen in wilder Flucht davon, in Mooren und Wäldern Zuflucht suchend (24. Okt. 1593, Mittwoch). Die Kosaken rücken ungehindert gegen Jassy vor. Die Stadt war entvölkert. Die (armenischen) Kaufleute hatten ihre Waren in der armenischen Kirche angehäuft, „bis zum Dach war die Kirche überfüllt", die eiserne Tür in- und auswendig fest ge-

schlossen, und flüchteten dann. Die Kosaken drangen plündernd und mordend in die Stadt ein, zerschlugen die Tür der armenischen Kirche, raubten und zogen fort. Nach dem Rückzug der Kosaken kam der Bischof der Armenier in die Kirche. Die heiligen Öle und Kirchenbücher, die unter den Altarstufen verborgen und unentdeckt blieben, nahm er heraus und legte sie auf den Altar. Da erschien eine neue Kolonne der Kosaken in der Stadt; plündernd erreichte sie die Kirche. Sie beraubte den Bischof sowie die Priester ihrer Kleider, nahm die heiligen Öle und die Bücher mit, steckte dann die Stadt in Brand und entfernte sich.

Nach einer Woche kam der Woiwod Aharon nach Jassy zurück. Er erinnerte sich seines früheren Planes, rief wiederum die Kosaken herbei, er wolle die Türken angreifen. Sie rückten gegen die Festung Bandar vor; zwei Monate lang kämpften sie vor der Festung, aber unverrichteter Sache kamen sie nach Jassy zurück.

Hier wurde auf Rzwans Anregung Aharon von den Soldaten in Eisen gefesselt und nach Ungarn verbannt. Darauf ließ Rzwan sich zum Woiwod ausrufen (am 24. April 1595). „Von Ostern bis zur Mariae Himmelfahrt wurde er der Herr des Olachenvolkes; im ganzen Lande hat er viel Übles getan, Greuel, die vor ihm nie geschehen

waren und auch nach ihm nicht geschehen werden; das ganze Land bebte vor Furcht vor dem ungläubigen Tartar, gleich einem Schiffe auf dem Meere, das von den Wogen geschaukelt wird.“

Als dies alles Polens König vernahm, befahl er seinem Kanzler, sich sogleich ins Unglücksland zu begeben, um dort Ordnung zu schaffen. An der Spitze von 10.000 Reitern überschritt der Kanzler die Grenze. Vergebens bat Rzwan um seine Gunst. In seiner Verlegenheit verließ er das Land und ergriff die Flucht nach Ungarn. Der Kanzler rückte darauf bis zu Çoçora vor und ernannte den Eremias zum Woiwod des Landes zu Suczava.

Nach einem Monat erschien an der Grenze der Tartarenchan und schlug sein Lager dem Kanzler gegenüber auf. Da schrieb ihm der Kanzler von seinen friedlichen Absichten und beruhigte ihn.

Es waren kaum zwei Monate vergangen, als sich Rzwan, der Usurpator, an der Spitze vieler Reiter auf der Ebene von Suczava zeigte, um Eremias die Herrschaft streitig zu machen. Dieser von Kamenec aus unterstützt, liefert ihm an der Stelle eine Schlacht. Am Dienstag, den 2. Dezember, wurde von frühmorgens bis um 3 Uhr heiß gekämpft. Um 4 Uhr war die Schlacht zugunsten Eremias' entschieden. Der Usurpator wurde bei der

Flucht gefangen genommen, dem Sieger überliefert und sofort gepfählt.

Eremias' Wahl zum Woiwod wurde darauf von Polen, Tartaren und Türken anerkannt.

---

## 12. Des hl. Johannes Chrysostomus Kommentar zu Isaias in der armenischen Literatur.

(S. 25–46.)

Im Jahre 1880, als die Mechitharisten die armenische Übersetzung des Kommentars herausgaben, diente zur Vorlage eine einzige Handschrift vom 12./13. Jahrhundert; sie war am Anfang, in der Mitte und am Ende verstümmelt. Das Vorhandensein einer zweiten Handschrift in Kalkutta hatte zwar A r š a l o y s A r a r a t i a n im Jahre 1868 verkündigt, sie blieb jedoch den Herausgebern unzugänglich.

Wie uns jetzt S i o n, 1933, S. 330—337 [und 1935, S. 21—24], berichtet, befindet sich die erwähnte Handschrift im Jakobus-Kloster zu Jerusalem, und zwar als Bruchstücke der Mechitharisten-Handschrift. Es sind darin erhalten: Der Eingang, Kap. I—II, 1 und XXI, 2—XXVI, 20. Somit wird der Kommentar in armenischer Übersetzung folgendermaßen ergänzt: Eingang, Kap. I—XXVI, 20 und XXX, 6—LXIV, 7. Es fehlen: 26, 20—30, 5 und 64, 8—66, 24.

Im folgenden zählt der Verf. die Fragmente auf, die in diversen Sammelhandschriften erhalten sind. Anschließend werden jene Exegeten erwähnt, die den Kommentar in ihren Schriften über Isaias reichlich benützt haben.

Die armenische Übersetzung des Kommentars fällt in die erste Hälfte des 5. Jahrhunderts, ausgeführt durch jene Hand, die den Matthäuskommentar und die Homilie Severians ins Armenische übertragen hat, in der Eleganz der klassischen Sprache.

---

### 13. Die Genealogie der Thornikier.

(S. 49–88.)

In der byzantinischen, armenischen und georgischen Geschichte des 9. bis 11. Jahrhunderts ist öfters von den Thornikiern die Rede. Der Verf. versucht die bekannten Mitglieder dieser Familie nach ihrer Genealogie zusammenzustellen. Dies ist jetzt um so leichter, als P. Peeters und R. Blake zwei georgische Kolophone bekannt machten, welche direkt von den Thornikiern selbst verfaßt worden sind und einem Zeitalter angehören, das in bezug auf die Thornikier ganz besonders wichtig ist. Das zweite Kolophon ist eine Abschrift des im Jahre 981 geschriebenen Originals, gefertigt im Jahre 991.

Der Verf. unterscheidet zwei Hauptlinien: die der Thornikier von Taik', d. h. welche im Gebiete des Kuropalaten David saßen, und die der Tarauniden, welche im Gebirgslande von Sassun zu Hause waren. Beide Linien haben ihren Ursprung im Stammhause der Mamikonier; das steht wenigstens betreffs der zweiten Linie fest, dafür haben wir in Gregor Magistros, der mit den Thornikiern von Sassun verwandt war, einen glaubwürdigen Zeugen. Sassun sowie Taik' waren um diese Zeit unter der byzantinischen Herrschaft. Die Thornikier bekannten sich zu der orthodoxen Kirche, dort in Sassun der byzantinischen, hier in Taik' der georgischen Einflußsphäre ausgesetzt. Die letzteren eigneten sich sogar die georgische Sprache an, obwohl sie sich zugleich der armenischen Sprache bedienten.

Die älteste Spur dieser Familienmitglieder findet der Verf. bei Thomas Arcruni, wonach „der Sohn des Thorniks" mit seinen Streitkräften dem Bagarat, Fürsten der Fürsten, um 850 gegen Muse zu Hilfe eilt. Die Stelle ist leider verstümmelt. Anfangs des 10. Jahrhunderts nennt Konst. Porphyr. zwei Thornikier, Nikolaus und Leo. Wahrscheinlich war einer von diesen der Vater des Ζουρβανέλης, der ebenfalls vom kaiserlichen Schriftsteller genannt wird. Mit ihm scheint Čortwanel I. identisch zu sein.

Čortwanel I. hatte zwei Brüder:

Apuharp I. und A(r)šusa I. Asołik erwähnt Apuharps Enkel, Čortwanel II., der um 1000 im Kriege fiel.

Čortwanel I. und seiner Gemahlin Maria entsprossen fünf Kinder: Thornik II., Varazwače I., Bagarat I., Ašuša II. und Apuharp II.

Johannes Thornik II. zog schon um 976 im Kloster Uški das Mönchskleid an. Im folgenden Jahre zog er als Feldherr gegen den Empörer Vard Skleros. Nach dem Siege trat er in Iviron auf Athos ein, wo er um 984 starb. In der Nähe von Erzerum entdeckte N. Sargissian einen von Joh. Thornik errichteten Kreuzstein mit armenischer Inschrift. Er hinterließ einen Sohn, den Bagarat II., der die Magistroswürde innehatte; er fiel um 998 bei Khlat.

Von Johannes Varazwače I. ist in Ani ein mit armenischer Schrift versehener Kreuzstein erhalten. Es wurden ihm drei Söhne geboren: Čortwanel III., Michael und Thornik III. der Kleine. Čortwanel III., Magistros, war an dem von Vard Skleros geschürten Aufstand beteiligt; er fiel um 990. Wahrscheinlich waren seine Söhne: *Γεώργιος καὶ ὁ Βαρασβατζέ II.* und Leo Tornikes, der Gegenkaiser.

Es werden weiter zwei Neffen von Johannes Thornik II. erwähnt: Čortwa-

nel IV. und Bagarat III., ohne Patronymika. Wahrscheinlich sind sie die Söhne des Ašuša II. und Apuharp II. Nach der Vermutung des Verf. ist Čortwanel mit dem gleichnamigen Feldherrn identisch, der um 988 bei Antiocheia fiel.

Čortwanel V., der nach Mattheos Edessaçi um 1049 bei der Festung Kaputru fiel, ist leider nicht nach dem Patronymikon genannt.

Die byzantinische Literatur führt noch mehrere Namen von Thornikiern an, die im 12. bis 14. Jahrhundert höhere Würden bekleideten. Es ist jedoch unmöglich, ihnen den richtigen Platz an dem Stammbaum anzuweisen, der ihnen zukommt.

Die Thornikier in Sassun kommen erst im 10. Jahrhundert auf. Sie stehen aller Wahrscheinlichkeit nach mit den Mamikoniern Grigorik und Apoganem in Blutsverwandtschaft, zumal der Sohn von Apoganem Thornik hieß. Der Stammvater der bekannten Linie ist Mušeł, dessen Patronymikon nicht genannt wird. Seine Sprößlinge sind: 1. Thornik I. († um 1072), 2. Čortwanel I. und Wasak, 3. Wigen, 4. Čortwanel II., 5. Wasil, Šahnšah und Thornik II. Diese letzten suchten ihre Zuflucht in Kilikien.

**14. Die Progymnasmen des Theon von Alexandrien in armenischer Übersetzung.**
(S. 91—116.)

Als im Jahre 1925 der Verf. die armenischen Hss. des Staatsmuseums zu Erivan studierte, ist ihm in der Nummer 870 ein Handbuch der Rhetorik untergekommen, das in der Überschrift einem gewissen Tonakan zugeschrieben war. Es war im vorhinein nicht schwer festzustellen, daß die Schrift ein Fremdgut war, es fehlten dem Verf. nur die Zeit und die nötigen Quellen, die Identität der erwähnten Schrift mit irgendeiner griechischen zu konstatieren. Auf Grund der Auszüge, die er damals gemacht hatte, gelang es ihm unlängst festzustellen, daß hier eine bis jetzt unbekannte Übersetzung der Theonischen Progymnasmen vorliegt.

Da nach G. Reichels Studien bewiesen ist, daß Theons Progymnasmen im erhaltenen griechischen Texte stark umgestaltet, verstümmelt und interpoliert sind, so gewinnt die armenische Übersetzung an Wichtigkeit.

Der Verf. stellt zunächst den Lesern seine Auszüge aus Nummer 870 vor, worin die ursprüngliche Gestalt der Progymnasmen in glänzender Weise zutage tritt. Dem armenischen Texte sind die gleichlautenden griechischen nach Walz's Ausgabe beigegeben.

Die Zergliederung und Folge der Theonischen Progymnasmen gibt die armenische Übersetzung folgendermaßen wieder: Einleitung (I) 1. περὶ τῆς τῶν νέων ἀγωγῆς (II), 2. περὶ χρείας (V), 3. περὶ μύθου (III), 4. περὶ διηγήματος (IV), 5. περὶ τόπου (VII), 6. περὶ ἐκφράσεως (XI), 7. περὶ προσωποποιΐας (X), 8. περὶ ἐγκωμίου καὶ ψόγου (VIII), 9. περὶ συγκρίσεως (IX), 10. περὶ θέσεως, 11. περὶ νόμου, 12. περὶ ἀναγνώσεως καὶ ἀναγνώσματος, 13. περὶ ἀκροάσεως, 14. περὶ παραφράσεως, 15. περὶ ἐξεργασίας.

Diese Einteilung des Archetypus, die die armenische Übersetzung darstellt, hatte schon Reichel vorausgesetzt. Wie ersichtlich, fehlen die ἀνάσκευη und κατάσκευη dem armenischen Theon und somit dem Archetypus, was auch Reichel als unecht gebrandmarkt hatte. Die Voraussetzung Reichels, daß Theo auch ἀντίρρησις behandelt hatte, ist als hinfällig zu betrachten.

Dem armenischen Texte wird noch ein Aufsatz als 16. Kapitel περὶ χρείας angehängt. Dieser ist entweder den Aphthonischen Progymnasmen oder dem armenischen „Buch der Chrie“ entlehnt.

Die Übersetzung stammt aus der um 572 von den armenischen Flüchtlingen in Konstantinopel gegründeten Schule und gehört zu der Übersetzungsgruppe: Dionysii ars gra-

matica, Philos und Irenäus' Werke. Die nach dem griechischen Muster zusammengebildeten technischen Worte werden hier im Übermaß gebraucht.

Das Werk, das wahrscheinlich als Handbuch der Rhetorik unter den Armeniern einen Leserkreis gehabt hatte, ist später, als Moses' „Buch der Chrie“ herauskam, in Vergessenheit geraten. Dasselbe Schicksal war ja auch dem griechischen Texte beschieden. In der armenischen Literatur wird es zum erstenmal bei Gregor Magistros als „Theons τέχνη ῥητορική“ erwähnt. A. Baumgartners Behauptung, daß Moses in seinem „Buch der Chrie“ die Theonischen Progymnasmen benützt habe, wird nicht bestätigt. Der Verf. gibt im folgenden 19 Sentenzen, die aus Theons Progymnasmen entlehnt und einer Sentenzensammlung (in Cod. arm. 29 der Wiener Mechitharisten-Bibliothek) beigefügt sind.

Die Wichtigkeit der armenischen Übersetzung zur Rekonstruktion des Theonischen Archetypus wird hiermit klargelegt. Dem Verf. liegt es am Herzen, die Ausgabe des Textes der Gelehrtenwelt selbst vorzulegen, im Falle, daß er eine Abschrift der einzigen Handschrift erreichen könnte.

---

## 15. Jakob Netrarenç, Bischof von *Arckē*, ein armenischer Dichter († 1501). (S. 119—139.)

Eine öfters erwähnte, aber wenig bekannte Persönlichkeit, unter deren Namen uns verschiedene Gedichte erhalten geblieben sind

Jakob, aus der Familie Netrarenç, war als Sohn des Weltpriesters Nerses und Khat'un Melik in *Arckē* (bei Wansee) geboren. In jugendlichem Alter heiratete er die Mehruban und nachher empfing er die Priesterweihe. Nach dem Tode seiner Frau zog er sich ins Kloster Sk'ančelagorc Sourb Nšan zurück, wo er zum Bischof der Diözese gewählt wurde. Er starb im Jahre 1501.

Jakob entwickelte eine schriftstellerische Tätigkeit. Er schrieb in Versen: 1. Das Leben des Priesters Step'anos, des Hussig-Sohnes. 2. Die Geschichte der Kaufmänner Markhas und Kosbar. 3. Drei Gedichte zum wunderbaren Kreuze von *Arckē*. 4. Zum hl. Georg. 5. Zur Auferstehung. 6. Drei Gedichte zum Frühling. 7. Zum Tode seines Bruders Lazar.

Die erwähnten Gedichte liegen meistenteils noch handschriftlich vor.

---

## 16. Die Sentenzen des Königs Nuširwan in armenischer Übersetzung.

(S. 143–169.)

Im Préface des VI. Bandes der französischen Übersetzung von Firdausis Königsbuch schreibt J. Mohl: Il parait qu'on conserve dans la bibliothèque d'Etschmiadzin, deux traités en arménien, sous le titre de la Sagesse de Nouchirvan, et il est très vraisemblable qu'ils contiennent les traductions de livres pehlevis, tels que Firdousi en avait sous les yeux. Mohl hatte wahrscheinlich Cod. 126 der Etschmiadziner Bibliothek nach Karenians Katalog vor Augen und den dort angegebenen Inhalt: „2. Sentenzen des Königs Nuširwan" (d. h. zweitens: Auszüge aus den Sentenzen des Königs Nuširwan) als „deux traités" verstanden.

Die vollständige Sammlung der Nuširwanischen Sentenzen haben wir in Cod. 791, f. 166$^{v}$—170$^{r}$ (s. XVI) der Wiener Mechitharistenbibliothek und in Cod. 263, f. 43$^{v}$—49$^{r}$ (a. 1628) der Mechitharistenbibliothek zu St. Lazaro (vgl. Sargissian, Katalog) [sie wurde dann auch im Druck veröffentlicht; vgl. Addenda, S. 364]. Im 17. Jahrhundert sind davon Auszüge entnommen: Erivan, Staatsmuseum, Cod. 822 (a. 1672), Etschmiadzin, Cod. 126 (s. XVIII), Cod. 195 (s. XVII), Wien, Cod. 988 (a. 1697) und Jerusalem, Jakobus-Kloster, nach dessen

Hss. veröffentlicht in der Monatsschrift Sion, 1875, S. 261—263.

Der Königsname wird in den Hss. vielfach als A(no)šruan, Navšravan und Nošrovan wiedergegeben. Der König hat den Beinamen: Yedl, edil, „der Gerechte". Unter Chosrau I. Anošrovans Namen hat die Pehleviliteratur ein Andarž (Testament), das zu unseren Sentenzen in keinem Verhältnis steht. Weitere Sentenzen unter Chosraus Namen führen Firdausi, Maçoudi und Tha'alibî in ihren Schriften an. Auch diese scheinen den armenischen Sentenzen nicht nahe zu stehen.

Nach der Einleitung der armenischen Übersetzung besaß der König Nuširwan der Gerechte eine Krone mit 22 Kanälen (t'ark oder aprah), in denen je zehn Sentenzen in Edelstein eingeschrieben waren. So oft der König das Pferd besteigen wollte, ließ er zuerst diese Sentenzen den Vornehmen vorlesen. Sie waren „Königssentenzen". Von ursprünglichen $22 \times 10 = 220$ Sentenzen sind in der armenischen Übersetzung nur 192 erhalten. Sie sind aus dem Arabischen ins Vulgärarmenische übertragen. Die arabischen Lehnwörter sind Zeuge dafür. Aller Wahrscheinlichkeit nach war der Übersetzer Arakel aus Ani, ein Mönch, der im Jahre 1222 zu Ani unter Mitarbeit von zwei Kollegen das Traumbuch aus dem Arabischen ins Vulgär-

armenische übersetzt hat. Für die Abfassungszeit ist das Jahr 1310 als terminus ante quem anzunehmen. In diesem Jahre wurde die Homiliensammlung Cod. 791 von Moses Erznkaçi zusammengestellt.

Im folgenden veröffentlicht der Verfasser den armenischen Text nach Cod. 791 der Wiener Mechitharistenbibliothek. In Fußnoten und im Anhang werden die entsprechenden und abweichenden Stellen des Auszuges nach Cod. Mechith. 988, f. $1^r$—$3^r$, wiedergegeben.

Cod. 791 hat am Ende eine Sentenz des Königs Kobad, sie wird beigegeben.

---

**17. Khatschatur Khaspek aus Kafa.**

(S. 173—189.)

Khatschatur, mit dem Beinamen Khaspek, wurde im Jahre 1610 in Kafa (in der Krim) als Sohn Andreas' geboren. Geweiht als Priester entwickelte er eine literarische Tätigkeit als Lehrer, Kopist und Dichter. Groß ist die Zahl der Handschriften, die er abschrieb und ausschmückte. Er verfaßte auch Gedichte, von denen uns sieben Stück erhalten sind. Am 26. Oktober 1686 starb er in dem hohen Alter von 76 Jahren. Seinen Nachruf besangen der Priester Johann und Simeon Khrimbeys Sohn.

---

### 18. Simeon, Sohn des Krimbey aus Kafa.

(S. 193–198.)

Er war wahrscheinlich ein Schuhmacher von Beruf und war auch in die Literatur eingeweiht. Aus seiner Feder sind uns 15 Volkslieder erhalten, deren einige aus den Jahren 1683—1686 datiert sind. Sein Lobgesang über Khatschatur Khaspek wird S. 185—187 veröffentlicht.

---

### 19. Biwraspi Aždahak und der Kommunist Mazdak im armenischen Volksepos nach Moses Chorenaçi.

(S. 201—238)

Der Anhang „Aus den persischen Sagen über Biwraspi Aždahak", welcher am Ende des ersten Buches der „Geschichte Armeniens" steht, war ursprünglich dem dritten Buche angehängt. Die Aždahaksage, iranischen Ursprungs, soll schon unter den Arsakiden nach Armenien gekommen sein. Die Überlieferung, die Moses auszugsweise wiedergibt, scheint im Volksmunde zu Moses' Zeit wortgetreu aufbewahrt zu sein: die Eigennamen in ihren alten Formen sowie der Wortschatz in seiner reinen Eigenart setzen die vorklassische Zeit voraus.

In seinem Kommentar zu der Aždahaksage identifiziert Moses den Aždahak mit Mazdak (Maždak), ohne den letzteren namhaft zu machen, und gibt sich Mühe, die

Aždahaksage durch jene von Mazdak aufzuklären. Nach Moses war Aždahak = Maždak 1. ein Volksführer und 2. Astronom. 3. Er predigte die Gemeinsamkeit des Besitzes. 4. Er bestimmte die Lebensweise seiner Anhänger für Tag und Nacht. 5. Er verwickelte sich mit seinen Gegnern in Konflikte, wurde besiegt, festgenommen und in eine Schwefelgrube geworfen. Diese fünf Punkte muß Moses aus Mazdaknamak in irgendeiner Form geschöpft haben. Der Verf. weist analoge Stellen aus Firdausi und Mazdaknamak (nach Siasset Nameh bei A. Christensen, Le règne du roi Kawadh I. et le communisme mazdakite, 1925) auf.

---

## 20. Azaria Sasnetzi, Astronom und Dichter.

(S. 241—308.)

In Sassun durch die Ausschreitungen der türkischen Aufständischen drangsaliert, sucht Azaria in Konstantinopel Zuflucht (1603). Hier lernt er zu Füßen des armenischen Patriarchen Gregor aus Caesarea die Theologie und erlangt die erste Stufe der Wardapetwürde (um 1609). Als Prediger missioniert er die in Bythanien eingewanderten Armenier. Auf einer Seefahrt nach Ägypten erkrankt, stirbt er im Jahre 1628 im Rufe eines heiligmäßigen und gelehrten Priesters.

Er hinterließ einige Schriftchen: 1. Die Höhe des Himmels und die sieben Atmosphären (1607). 2. Die Quantität der 7200 Zirkel. 3. Die Kreise der Sonne (1607). 4. Die fünf Tage der Schöpfung. 5. Die armenische Ära (1616). 6. Sonnen- und Mondkalender. 7. Die Folge der armenischen Katholikos. 8. Die Verheerungen der türkischen Aufständischen in Syrien, Kleinasien und Armenien, in Versen (herausgegeben S. 288—306). 9. Er übersetzte, wahrscheinlich aus dem Italienischen, die Geographie des Ptolemäus. 10. Er verfaßte eine Sammlung der weltlichen und kirchlichen Gesetzbücher (1609).

---

## 21. Karapet Bałišeci (1475—1550).

(S. 311—350.)

Im 16. und 17. Jahrhundert wurde in Bałeš (Bitlis) eine rege literarische Tätigkeit entwickelt. Der Verf. versucht, die namhaften Persönlichkeiten dieser Periode und ihre literarischen Leistungen klarzustellen. Als erster tritt Karapet Bałišeci hervor. Er war in Bałeš beheimatet, wirkte aber in der Umgebung von Muš als Mönch des Apostelklosters. Er war Kopist. Es sind uns von ihm einige Handschriften erhalten, die in den Jahren 1496—1513 abgeschrieben sind. Ein Kolophon vom Jahre 1547 repräsentiert ihn als

Erzbischof und Vorstand des Apostelklosters zu Muš. Wahrscheinlich starb er um 1555.

Karapet ist Verfasser von einigen Schriften in Versen, darunter auch Hymnen und Dichtungen. Es werden veröffentlicht: 1. Geographie oder Beschreibung der drei Teile der Welt (1540). 2. Ein historisches Kolophon vom Jahre 1513, worin der Aufstand des Schah Ismail beschrieben wird.

---

### 22. David aus Saladzor.

(S. 353—362.)

Er wirkte aller Wahrscheinlichkeit nach Ende des 17. Jahrhunderts in Saladzor, einem Dorfe bei Erzerum, als Weltpriester. Er schrieb in seiner Jugendzeit mehrere Volkslieder, unter denen sich der Lobgesang auf die Blumen seiner Heimat auszeichnet, die er einzeln mit Namen nennt und deren charakteristische Züge er schildert.

---